# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2 ՓԵՏՐՎԱՐ · 1967
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅԱՆ 46-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն




ԱՌԱՋՆՈՐԴՈՂ—*Կուսակցական դեմոկրատիան և կուսակցական կարգապահությունը* . . . . . . . . . . . .

ՀՈԴՎԱԾՆԵՐ

Ս. ԲԻՇԱՐՅԱՆ—*ՍՄԿԿ խաղաղասիրական քաղաքականությունը* . . . 10

Հ. ՍԱՀԱԿՅԱՆ—*«Տարրական» մասնիկների փոխակերպումների պրոբլեմի առթիվ* . . . . . . . . . . 18

Կ. ՄԱՄԻԿՈՆՅԱՆ—*Մարքսիստական հայացքների արծարծումը նախասովետական հայ մամուլում* . . . . . . . . 27

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

ՍՏ. ՄԿՐՏՉՅԱՆ—*Կոլեկտիվ ջանքերով*։ Հ. ԹՈՐՈՍՅԱՆ—*Բարձր պահել կոմունիստի կոչումը* . . . . . . . . . 36

ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ—*Տասնամյա քաղաքաշինության արդյունքները Հայաստանում* . . . . . . . . . . 44

Բ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ—*Կապիտալ ներդրումների արդյունավետությունը հանրապետության արդյունաբերությունում* . . . . . 51

ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

Ժ. ԳԱՍՊԱՐՅԱՆ—*Գայը Օրենբուրգի պաշտպանության համար մղված մարտերում* . . . . . . . . . . 58

ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ

Ի. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ—*Սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի հիմնական սկզբունքների միասնությունը* . . . . . 66

Լ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ—*Հայ հեղափոխական-դեմոկրատական մտքի պատմությունից* . . . . . . . . . . 74

ԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Մ. ՄԱԶՄԱՆՅԱՆ—*Հոգեբանների համաշխարհային կոնգրեսի դահլիճից*։ Վ. ԿՈՎԱԼՅՈՎ—*Միկրոաշխարհի պատրածին օրգանիզմների հետքերով* 83

ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Վ. ՎԱՐԴԱՆՈՎ—*«Ղեկավարման գաղտնիքները»*։ Զ. ԱՍԱՏՐՅԱՆ—*Գաղափարական բժիշկը* . . . . . . . . . 94

ԷՋԵՐ ԱՆՑՅԱԼԻՑ

Մ. ՀԱԿՈԲՅԱՆ—*Հեղափոխության ալիքներում* . . . . . 103

ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

Լ. ՎԱԼԵՍՅԱՆ—*Ի պաշտպանություն տնտեսական շրջանացման* . . 106

---

Ս. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ—*Մտորումներ երիտասարդության ուսուցման և դաստիարակության մասին* . . . . . . . . . 111

# Содержание

Передовая—Партийная демократия и партийная дисциплина . . . . . . . 3

Статьи

А. Бишарян—Миролюбивая политика КПСС . . . 10
Г. Саакян—По поводу проблемы превращения «элементарных» частиц . . . . . . . 18
К. Мамиконян—Разработка марксистских взглядов в досоветской армянской печати . . . . 27

Партийная жизнь

Ст. Мкртчян—Усилиями коллектива. Г. Торосян—За высокое звание коммуниста . . . . 36

Вопросы экономики

Г. Исабекян—Итоги десятилетнего градостроительства в Армении . . . . . . . 44
Б. Егиазарян—Эффективность капиталовложений в промышленности республики . . . . . 51

Знаменательные даты

Ж. Гаспарян—Гай в боях за оборону Оренбурга . 58

Трибуна молодого научного работника

И. Карапетян—Единство основных принципов социальных норм социалистического общества . 66
Л. Арзуманян—Из истории армянской революционно-демократической мысли . . . . . 74

В мире науки

М. Мазманян—О международном конгрессе психологов. В. Ковалев—В погоне за химерами организмов микромира . . . . . . . 83

Читатели о книгах

В. Вартанов—«Секреты руководства». З. Асатрян—Идейный врач . . . . . . . 94

Страницы прошлого

М. Акопян—В волнах революции . . . . 103

Обсуждение и полемика

Л. Валесян—В защиту экономического районирования . . . . . . . 106

А. Енгибарян—Раздумья о воспитании и учебе молодежи . . . . . . . 111

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ԵՎ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ

ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների հիման վրա վարգանում է կուսակցության հետագա ամրապնդման, հասարակության մեջ նրա քաղաքական ու կազմակերպչական դերի բարձրացման պրոցեսը: Կուսակցական կազմակերպությունների ու նրանց ղեկավար օրգանների գործունեությունն առավել հատկանշական է դառնում այնպիսի գծերով, որպիսիք են՝ գիտականությունը, գործնականությունը, կոլեկտիվությունը: Աճում է կուսակցական մասսաների ակտիվությունը, նրանց անհաշտվողականությունն այն ամենի հանդեպ, ինչն արատավորում է կոմունիստի բարձր կոչումը: Մեծացել է պահանջկոտությունը կուսակցության մեջ ընդունվողների նկատմամբ, հոգատարությունը՝ կուսակցության շարքերի որակական կազմի բարելավման համար: Այս ամենն է՛լ ավելի է բարձրացնում կուսակցության հեղինակությունն ու ազդեցությունը աշխատավորության շրջանում, ամրապնդում նրա կապերը ժողովրդի հետ: Բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգենցիան ավելի ու ավելի են համախմբվում լենինյան կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի շուրջը:

Կուսակցական կազմակերպություններն առանձնահատուկ ուշադրություն են նվիրում ներկուսակցական դեմոկրատիայի խիստ պահպանմանն ու հետեվողական զարգացմանը: Նրանք իրավացիորեն դրանում են տեսնում կոմունիստների ճիշտ դաստիարակման և կուսակցական աշխատանքի համակողմանի բարելավման ամենաճիշտ ու հուսալի ուղին: Այժմ կուսակցության բոլոր օղակներում լիովին իրականացվում է կոլեկտիվ ղեկավարության սկզբունքը: Զգալիորեն բարելավվել է կուսակցական ժողովների, կուսակցական կոմիտեների պլենումների նախապատրաստման ու անցկացման պրակտիկան: Այնտեղ քննարկվող հարցերը, որպես կանոն, լավ նախապատրաստում են. տեղում ստուգվում է իրերի վիճակը, ուսումնասիրվում են համապատասխան նյութերը, նկատի առնում մասնագետների խորհուրդները: Շրջկոմները, քաղկոմները, մարզկոմները, միութենական հանրապետությունների կոմկուսակցությունների կենտկոմները այժմ հաճախ են կուսակցական կոմիտեի անդամներին ու կազմակերպություններին նախօրոք ուղարկում զեկուցումների և դրանց վերաբերյալ որոշումների նախագծերը, որը նրանց հնարավորություն է ընձեռում լավ նախապատրաստվելու առաջիկա հարցի քննարկմանը, խորհելու և անելու առաջարկություններ ու դիտողություններ: Լայն ծավալ է ստացել լավ նախա-

պատրաստված սեմինարների, տեսական կոնֆերանսների անցկացումը, որը հնարավորություն է ընձեռում մարքսիզմ-լենինիզմի լույսի տակ համակողմանիորեն քննարկել կուտակված փորձը, խոր ըմբռնել այս կամ այն պրոբլեմի էությունն ու նշանակությունը, գտնել գործին առավել ճիշտ, գիտականորեն հիմնավորված մոտեցման ուղին:

Կուսակցական աշխատանքի կատարելագործման նկատմամբ հոգատարությունն իր արտահայտությունն է գտնում նաև այն բանում, որ կուսակցական կոմիտեների պլենումների օրակարգում ավելի հաճախակի են դրվում այնպիսի հարցեր, ինչպես՝ տնտեսական շինարարությանը ցույց տրվող կուսակցական ղեկավարության սկզբունքներն ու մեթոդները, գաղափարական ու կազմակերպչական աշխատանքի զուգակցումը, կուսակցական կյանքում լենինյան նորմերի պահպանումը, սկզբնական կուսակցական կազմակերպությունների մարտունակության բարձրացումը և այլն: Այսպես, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի վերջերս կայացած պլենումը քննարկեց կուսակցական կազմակերպությունների խնդիրները կազմակերպչական աշխատանքի հետագա բարելավման և կուսակցության ու կառավարության որոշումների կատարման ստուգման հարցը: Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմը իր վերջին պլենումում քննության առավ ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կատարման համար կոմունիստների պատասխանատվության բարձրացման, իսկ Վրաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն՝ ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների լույսի տակ կոմունիստների ավանգարդային դերի հետագա բարձրացման միջոցառումների հարցերը: Կուսակցական աշխատանքի կատարելագործման հարցերը քննարկվել են նաև երկրամասային, մարզային, քաղաքային ու շրջանային մի շարք կուսակցական կոմիտեներում: Կուսակցական շինարարության առավել կարևոր պրոբլեմների սիստեմատիկ, համակողմանի և խոր քննարկումը կուսակցական աշխատանքի գիտական հիմնավորման ու արդյունավետության բարձրացման, ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման, նրա սկզբունքների ճիշտ կիրառման բացառիկ անհրաժեշտ պայման է:

ՍՄԿԿ XXIII համագումարի պահանջներին համապատասխան, կուսակցական ղեկավար օրգաններն ու նրանց աշխատողները սկսեցին ավելի շատ խորհրդակցել կոմունիստների հետ, լսել նրանց ձայնը, քննադատական դիտողություններն ու առաջարկությունները: «Անհրաժեշտ է,— ասաց Լ. Ի. Բրեժնևը համագումարին տված Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ,—ավելի մեծ ուշադրություն ու հարգանք ցուցաբերել կոմունիստների կարծիքի ու առաջարկների հանդեպ, պայմաններ ստեղծել լայն քննադատության ու ինքնաքննադատության համար, որպեսզի կուսկազմակերպությունը կարողանա ժամանակին ուղղել կուսակցության կանոնադրության պահանջներից շեղում թույլ տվող ամեն մի կոմունիստի, թույլ չտա, որ ավելանան աշխատանքում եղած թերությունները: Քննադատությունը ճնշողներին պետք է ամենախիստ պատասխանատվության ենթարկել»:

Կենսագործելով այս ցուցումը, շատ կուսակցական կոմիտեներ մշտապես հոգում են, որպեսզի որքան կարելի է լավ պարզաբանեն, նկատի առնվեն կոմունիստների կարծիքները, քննադատական դիտողություններն ու առաջարկությունները, ժամանակին ու ճիշտ անդրադառնան դրանց: Սրանց հետ կապված հարցերը քննության են առնվում կուսակցական ժողովներում, կոմիտեներում: Օրինակ, Մոլդավիայի կոմկուսակցության Կենտկոմը, ստուգելով մի շրջկոմի



գործունեությունը հաշվետու-ընտրական ժողովներում ու կոնֆերանսներում կոմունիստների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կատարման ուղղությամբ, հայտաբերեց այդ գործում եղած թերությունները և ցույց տվեց դրանց վերացման ուղիները: Հարկ չկա ապացուցելու, թե նման մոտեցումը որքան կարևոր է ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման համար: Եթե կոմունիստը տեսնում է, որ իր հետ հաշվի են նստում, կենսագործում են նրա առաջարկությունները, ապա կրկնապատկվում է նրա ուժը, նրան հաղորդակից դարձնում կուսակցական աշխատանքին: Եվ հակառակը: Եթե կոմունիստը զգում է, որ իր կարծիքներն ու առաջարկությունները հաշվի չեն առնվում, կարող է հանգել այն սխալ եզրակացության, թե ինքն անկարող է որևէ բան անել, փոխել գործի վիճակը, ազդեցություն ունենալ, ուստի հարկ չկա տքնելու և ակտիվություն ցուցաբերելու:

Ցավոք, դեռևս ոչ բոլոր կուսակցական կոմիտեներն ու նրա աշխատողներն են այդ հաշվի առնում: Նրանցից մի քանիսը երբեմն այնպիսի արարքներ է թույլ տալիս, որով կամա թե ակամա խախտում են ներկուսակցական դեմոկրատիան, սահմանափակում ու նեղացնում այն: Հայտնի է, որ այժմ կուսակցական սկզբնական կազմակերպություններում անց են կացվում հաշվետու-ընտրական ժողովներ: Դրանց մեծ մասն անցնում են կարծիքների ազատ և գործարար փոխանակության, սկզբունքային քննադատության ու ինքնաքննադատության, իրենց ղեկավար օրգանների, միմյանց նկատմամբ կոմունիստների բարձր պատասխանատվության պայմաններում: Բնական է, որ նման ժողովները կուսակցական կազմակերպության կյանքում նշանակալի հետք են թողնում, մոբիլիզացնում նրանց տնտեսական և կուլտուրական շինարարության հերթական խնդիրները հաջող լուծելու: Բայց լինում են և այնպիսի ժողովներ, որ կոմունիստների մեջ անբավարարվածության ու դառնության զգացում են առաջացնում: Այդպես է լինում, երբ անտեսվում են քննադատական դիտողությունները, երբ ժողովներում ստեղծված իրավիճակը նպաստավոր չէ ցավոտ հարցերի մասին անկեղծ խոսակցության համար:

Կուսակցական կյանքի հարցերը լուծելիս կոմունիստների կարծիքներին զգայուն, ուշադիր մոտեցման մեջ է դրսևորվում կուսակցական դեմոկրատիան: Մինչդեռ, որոշ կուսաշխատողներ չեն հարգում կուսակցականների կարծիքներն ու առաջարկությունները: Այդ երևում է, մասամբ, այն ժամանակ, երբ առանձին դեպքերում, մինչ հաշվետու-ընտրական ժողովը, ուղղակի խախտվում է ընտրությունների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հրահանգը, բյուրոյի կամ կուսկոմի նոր կազմի ցուցակ է կազմվում, որը և պատրաստի վիճակում առաջարկվում է ժողովին: Որպես կանոն, առարկությունները լինում են ո՛չ թե թեկնածուների (դրանք մեծ մասամբ արժանավոր մարդիկ են), այլ ընտրությունները «ղեկավարելու» այն ձևի առթիվ, որի պայմաններում կուսակցության անդամը, փաստորեն, անմիջականորեն չի մասնակցում թեկնածուների առաջադրմանը և նրան մնում է միայն քվեարկել: Ահա թե այդ մասին մեր ամսագրի խմբագրությանն ինչ է գրել Իվանովսկու մրի գործարանի աշխատակից, ՍՄԿԿ անդամ Մ. Կ. Ակիմովը.

«Մեր սկզբնական կազմակերպությունում հաշվետու-ընտրական ժողով էր: Այնտեղ էր նաև շրջկոմի ներկայացուցիչը: 40 կոմունիստներից ժողովին մասնակցում էին 30-ը: Երբ անցանք կուսակցական բյուրոյի նոր կազմի թեկնածուների առաջադրմանը, ձայն վերցրեց գործարանի դիրեկտոր ընկ. Ա. Դ. Մակեևը

և կուսբյուրոյի հին անդամների անունից կարդաց թեկնածուների ցուցակը, ուր կար նաև իր ազգանունը, այսպես ասած, ինքն իրեն երաշխավորեց: Դրան արագ հաջորդեց «սահմանափակել» առաջարկությունը: Կոմունիստներն ուշքի չէին եկել, չէին հասկացել, թե բանն ինչումն է, արդեն հարկավոր էր քվեարկել: Այսպիսի կարգ ու կանոնի դեպքում մեկնից շատերի մոտ կորչում է կարծիքը. տեսակետն ասելու ցանկությունը: Առաջ է գալիս անտարբերություն, սառնություն: Որոշ մարդիկ էլ ասում են, իբր, դիրեկտորը այնպիսի թեկնածուներ է ջնջում, որոնք ձեռնտու են իրեն»: Իսկապես, մի՞թե չի կարելի համեմատաբար ոչ մեծ կազմակերպությունում, ուր կոմունիստներն իրար լավ գիտեն, թեկնածուներ առաջադրել ուղղակի ժողովում: Անշուշտ, կարելի է և լավ կլիներ, որ նրանք հենց այդպես էլ վարվեին: Բայց թեկնածուների նախնական առաջադրումը լիովին հնարավոր է, իսկ խոշոր կազմակերպություններում նույնիսկ ցանկալի, որովհետև այնտեղ առանց դրա դժվար է յոլա գնալ: Սակայն այդ պետք է արվի միայն կուսակցական ժողովի որոշմամբ, այսինքն՝ կոմունիստների կամքով և դրա համար լիազորված օրգանների՝ արտադրամասային կուսկազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություններում: Սակայն ժողովում թեկնածուների այդպիսի նախնական առաջադրումն ու քննարկումը ամենևին չի սահմանափակում կուսակցության անդամների իրավունքը:

Կուսակցական բարձրագույն օրգանը ոչ միայն կարող է, այլև պարտավոր է ղեկավարել հաշվետու-ընտրական կուսակցական ժողովները, ներգործել բյուրոյի, կուսկոմի կազմի ձևավորմանը: Միայն քաղաքականապես խակ մարդիկ կարող են դրանում ներկուսակցական դեմոկրատիայի հանդեպ ոտնձգություն տեսնել: Բայց ղեկավարել, չի նշանակում, որոշել կոմունիստների փոխարեն, նրանց վզին փաթաթել իր կարծիքները: Ղեկավարել նշանակում է՝ խստորեն պաշտպանել կուսակցության սահմանած ընտրությունների դեմոկրատական կարգը, գործել խորհուրդներով, համոզիչ փաստարկումներով, պայմաններ ստեղծել, որպեսզի կոմունիստները կարողանան ազատ ու անկաշկանդ արտահայտել իրենց կամքը:

Լինում են նաև քննադատությունը բացահայտորեն ճնշելու, քննադատողին հալածելու դեպքեր: Եվ որքան էլ նման փաստերը բացառիկ լինեն, նրանք մեր կուսակցությանը մեծ վնաս են հասցնում և հանդուրժելի չեն: Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ կանոնադրությունը պահանջում է, որ այն անձինք, ովքեր մեղավոր են քննադատությունը ճնշելու և քննադատության հալածման գործում, կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկվեն, ընդհուպ մինչև ՍՄԿԿ շարքերից հեռացնելը:

Լայն քննադատությունն ու ինքնաքննադատությունը կադրերի ճիշտ դաստիարակման, թերությունների լիկվիդացման, ներկուսակցական դեմոկրատիայի պահանջների կենսագործման կարևոր պայմաններից մեկն է: Արգելակել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, նշանակում է՝ արգելակել կուսկազմակերպության աշխատանքը, խանգարել նրան՝ տեսնելու ողջ ճշմարտությունը, ժամանակին բացահայտելու ու վերացնելու թերությունները, ուղղելու նրանց, ովքեր շեղվում են ուղիղ ճանապարհից:

Ներկուսակցական դեմոկրատիայի զարգացումը, ինչպես այդ ընդգծվում է ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերում, կուսակցական կարգապահության համակողմանի ամրապնդում է նախանշում: Կուսակցության մեջ դեմոկրատիան ու կարգապահությունը միաձուլված են, անբաժանելի: Առանց ներկուսակցական



դեմոկրատիայի զարգացման չի կարելի ստեղծել ու պահպանել իսկապես ամուր գիտակցական կուսակցական կարգապահություն: Մեխանիկական կարգապահություն կուսակցությանը հարկավոր չէ: Առանց գիտակցական կարգապահության անհնար է գործնականում իրականացնել ներկուսակցական դեմոկրատիան, մեծամասնության կամքը, անհնար է գործարարությունը: Եվ նա, ով իրեն «անսահման դեմոկրատիայի» կողմնակից է երևակայում, արհամարհում մեծամասնության կամքը, դեմոկրատական սկզբունքներով ընտրված կուսակցական օրգանների դիրեկտիվները, ով գործով դեմ է դեմոկրատիային, հյուծում ու քայքայում է այն:

Կուսակցության մեջ գոյություն ունի քննարկման ու քննադատության լրիվ ազատություն, բայց այդ ազատությունը չի կարող «անծայրածիր» լինել, դա կուսակցական շրջանակներ ունի: Այն բանից հետո, երբ ավարտվել է հարցի քննարկումը, պարզ դարձել մեծամասնության կամքը, որոշումը ընդունվել, կուսակցության յուրաքանչյուր անդամ, ինչպիսի պոստ էլ նա գրավելիս լինի, պարտավոր է ենթարկվել որոշմանը և պարտադիր կատարել այն: Գործողությունների միասնություն—ահա թե ինչն է գլխավորը, առանց բացառության, բոլոր կոմունիստների համար:

«Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը...,— գրում էր Վ. Ի. Լենինը,— նշանակում է *քննադատության ազատություն,* լիակատար ու ամենուրեք, քանի որ դրանով չի խախտվում *որոշակի գործողության* միասնությունը,— և անթույլատրելիություն *որևէ* քննադատության, որը խախտում է կամ դժվարացնում կուսակցության որոշած գործողության *միասնությունը»* (Երկեր, հատ. 10, էջ 562): Մի խոսքով, ոչ ոք իրավասու չէ չարաշահելու քննադատության ազատությունը, օգտագործելու այն ի վնաս կուսակցության, ի հեճույս անձնական կամ խմբային շահերի:

Ամեն մի կոմունիստ անձնական պատասխանատվություն է կրում իր կազմակերպության և ամբողջ կուսակցության գործի համար: Նա պասսիվ դիտող չէ և ոչ էլ կողմնակի քննադատող, նա կուսակցության ակտիվ մարտիկ է, նրա հետ մի կյանքով, միևնույն ձգտումներով է ապրում և պատասխանատու է նրա ողջ գործունեության համար:

Փաստերը, սակայն, ցույց են տալիս, որ որոշ կոմունիստներ մոռանում են այդ մասին, անհավասարակշիռ են, խախտում են կուսակցական կարգապահությունը, չեն կատարում կանոնադրական պարտականությունները, իրենց կազմակերպության թերությունների մասին այնպես են խոսում կարծես իրենք ոչ մի կապ չունեն դրանց հետ, բոլոր պահանջներն ուրիշներին են ուղղում: Հաշվի չի առնվում մի հասարակ ճշմարտություն—ամեն մի կազմակերպություն ուժեղ է իր անդամների ակտիվությամբ, իր գործերին նրանց մշտական ու շահագրգռված մասնակցությամբ:

Առանձին կոմունիստներ խախտում են աշխատանքային կարգապահությունը, վատ են աշխատում արտադրության մեջ, չեն պահպանում կոմունիզմ կառուցողի բարոյական նորմերը: Հաշտվել այս ամենի հետ, նշանակում է՝ ոտնահարել կուսակցության շահերը, նրա հեղինակությանը մեծ վնաս հասցնել, թուլացնել նրան: Անհրաժեշտ է խիստ պահանջկոտություն ցուցաբերել բոլոր կոմունիստների հանդեպ, համառ ու անհողդողդ պայքարել այն բանի համար, որպեսզի նրանցից ամեն մեկը կուսակցական կարգապահության, պարտականությունների բարեխիղճ կատարման օրինակ ծառայեն:

ՍՄԿԿ XXIII համագումարից հետո կուսակցական կազմակերպություններն սկսեցին առավել հոգատարություն ցուցաբերել կուսակցական կարգապահության նկատմամբ, այն բանի համար, որպեսզի յուրաքանչյուր կոմունիստ արժանապատվությամբ կրի ու արդարացնի լենինյան կուսակցության անդամի բարձր կոչումը: Ուշագրավն այն է, որ կուսակցության կոմիտեները ներկուսակցական կարգապահության ամրապնդման հարցերը չեն մեկուսացնում, ինչպես առաջներում, այլ ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացման խնդիրների ուղղակի կապի մեջ են դիտում:

Այդպես է մոտեցել գործին Տյումենի մարզի ՍՄԿԿ Տոբոլսկի շրջկոմը: Խորհրդակցելով սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարների հետ, շրջկոմի բյուրոն վճռեց համակողմանիորեն ուսումնասիրել ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման ու կուսակցական կարգապահության ամրապնդման հարցը և դնել շրջանային կոմիտեի պլենումի քննարկմանը: Դրա համար շրջկոմի անդամները եղան սկզբնական կազմակերպություններում, զրուցեցին շատ կոմունիստների հետ, ստուգեցին կուսակցական ժողովների անցկացման պրակտիկան, կազմակերպություններում քննադատության և ինքնաքննադատության վիճակը, կոմունիստների պարտականությունների կատարումն ու ներկուսակցական կյանքի հետ կապված շատ այլ հարցեր: Ստուգված նյութերի հիման վրա կոլեկտիվ հիմունքներով հանգամանալի զեկուցում պատրաստվեց: Պլենումում սուր, պահանջկոտ խոսակցություն բացվեց, միջոցառումներ մշակվեցին ներկուսակցական դեմոկրատիայի և կուսակցական կարգապահության հետագա ամրապնդման համար: Կուսակցական կազմակերպություններն իրենց առաջնահերթ խնդիրն են համարում բարձրացնել կոմունիստների դերը էկոնոմիկայի զարգացման, ՍՄԿԿ XXIII համագումարի առաջադրած հնգամյա պլանի դիրեկտիվների կատարման գործում: Նյութական արտադրության ոլորտը՝ հասարակական կյանքի վճռական ոլորտն է: Հենց այստեղ է կոմունիզմի կառուցման նյութական ու հոգևոր առատ բարիքների ստեղծման համար մղվող պայքարի առաջավոր գիծը: Իսկ կոմունիստի տեղը առաջավոր գծում է: Նրա գիտակցականությունը, իսկական կուսակցական լինելը, ստուգվում է, ամենից առաջ, նրանով, թե ինչպես է նա վերաբերվում աշխատանքին, արտադրությանը, ինչպես հոգում իր ձեռնարկության, կոլտնտեսության, շինարարության համար:

Կուսակցական կարգապահությունը, այդ միայն ժողովներին ճշտապահորեն հաճախելն ու անդամավճարները ժամանակին մուծելը չէ: Թեև դա էլ կարևոր նշանակություն ունի: Այն ենթադրում է կոմունիստների համար ո՛չ միայն կուսակցական կարգ ու կանոն, այլև աշխատանքային կարգապահություն, սովետական օրենքների, սոցիալիստական հանրակեցության կանոնների, մեր բարոյական կոդեքսի գիտակցական պահպանում: Այս ամենում կոմունիստը կոչված է անկուսակցականներին օրինակ ծառայելու, այդ նրա կուսակցական պարտքն է ու պարտականությունը: Եթե նա խախտում է աշխատանքի սոցիալիստական կարգապահությունը, ուրեմն, ինքնըստինքյան խախտում է նաև կուսակցական կարգապահությունը, արատավորում կոմունիստի բարձր կոչումը և դրա համար պետք է պատասխան տա կուսակցական կարգով:

Կուսակցական կարգապահության ամրապնդման համար յուրահատուկ պատասխանատվություն են կրում ղեկավար կադրերը և, առաջին հերթին, կուսակցական աշխատողները: Նրանց պարտքն է՝ պահանջկոտ լինել իրենց և ուրիշ-



ների նկատմամբ, չանցնել անկարգապահության փաստերի կողքով, սկզբունքային գնահատական տալ, ներողամիտ չլինել նրանց հանդեպ, ովքեր մոռանում են իրենց կուսակցական պարտքը: Նրանք կոչված են օգտագործելու կուսակցական աշխատանքի բոլոր միջոցներն ու ձևերը՝ ժողովները, զրույցները, մամուլը, կուսակցական ուսուցումը, կուսակցական հանձնարարությունների կատարման սիստեմատիկ վերահսկողությունը, կուսակցության դիրեկտիվները՝ բոլոր կոմունիստներին կուսակցական կարգապահության խստագույն պահպանման ոգով դաստիարակելու համար: Այդ գործում մեծ նշանակություն ունի ղեկավար աշխատողի անձնական օրինակը: Նրանից պահանջվում է կուսակցական կազմակերպվածություն, կանոնադրական պահանջների անթերի կատարման օրինակ ծառայել: Իրենց գործունեության ակտիվացման որոշակի շրջադարձով այդ են ընդգծում այժմ կուսակցական կոմիտեները:

Մեր կուսակցությունն ունի մեկ կարգապահություն, բոլոր կոմունիստների համար մեկ օրենք՝ ինչպես ղեկավարների, այնպես էլ շարքայինների համար: Իր ողջ գործելակերպով ղեկավարը կոչված է ցույց տալու, որ երբեք չի մոռանում այդ, սրբորեն պահպանում է կուսակցական կարգապահությունը, այդ բարձրացնում է ղեկավարի հեղինակությունը, նրան բարոյական իրավունք է տալիս առանց ներողամտության կարգապահություն պահանջելու ուրիշներից, ուժեղացնում է նրա ազդեցությունը կոմունիստների վրա: Վ. Ի. Լենինը ժամանակին ասել է. ուրիշներից կարգապահություն պահանջելու համար, ինքներս պետք է կարգապահ լինենք:

Կոմունիստական կուսակցությունը ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացման և կուսակցական կարգապահության ամրապնդման նոր կուրս է վերցրել: Այդ կուրսի հետևողական իրագործումը ավելի կամրապնդի կուսակցության շարքերը, կապահովի կոմունիստների ստեղծագործական ակտիվությունը և նրանց գործունեության անխախտ միասնությունը: Ավելի կբարձրացնի կուսակցության ավանգարդային, նրա քաղաքական կազմակերպչական և գաղափարական գործունեության դերը, ղեկավար ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա:

«Партийная жизнь» ամսագիր
№ 23, 1966 թ.

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Ա. ԲԻՇԱՐՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

## ՍՄԿԿ ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Մեր դարաշրջանի ամենակենսական և հրատապ հարցը պատերազմի և խաղաղության հարցն է, որի ճիշտ լուծումով շահագրգռված է ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը պատերազմի, խաղաղության և հեղափոխության հարցերում ղեկավարվելով լենինյան դրույթներով, իր XXII և XXIII համագումարների որոշումներում դրանց վերաբերյալ մշակեց գիտականորեն հիմնավորված կուռ ծրագիր, որն արժանացավ միջազգային կոմունիստական ու բանվորական կուսակցությունների և խաղաղության համար մարտնչող բոլոր ուժերի ջերմ հավանությանն ու պաշտպանությանը։ Մեր կուսակցությունն իր ծրագրում հանդիսավոր հայտարարեց, որ «ՍՄԿԿ-ն իր արտաքին քաղաքական գործունեության գլխավոր նպատակն է համարում՝ ապահովելով ՍՍՀՄ-ում կոմունիստական հասարակարգի կառուցման ու սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման խաղաղ պայմաններ և բոլոր խաղաղասեր ժողովուրդների հետ մեկտեղ մարդկությունը փրկել համաշխարհային բնաջնջող պատերազմից»։

●

Պատերազմի և խաղաղության հարցերը միշտ գտնվել են հասարակական տարբեր դասակարգերի, խմբերի ու խավերի ուշադրության կենտրոնում։ Շահագործող դասակարգերը սոցիալական այդ բարդ, բայց միաժամանակ չափազանց կարևոր հարցերի մեկնաբանմանը մոտեցել են իրենց նեղ դասակարգային շահերի տեսանկյունից։ Այսպես, նրանց տեսաբանները քիչ ջանքեր չեն գործադրել խեղաթյուրելու պատերազմների էության և դրանց ծագման պատճառների ճիշտ ըմբռնումը։ Տիրապետող դասակարգերի կողմից մղվող թալանչիական, զավթողական պատերազմների արդարացման համար, նրանք հորինել ու հորինում են բազմապիսի կեղծ, ռեակցիոն տեսություններ։ Չնայած այդ ուսմունքների բազմազանությանը, նրանց հիմքում



ընկած է մեկ միասնական իդեա՝ ամեն կերպ հիմնավորել, որ պատերազմներն առաջացել են ո՛չ թե մարդկային հասարակության որոշակի էտապում ստեղծված տնտեսական ու քաղաքական պայմանների հետևանքով, այլ երևան են եկել մարդկային հասարակության ծագման հետ մեկտեղ և, որպես այդպիսին, նրա անբաժանելի ուղեկիցն են։ Ավելին, բուրժուազիայի գաղափարախոսները ձգնում են ապացուցել, որ պատերազմը կապ չունի համապատասխան հասարակարգի և այդ հասարակարգում իշխող դասակարգերի վարած քաղաքականության հետ, որ այն վերդասակարգային երևույթ է։

Վ. Ի. Լենինը սպանիչ քննադատության ենթարկեց պատերազմի և խաղաղության հարցերում նմանօրինակ գռեհիկ և սնամեջ հայացքները, նշելով, որ դրանք հերքվել ու հերքվում են ցանկացած դարաշրջանի պատերազմի քիչ թե շատ ուշադիր վերլուծությամբ։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ պատերազմն, ամենից առաջ, պատմական-հասարակական երևույթ է և, որպես այդպիսին, ունի իր սկիզբն ու վախճանը։ Պատերազմների դրդապատճառը մարդկային հասարակության տնտեսական ու քաղաքական անհավասարության, դասակարգային ու ազգային ճնշման, սոցիալական անտագոնիզմի պատճառ հանդիսացող արտադրության միջոցների մասնավոր սեփականությունն է։ Այսպիսով, պատերազմն անտագոնիստական դասակարգային հասարակության կատեգորիա է և միայն շահագործող դասակարգերի լիկվիդացումը կհասցնի դրանց վերացմանը։

Հիմնականը, որով բնորոշվում է պատերազմի էությունը, դա նրա քաղաքական բովանդակությունն է։ Պատերազմը ո՛չ թե սոսկ խաղաղության խախտում է, այլ որոշակի դասակարգերի և պետությունների քաղաքականության ուղղակի շարունակությունն է այլ միջոցներով՝ զինված բռնության միջոցներով։ Պատերազմի ժամանակ տվյալ դասակարգը շարունակում է վարել նույն քաղաքականությունը, ինչ-որ պատերազմից առաջ՝ փոխելով միայն կենսագործման միջոցները։ «Ճիշտ նույն քաղաքականությունը,— գրում է Լենինը,— որը մի որոշ տերություն, այդ տերության ներսում մի որոշ դասակարգ վարել է երկար ժամանակամիջոցում պատերազմից առաջ, այդ նույն դասակարգը անխուսափելիորեն ու անվերապահորեն շարունակում է վարել պատերազմի ժամանակ, փոխելով միայն գործողության ձևը» (Երկեր, հ. 25, էջ 510)։ Ուստի պատերազմի կոնկրետ էությունն արտահայտվում է այն նպատակների մեջ, որի համար մղվում է այն։

Մարքսիստական կուսակցությունն այս կամ այն պատերազմի նկատմամբ իր վերաբերմունքը որոշելիս միշտ ելնում է այն հիմնական սկզբունքից, թե դասակարգային ի՞նչ բնույթ է կրում տվյալ պատերազմը, ի՞նչ նպատակներ ունի և ինչ դասակարգեր են մղում այն։ Իսկ այդ պարզելու համար, նշում է Լենինը, «պետք է ուսումնասիրել պատերազմին նախորդող քաղաքականությունը», որը հանգեցրել է պատերազմի։

Արտադրության միջոցների մասնավոր սեփականության վրա հիմնված հասարակարգերում պատերազմները գնալով դարձան հաճախակի, ընդլայնվեցին դրանց տարածման շրջանակները։ Պատերազմները հատկապես անողոք և հաճախակի դարձան կապիտալիստական հասարակարգի վերջին փուլում՝ իմպերիալիզմի դարաշրջանում, դրանք դարձան իմպերիալիզմի մշտական, անբաժան ուղեկիցը։ Պատերազմների միջոցով իմպերիալիստական տերությունները ջանում են ո՛չ միայն կոծկել իրենց սիստեմին հատուկ անլուծելի

հակասությունները, այլև մոնոպոլիստական խմբերի համար ապահովել ա-
ռավել բարձր շահույթներ։ Մյուս կողմից, մոնոպոլիստական կապիտալիզմը
պատերազմների միջոցով ձգտում է խեղդել աշխատավոր մասսաների դեմո-
կրատական հեղափոխական շարժումները, սպանդի մեջ ներքաշել և ոչնչաց-
նել պրոլետարիատի առավել գիտակից ու կազմակերպված ջոկատները։

Իմպերիալիզմի դարաշրջանում պատերազմները տարբեր են ինչպես
իրենց բնույթով, այնպես էլ նպատակներով ու մասշտաբներով։ Սակայն,
չնայած այդ բազմազանությանը, ժամանակակից պայմաններում դրանք բա-
ժանվում են հիմնականում երեք կատեգորիայի՝ ա) համաշխարհային պատե-
րազմներ, բ) լոկալ պատերազմներ և գ) ազատագրական պատերազմներ՝
ժողովրդական ապստամբություններ։

Համաշխարհային պատերազմները հատուկ են կապիտալիզմի բարձրա-
գույն ստադիային՝ իմպերիալիզմին։ Իմպերիալիզմի դարաշրջանում տնտե-
սական ու քաղաքական անհամաչափ, թռիչքաձև զարգացումը կապիտալիզմի
անքակտելի օրենքն է, որի գործողության շնորհիվ խորանում և ծայրաստի-
ճան սրվում են կապիտալիզմի բոլոր հակասությունները, փոխվում է իմ-
պերիալիստական տերությունների միջև ռազմական ու տնտեսական ուժերի
հարաբերակցությունը։

Բացահայտելով իմպերիալիզմի կողմից սանձազերծվող համաշխարհա-
յին պատերազմների դասակարգային էությունը և սոցիալ-տնտեսական նպա-
տակները, Լենինը գրում է. «Պայքար շուկաների համար և օտար երկրների
կողոպուտ, երկրների ներսում պրոլետարիատի և դեմոկրատիայի հեղափո-
խական շարժումը խափանելու ձգտում, բոլոր երկրների պրոլետարներին հի-
մարացնելու, բաժանելու և ջարդելու ձգտում, մի ազգի վարձու ստրուկներին
գրգռելով մյուս ազգի վարձու ստրուկների դեմ հօգուտ բուրժուազիայի—այս
է պատերազմի միակ ռեալ բովանդակությունն ու նշանակությունը» (Երկեր,
հատ. 21, էջ 3—4)։

Եթե առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմների սանձազերծ-
ման ժամանակ իմպերիալիստական տերությունները չէին հանդիպել քիչ թե
շատ լուրջ դիմադրության, ապա արդի պայմաններում դրությունն արմատա-
պես փոխվել է։ Հողագնդի վրա ստեղծվել է լայնածավալ խաղաղության գոտի։

Համաշխարհային սոցիալիստական լագերի հետ մեկտեղ նրա մեջ մըտ-
նում են ոչ սոցիալիստական պետությունների մի մեծ խումբ, որոնք այս կամ
այն պատճառով շահագրգռված չեն պատերազմ սանձազերծելու մեջ։ Այդ
պետությունների համաշխարհային քաղաքականության ասպարեզ դուրս գալը
էապես փոխել է ուժերի հարաբերակցությունը հօգուտ խաղաղության։ Բացի
այդ, աճում է այն երկրների թիվը, որոնք հետևում են չեզոքության քաղաքա-
կանությանը։ Եթե այդ ամենին ավելացնենք նաև այն, որ պատմական նոր
դարաշրջանում անչափ աճել են ժողովրդական մասսաների հնարավորություն-
ները միջազգային հարցերի լուծմանը ակտիվորեն միջամտելու գործում, ապա
պատկերն ավելի պարզ կլինի։

Լոկալ (տեղական) պատերազմները, որոնց մասին այսօր այնքան շատ
են խոսում և գրում կապիտալիստական աշխարհում, պատերազմական գոր-
ծողություններ են առանձին երկրների կամ աշխարհի առանձին մասերում։
Լոկալ պատերազմները նոր երևույթ չեն, դրանք եղել են անցյալում և բա-
ցառված չէ դրանց առաջացումը նաև ապագայում։ Ժամանակակից պայման-



ներում լոկալ պատերազմների օգտին իմպերիալիստական շրջանների բարձ-
րացրած աղմուկը բացատրվում է նրանով, որ նրանք լավ են հասկացել, թե
նոր համաշխարհային պատերազմի սանձազերծումն անխուսափելիորեն
կհասցնի կապիտալիստական սիստեմի փլուզմանն ու կործանմանը։ Ուստի,
ամբողջ հույսը նրանք դրել են լոկալ պատերազմների վրա։

Իմպերիալիստական շրջանները հույս ունեն լոկալ պատերազմներով
ահաբեկել և խեղդել ժողովուրդների ազգային ազատագրական պայքարը և,
միաժամանակ, խուսափելով համաշխարհային պատերազմից, մի կերպ մեղ-
մել իրենց բզկտող հակասությունները։ Սակայն, արդի պայմաններում լոկալ
պատերազմների սանձազերծումը հղի է մեծ վտանգներով, քանի որ այն
փոքր, սահմանափակ պատերազմից կարող է վերածվել համաշխարհային
ջերմամիջուկային, հրթիռային պատերազմի։

Ազգային-ազատագրական պատերազմների բնորոշ գիծը ճնշված ու գա-
ղութացված ժողովուրդների զինված ապստամբություններն ու պայքարն է
դասակարգային և ազգային շահագործումից ազատագրվելու համար։ Մեր
դարաշրջանին բնորոշ է իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումը։
Երկրագնդի լայնածավալ տերիտորիայում ազգային-ազատագրական հեղա-
փոխությունների հզոր վերելքը քայքայում է իմպերիալիզմի հիմքերը։ Սա-
կայն պատմական այդ մեծ պայքարը դեռ ավարտված չէ։ Այդ պատճառով էլ
հեղափոխական ազատագրական պատերազմներն ապագայում ո՛չ միայն
հնարավոր, այլև, անհրաժեշտ ու անխուսափելի են, որովհետև իմպերիա-
լիստները հոժարակամ ազատություն չեն տա ժողովուրդներին։

Ժողովուրդների զինված ապստամբությունները չի կարելի նույնացնել
պետությունների միջև մղվող պատերազմների հետ, քանի որ այդ պատե-
րազմների ժամանակ զինված մասսաները պայքարում են ո՛չ թե ուրիշ տե-
րիտորիաներ նվաճելու ու ժողովուրդներին գաղութացնելու, այլ պայքարի են
ելնում ռեակցիոն ուժերի ու ռեժիմների դեմ՝ հանուն իրենց ինքնորոշման
իրավունքի իրագործման, հանուն սոցիալական ու ազգային ինքնուրույն,
անկախ զարգացման։ Այդ պատերազմներն արդարացի պատերազմներ են և
կոմունիստները ո՛չ միայն պաշտպանում, այլև ընթանում են նրա առաջին
շարքերում։

Իմպերիալիզմը, որը մարդկությանը բերել է երկու ամայացնող համաշ-
խարհային պատերազմներ, սպառնում է նրան նետել նոր, երրորդ համաշ-
խարհային պատերազմի սպանդի մեջ։ Սակայն փոխվել են ժամանակները և
դրա հետ մեկտեղ փոխվել են պատերազմի վարման ձևերն ու միջոցները,
դրանց մոտակա և հեռավոր հետևանքները։ Եթե նախորդ համաշխարհային
պատերազմների արդյունքները ռազմա-ստրատեգիական տեսակետից ար-
տահայտվեցին երկրների մի խմբի պարտությամբ և մյուս խմբի հաղթանա-
կով, ընդ որում պարտված երկրները ո՛չ միայն շարունակում էին գոյություն
ունենալ, այլև կարճ ժամանակամիջոցում վերականգնում էին իրենց տնտեսա-
կան պոտենցիալը, ապա արդի պայմաններում՝ ջերմամիջուկային պատե-
րազմի դեպքում այդպիսի հնարավորությունը բացառված է։

Մեր ժամանակներում ռազմական տեխնիկայի առաջընթացը հնարավո-
րություն է ընձեռել ստեղծելու մասսայական ոչնչացման ու կործանման այն-
պիսի հրեշավոր միջոցներ, որոնց գործածությունը կհանգեցնի չտեսնված
ավերածությունների՝ փլատակների կվերածվեն ո՛չ միայն համաշխարհային

կուլտուրայի խոշորագույն կենտրոնները, այլև ամբողջ երկրներ։

Հավատարիմ մնալով լենինյան խաղաղասիրական քաղաքականությանը, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը հսկայական ջանքեր է գործադրել ու գործադրում նոր համաշխարհային պատերազմների և ընդհանրապես ագրեսիվ, զավթողական պատերազմների կանխման համար, դրա մեջ տեսնելով մարդկության հանդեպ իր պատմական միսիան։

Խաղաղության պահպանման ու ամրապնդման համար հսկայական նշանակություն ունեցավ արդի էպոխայում պատերազմների կանխման հնարավորության մասին մեր կուսակցության արած պատմական նշանակություն ունեցող հետևությունը։ Դոգմատիկները, որոնք հանդես են գալիս պատերազմների կանխման հնարավորության վերաբերյալ մեր կուսակցության տեսական դրույթի և քաղաքական կուրսի դեմ, սովորաբար կառչում են իմպերիալիզմի էպոխայում պատերազմների անխուսափելիության լենինյան դրույթից։ Հիշյալ դրույթը միանգամայն ճիշտ էր իր ժամանակի համար և իմպերիալիզմի խոր գիտական վերլուծության արդյունք էր։ Դա այն ժամանակաշրջանն էր, երբ իմպերիալիզմը համապարփակ սիստեմ էր, իսկ պատերազմի դեմ հանդես եկող ուժերը չափազանց թույլ։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո վիճակն արմատապես փոխվեց։ Բնականաբար, պատմական փոխված պայմաններում մեր կուսակցությունը պատերազմի և խաղաղության հարցում իր քաղաքականությունը մշակելիս պետք է ելներ ո՛չ թե իր դարն ապրած հին դրույթներից, այլ ստեղծագործական մարքսիզմի դիրքերից։ Ահա թե ինչու Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն իր ծրագրում ամենայն որոշակիությամբ ընդգծեց, որ աշխարհում գոյացել և աճում են ռեալ ուժեր, որոնք ընդունակ են պահպանելու և ամրապնդելու ընդհանուր խաղաղությունը, որ մարդկանց ներկա սերունդն ի վիճակի է կանխելու ջերմամիջուկային պատերազմը։ Այդ միտքը նոր ուժով հաստատեց կուսակցության XXIII համագումարը։

ՍՄԿԿ-ն պատերազմի և խաղաղության հարցերում իր քաղաքականությունը մշակելիս ելնում է վերջին ժամանակաշրջանում համաշխարհային մասշտաբով դասակարգային ուժերի փոխհարաբերություններում կատարված հետևյալ արմատական փոփոխություններից.

1. Արդի դարաշրջանում մարդկային հասարակության պատմական զարգացման գլխավոր բովանդակությունը որոշում է ո՛չ թե կապիտալիզմն՝ իր գայլային հակումներով, այլ տնտեսության համաշխարհային սոցիալիստական սիստեմը։

Սոցիալիզմն իմպերիալիզմին հակադրում է միջազգային հարաբերությունների նոր տիպ։ Սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականության հիմքում ընկած են ժողովուրդների բարեկամության, խաղաղության, իրավահավասարության, բոլոր երկրների անկախությունն ու սուվերենությունը հարգելու սկզբունքները։ Անշեղորեն վարելով արտաքին խաղաղասիրական քաղաքականություն, սոցիալիստական երկրների աշխատավոր մասսաները չեն մոռանում, որ պատերազմը կապիտալիզմի մշտական ուղեկիցն է, որ իմպերիալիզմը փորձել և կփորձի մարդկությանը ներքաշել ավերիչ պատերազմների մեջ։

Սակայն Սովետական Միության և սոցիալիստական երկրների էկոնոմիկայի, գիտության ու տեխնիկայի աննախընթաց զարգացումը, ատոմա-ջրա-



ծնային զենքի բնագավառում ԱՄՆ-ի մենաշնորհի վերացումը հնարավորություն ընձեռեց ստեղծելու սոցիալիստական երկրների տնտեսական ու ռազմական այնպիսի հզորություն, որը հուսալիորեն պաշտպանում է սոցիալիզմի նվաճումները, հզոր նեցուկ է պատերազմի հրձիգների սանձահարման և ամբողջ աշխարհում խաղաղության ամրապնդման գործում։

2. Խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարի ամենահետևողական և ամենաանձնազոհ մարտիկների՝ կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ղեկավարությամբ աճել ու ամրապնդվել է միջազգային պրոլետարիատը։ Նա ձեռք է բերել իմպերիալիզմի դեմ պայքարի բազմակողմանի և հարուստ փորձ։ Դրա հետ մեկտեղ արմատապես փոխվել է նրա դերը միջազգային կարևորագույն պրոբլեմների լուծման ընթացքում։

Պատմական նոր պայմաններում կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ղեկավարությամբ, միավորելով դեմոկրատիայի, խաղաղության ուժերը, կարող է ստիպել իրենց կառավարող շրջաններին «...դադարեցնելու համաշխարհային նոր պատերազմի նախապատրաստությունը, հրաժարվելու լոկալ պատերազմներ սանձազերծելուց, էկոնոմիկան օգտագործելու խաղաղ նպատակներով» (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 43)։

3. Համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցության մեջ կատարված փոփոխությունը կապված է նաև կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացման բազայի վրա աշխարհի տարբեր մասերում ծավալված ազգային-ազատագրական շարժումների հետ, որոնց ալիքը, որը սրբում-տանում է իմպերիալիզմի գաղութային սիստեմը, իր պատմական նշանակությամբ երկրորդ խոշոր երևույթն է։ Նախկին գաղութների և կիսագաղութների փոխարեն առաջացած նոր, սուվերեն պետություններն ավելի ու ավելի ակտիվորեն են հանդես գալիս որպես ինքնուրույն առաջադեմ և հակաիմպերիալիստական ուժ, որոնք կոչված են ամենաակտիվ դեր խաղալու արդիականության ամենահրատապ պրոբլեմի՝ պատերազմի և խաղաղության պրոբլեմի լուծման գործում։

Այսօր, «Պատերազմի վտանգի դեմ մղվող պայքարում ազատագրված երկրների ժողովուրդների և սոցիալիստական պետությունների ժողովուրդների ջանքերի միավորումը ընդհանուր խաղաղության մեծագույն գործոնն է։ Մարդկության երկու երրորդի կամքը և ուժը արտահայտող այդ հզոր ճակատը կարող է նահանջի հարկադրել իմպերիալիստական ագրեսորներին» (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 59)։

4. Պատերազմների կանխման և տևական խաղաղության հաստատման գործում անչափ աճել է աշխատավոր մասսաների դերը. այն դարձել է մեր ժամանակաշրջանի հզոր գործոններից մեկը, որը վճռող է դարձել միջազգային հարցերի լուծման ասպարեզում։

Մարդկային հասարակության բախտի նկատմամբ ունեցած պատասխանատվության զգացումը խթանում է ժողովրդական լայն զանգվածներին ավելի ակտիվորեն իրենց ձեռքը վերցնելու խաղաղության պահպանման գործը։ Այսօր չկա ավելի լայն շարժում, քան խաղաղության համար մղվող շարժումը։ Այն տարածվել է աշխարհով մեկ՝ իր մեջ միավորելով տարբեր դասա-

կարգերի, ազգերի ու ռասաների, կրոնական ու քաղաքական տարբեր հա-
յացքների տեր մարդկանց։
Խաղաղության համար մարտնչող ուժերի այսպիսի հարաբերակցությունն
ու տեղաբաշխումն ստեղծել է խաղաղության հզոր գոտի, որն իր տնտեսական,
ռազմական և քաղաքական ուժերի տեսակետից գերակշռում է պատերազմով
շահագրգռված իմպերիալիստական շրջանների ուժերին։
Ժամանակակից էտապում համաշխարհային պատերազմների կանխման
և կայուն խաղաղության հաստատման՝ մեր կուսակցության եզրակացությու-
ներն իրենց հաստատումը գտան բանվորական ու կոմունիստական կուսակ-
ցությունների Մոսկվայի 1957 և 1960 թվականների խորհրդակցություններում։
«Հասել է ժամանակը,— ասված է կոմունիստական ու բանվորական կու-
սակցությունների 1960 թ. Հայտարարության մեջ,— երբ կարելի է խափանել
համաշխարհային պատերազմը սանձազերծելու իմպերիալիստական ագրեսոր-
ների փորձերը։ Համաշխարհային սոցիալիստական լագերի, միջազգային
բանվոր դասակարգի, ազգային ազատագրական շարժման միացյալ ջանքե-
րով, պատերազմի դեմ հանդես եկող բոլոր ուժերի միացյալ ջանքերով հա-
մաշխարհային պատերազմը կարելի է կանխել»։
Պատերազմի և խաղաղության հարցերում իր վերաբերմունքի մշակման
ժամանակ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը հաշվի
է առնում Վ. Ի. Լենինի այն հայտնի զգուշացումը, որ կապիտալիզմը մեռնե-
լու պրոցեսում անգամ դեռևս ի վիճակի է անհամար չարիքներ բերել մարդ-
կային հասարակությանը։ Կորցնելով դիրք դիրքի ետևից իմպերիալիզմը ջա-
նացել և ձգնում է մի կերպ պահպանել իր տիրապետությունը և ետ վերա-
դարձնել կորցրածը։ Ուստի երաշխիք չկա, որ իմպերիալիզմի ռեակցիոն շրր-
ջանները չեն փորձի երրորդ համաշխարհային պատերազմ սանձազերծել։
Հաշվի առնելով նմանօրինակ վտանգը, Սովետական Միության կոմու-
նիստական կուսակցությունը խաղաղության համար մղվող պայքարի հետ
մեկտեղ ամեն կերպ զարգացնում է էկոնոմիկան և դրա բազայի վրա կատա-
րելագործում երկրի պաշտպանությունն ու մեծացնում ռազմական հզորու-
թյունը։ Իմպերիալիստական առավել ռեակցիոն ուժերի կողմից համաշխար-
հային պատերազմի սանձազերծման վտանգը միաժամանակ բոլոր կոմունիս-
տական ու բանվորական կուսակցություններից պահանջում է պահպանել մե-
ծագույն զգոնություն և աչալուրջ հետևել պատերազմի հրձիգների բոլոր մե-
քենայություններին, ամրապնդել բոլոր հակապատերազմական ուժերի հա-
մախմբվածությունն ու կազմակերպվածությունը, է՛լ ավելի բարձրացնել մի-
լիոնավոր մասսաների ակտիվությունը խաղաղության ամրապնդման ու պա-
տերազմի հրձիգներին սանձահարման գործում։
Կյանքը հաստատեց պատերազմի և խաղաղության հարցում մեր կուսակ-
ցության վարած կուրսի ճշմարտությունը։ Վերջին տարիներին իմպերիալիզ-
մի ագրեսիվ շրջանները լոկալ պատերազմներ սանձազերծելով, բազմաթիվ
անգամ մարդկությանը կանգնեցրին համաշխարհային ջերմամիջուկային պա-
տերազմի եզրին։ Սակայն Սովետական Միության, սոցիալիստական երկրնե-
րի և մյուս խաղաղասեր երկրների ու ժողովուրդների միացյալ ու վճռական
ջանքերի շնորհիվ ագրեսիվ ուժերին չհաջողվեց մարդկությանը նետել բնա-
ջնջող պատերազմի անդունդը։
Սակայն իմպերիալիզմն այժմ էլ պատերազմները դիտում է որպես



միջազգային հարցերը լուծելու բնական միջոց։ Դրա ապացույցներից է Թե-
կուզ և Վիետնամի դեմ ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիան։
Բովանդակ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը և, առաջին հերթին,
Սովետական Միության և սոցիալիզմի մյուս երկրների ժողովուրդները ո՛չ
միայն նշավակեցին ամերիկյան իմպերիալիզմի այդ ագրեսիվ քայլը, այլև
բազմակողմանի օգնություն են ցույց տալիս Վիետնամի խաղաղասեր ժողո-
վրրդին իր արդարացի կռվում։ ՍՄԿԿ XXIII համագումարում Լ. Ի. Բրեժնևը
հայտարարեց, որ տեղի է ունենում ամերիկյան ագրեսորների բարոյա-քաղա-
քական մեկուսացման հարաճուն պրոցես, որ աշխարհի խաղաղասեր ժողո-
վուրդները վճռականապես պահանջում են դադարեցնել ԱՄՆ-ի ագրեսիան
Վիետնամի դեմ։
Մեր կուսակցությունն ամենայն որոշակիությամբ հայտարարում է, որ
Սովետական Միությունը պատրաստ է հաշտ ու խաղաղ ապրելու բոլոր եր-
կրրների հետ։ Եվ դա միայն լոկ հայտարարություն չէ։ Մերկացնելով իմպե-
րիալիզմի քաղաքականությունը, ՍՄԿԿ հետևողականորեն վարում է տարբեր
հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության կուրս։
Սակայն սխալ կլիներ կարծել, որ մեր կուսակցության խաղաղ գոյակ-
ցության կուրսը փոխել է իմպերիալիզմի գիշատիչ բնույթը։ Բայց Սովետա-
կան Միության ու մյուս սոցիալիստական երկրների ռազմատնտեսական հզո-
րությունը, կապիտալիստական երկրների բանվորական ու դեմոկրատական
շարժման հզոր ուժը, ազգային-ազատագրական շարժումների հզոր ալիքը
կարող են հակադրել և հակադրում են իմպերիալիզմին համաձայնել խաղաղ
գոյակցության քաղաքականությանը։
Տարբեր սոցիալական սիստեմ ունեցող պետությունների խաղաղ գո-
յակցության և պատերազմների կանխման ուղին ՍՄԿԿ մշակած լրիվ և ընդ-
հանուր զինաթափման ծրագրի իրականացումն է։ Սովետական Միությունը և
սոցիալիստական լագերի մյուս երկրները անկեղծորեն և անվերապահ կանգ-
նած են լրիվ և ընդհանուր զինաթափման դիրքերում, որովհետև այն ամ-
բողջովին համապատասխանում է միլիոնավոր աշխատավոր մասսաների ար-
մատական շահերին։ Այսօր զինաթափման գաղափարը ձեռք է բերել հսկա-
յական ձգողական ու մոբիլիզացնող ուժ, տիրապետելով աշխարհի միլիոնա-
վոր մասսաներին։ Այժմ այդ լոզունգի պաշտպանման և իրականացման հա-
մար կոմունիստական ու բանվորական կուսակցության հետ մեկտեղ ակտիվ
պայքար են մղում հասարակական բազմաթիվ այլ ուժեր և խմբեր։ Փաստերը
ցույց են տալիս, որ միջազգային բանվոր դասակարգը, ամբողջ աշխարհի աշ-
խատավոր մասսաների և սոցիալիզմի լագերի միացյալ ջանքերով այդ ուղ-
ղությամբ արդեն որոշակի քայլեր են կատարել։
Պատերազմների կանխման և կայուն ու տևական խաղաղության հաստատ-
ման իդեաները գնալով ավելի ու ավելի են տիրապետում մեր մոլորակի աշ-
խատավոր լայն խավերին. դրանք դարձել են ժողովրդական մասսաների մար-
տական պահանջը, դարաշրջանի համամարդկային կարևորագույն պրոբլեմը։
Կասկած չկա, որ մոտ ապագան նորանոր հաղթանակներ կբերի խաղա-
ղության ու սոցիալիզմի ուժերին։

Հ. ՍԱՀԱԿՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

# «ՏԱՐՐԱԿԱՆ» ՄԱՍՆԻԿՆԵՐԻ ՓՈԽԱԿԵՐՊՈՒՄՆԵՐԻ ՊՐՈԲԼԵՄԻ ԱՌԹԻՎ

*Այս հոդվածում մենք փորձել ենք բացահայտել «տարրական» մասնիկ-
ների՝ միմյանց փոխակերպվելու բնույթը, դրանց դիալեկտիկան։*

*Ժամանակակից գիտությանը հայտնի են մեծ թվով «տարրական» մաս-
նիկներ՝ էլեկտրոն, պրոտոն, նեյտրոն, կա-մեզոններ, հիպերոններ, ռեզոնան-
սային մասնիկներ և դրանց անտիմասնիկները՝ անտիէլեկտրոն, անտիպրո-
տոն, անտինեյտրոն և այլն։*

*«Տարրական» մասնիկների հայտնագործման առաջին շրջանում գիտու-
թյան մեջ իշխում էր այն կարծիքը, թե այդ մասնիկները փոփոխության չեն
ենթարկվում։ Մասնիկների վրա կատարած բազմաթիվ փորձերը և տեսական
ընդհանրացումները հերքեցին այդ կանխակալ տեսակետը և հաստատեցին,
որ հայտնի մասնիկներն ո՛չ միայն փոփոխվում են, այլև ընդունակ են փո-
խակերպվելու մեկը մյուսին։ Մասնիկների և դրանց փոխակերպումների հետ
մեր ծանոթությունն ավելի ամբողջական պատկեր է տալիս աշխարհի միաս-
նության, նրա հավիտենական շարժման մասին։ «Տարրական» մասնիկների
միմյանց փոխակերպվելը բնության պրոցեսի մի մասն է։ Այն իր բնույթով
որակապես տարբերվում է մակրոաշխարհում տեղի ունեցող պրոցեսներից,
փոխակերպումներից։ Միկրոմասնիկների փոխակերպումներն ունեն իրենց
սպեցիֆիկ շարժումներն ու օրինաչափությունները, ներքին դիալեկտիկան։*

*Քվանտային տեսությունը հաստատում է, որ հայտնի «տարրական»
մասնիկների միմյանց փոխակերպումները տեղի են ունենում ինչպես ինք-
նաբուխ (սպոնտան), այնպես էլ մեկը մյուսի վրա ներգործելու ճանապարհով
(մենք քննարկելու ենք միայն մասնիկների ինքնափոխակերպումները)։ Մաս-
նիկների ինքնափոխակերպումը այնպիսի պրոցես է, որ տեղի է ունենում
մասնիկների ներքին պատճառների, ներքին մղման, ինքնաշարժման հետև-
վանքով։ Ինքնափոխակերպման պրոցեսի ժամանակ մասնիկների ներքին կա-
ռուցվածքում տեղի է ունենում արմատական փոփոխություն, քայքայվում են
դրանց ներքին կապերը, կառուցվածքը և այլն, որի հետևանքով նախկին մաս-*



*նիկների փոխարեն ծնվում են նորերը, որոնք իրենց բնույթով տարբերվում
են նախկիններից։ Փոխակերպման այս պրոցեսում նախկին մասնիկի մաս-
սան և դրա հետ անխզելիորեն կապված էներգիան ծնվող մասնիկների
մեջ բաշխվում են այնպես, որ դրանցից յուրաքանչյուրն ստանում է այնքան
մասսա և էներգիա, որն անհրաժեշտ է նրանց այդպիսին դառնալու համար։
Իլյուստրացիայի համար վերցնենք մի քանի օրինակ։ Ատոմի միջուկից դուրս
գտնվող նեյտրոնը ինքնափոխակերպվում է պրոտոնի, էլեկտրոնի և նեյտ-
րինոյի։*

$$n \longrightarrow P + \bar{e} + \bar{\nu},$$

*Դրական կա-մեզոնը՝ դրական բացասական և չեզոք պի-մեզոնների*

$$K^{+} \longrightarrow \pi^{+} + \pi^{-} + \pi^{0},$$

*լամդա հիպերոնը՝ պրոտոնի, նեյտրոնի, բացասական և չեզոք պի-մեզոնների*

$$\Lambda^{0} \longrightarrow \begin{cases} P + \pi^{+} \\ n + \pi^{0} \end{cases} :$$

*Ծնված մասնիկներն իրենց բնույթով նոր մասնիկներ են, նոր որակներ։*

*Ինչպես ասացինք, մասնիկների ինքնափոխակերպումները պայմանա-
վորված են նրանց ներքին ինքնաշարժմամբ։ Իսկ ի՞նչ է մասնիկների այդ ներ-
քին շարժումը, ինչպե՞ս է այն առաջանում։*

*Ժամանակակից պատկերացմամբ մատերիան դրսևորվում է որակապես
իրարից տարբեր՝ դաշտ և նյութ տեսակներով։ Նյութ են համարվում բոլոր
առարկաները, իսկ դաշտ՝ գրավիտացիոն, էլեկտրամագնիսական, միջուկա-
յին և այլ դաշտերը միասին վերցրած։ Դաշտը և նյութը անխզելիորեն կապ-
ված են իրար հետ. որտեղ կա նյութ, այնտեղ էլ կա դաշտ։ Այսպես. մա-
տերիական օբյեկտները կազմված են ատոմներից և մոլեկուլներից։ Առար-
կաների մեջ մոլեկուլների դասավորությունն այնպիսին է, որ դրանց միջև
միշտ էլ մնում է «դատարկ» տարածություն, որը լցված է գրավիտացիոն
դաշտով։ Այդ դաշտը միաժամանակ մոլեկուլներին կապում, «ցեմենտում»
է միմյանց, որի շնորհիվ առարկաներն ունեն կառուցվածք և կայունություն։
Մոլեկուլներն իրենց հերթին կազմված են ատոմներից, որոնք մոլեկուլի մեջ,
նրա չափերին համապատասխան, ավելի մոտ են դասավորված, բայց սրանց
միջև ևս մնում է որոշ տարածություն, որը լցված է գրավիտացիոն և էլեկտրա-
մագնիսական դաշտերով, որոնք նույնպես մոլեկուլներին կապում, ցեմեն-
տում են միմյանց։ Բոլոր դեպքերում նյութի փոքրագույն մասնիկներին դաշ-
տը մեծագույն ծառայություն է մատուցում։ Այն լցնում է նրանց միջև եղած
ազատ տարածությունը, մասնիկներին կապում իրար հետ, հնարավորություն
ընձեռում փոխներգործելու միմյանց* (Д. Данин, Неизбежность странного
мира, М. Молодая гвардия, 1961, *էջ 30)։*

*Ատոմն իր հերթին կազմված է միջուկից և այն շրջապատող էլեկտրո-
նային թաղանթից, որի գումարային մասսան շատ փոքր է։ Ատոմի ամբողջ
մասսան կենտրոնացած է միջուկում։ Էլեկտրոնային թաղանթի և միջուկի
միջև գտնվում են էլեկտրամագնիսական և գրավիտացիոն դաշտեր։*

*Ելնելով այն բանից, որ ատոմի ամբողջ մասսան կենտրոնացած է միջու-*

կի մեջ, արդյոք կարո՞ղ ենք պնդել, թե միջուկը ամբողջովին կազմված է նյութից։ Ատոմի միջուկը կազմված է պրոտոններից ու նեյտրոններից։ Դրանք միջուկի ներսում իրար շատ մոտ են դասավորված և կազմում են մի ամուր սիստեմ։ Չնայած դրան, այստեղ նույնպես գրավիտացիոն, էլեկտրամագնիսական և միջուկային այլ դաշտեր զբաղեցնում են որոշակի տարածություն։ Հասնելով միջուկին, մենք տեսնում ենք, որ այն միայն նյութ չէ, այլ գլխավորապես կազմված է դաշտի մատերիայից (տե՛ս С. Т. Мелюхин, Проблема конечного и бесконечного, М. Госполитиздат 1958, էջ 106)։

Ատոմի միջուկում էլեկտրամագնիսական դաշտի առկայությունը պայմանավորված է պրոտոնների դրական լիցքով և դրանց շարժումով, իսկ գրավիտացիոն դաշտինը՝ մասնիկների մասսայով։ Սակայն, ատոմի միջուկի մասնիկների միջև ամուր կապը պայմանավորված է ո՛չ թե այդ դաշտերով, այլ միջուկային դաշտով։ Ինչպես տեսանք ատոմի միջուկն միայն նյութից չէ, այն կազմված է ինչպես նյութից, այնպես էլ դաշտից։ Այդ դեպքում գուցե միջուկը կազմող մասնիկնե՞րն են «զուտ» նյութից կառուցված։

Ժամանակակից քվանտային տեսությունը «տարրական» մասնիկները դիտում է որպես համապատասխան դաշտերի քվանտներ, պրոտոնները և նեյտրոնները՝ որպես նուկլոնների (պրոտոնն և նեյտրոնը համարվում են նուկլոն) միասին դաշտի քվանտներ, ֆոտոնը՝ էլեկտրամագնիսական դաշտի քվանտ և այլն։ Բացի դրանից, հաստատվել է, որ պրոտոնի և նեյտրոնի միջուկները (կորիզները) շրջապատված են պի-մեզոնային «ամպով» «...ինչպես նեյտրոնի, այնպես էլ պրոտոնի մոտ առկա է մեզոնային ամպը» (Р. Хафштандтер, Физика наших дней. Успехи физических наук, т. 81, вып. 4, 1963, էջ 198)։

Իսկ ի՞նչ են իրենցից ներկայացնում այդ մասնիկների միջուկները, ինչի՞ց են կազմված։ Այդ մասին գիտությունը դեռևս ստույգ փաստեր չունի։ Սակայն, կարելի է ասել, որ դրանք նույնպես ամբողջովին նյութ չեն, այլ պետք է որ կազմված լինեն նյութից և դաշտից։

Այսպիսով, գիտությունը հաստատում է, որ «տարրական» մասնիկները ո՛չ նյութ են, և ոչ էլ դաշտ։ Դրանք կազմում են այդ երկուսի դիալեկտիկական միասնությունը (այս մասին կխոսենք ներքևում)։ Այդ հակադրությունը պայմանավորում է նրանց գոյությունը։ Մասնիկի մեջ նյութի և դաշտի սահման չկա։ Հնարավոր չէ ասել, թե որտեղ է սկսվում նյութը, որտեղ դաշտը և հակառակը։ Դաշտն օրգանապես մտնում է մասնիկների կառուցվածքի մեջ (տե՛ս С. Т. Мелюхин, О диалектике развития неорганической природы, М. Госполитиздат, 1960, էջ 94)։

«Տարրական» մասնիկների աշխարհում վերանում են դաշտի և նյութի միջև որոշակի տարբերությունները, սակայն ոչ մի հիմք չկա նյութը հանգեցնելու դաշտին, եթե ասում ենք մասնիկ, չի նշանակում, որ այս հակադրվում է դաշտին։ Մասնիկներն ունեն ինչպես մասնիկի, այնպես էլ դաշտի հատկություններ։ Դրա անժխտելի ապացույցը ալիքային և կորպուսկուլյար հատկություններն են։ Ալիքային հատկությունը դրսևորում է դրանց դաշտային բնույթը, իսկ կորպուսկուլյարը՝ նյութայինը։

Պատմականորեն մատերիան նյութի և դաշտի բաժանելը ճիշտ է։ Այն չի հակասում գիտության փաստերին և պրակտիկային։ Սակայն այդ բաժանումը մոտավոր է։ Գիտության նորագույն հայտնագործությունների շնորհիվ



ուղղվում է անճշտությունը և հարստացվում մեր պատկերացումը մատերիայի կառուցվածքի մասին։

Ժամանակակից քվանտային տեսության համաձայն բոլոր տեսակի դաշտերն բարդ տատանողական (ալիքային) սիստեմների (օսցիլյատորների) ժողովում են, որոնցից յուրաքանչյուրը տատանվում է տարբեր հաճախականությամբ։ Ամեն մի օսցիլյատորի էներգիան կարող է ընդունել դիսկրետ ձև։ Եթե օսցիլյատորի էներգիան, հետևաբար, և մասսան, մեծանում է, ապա դրան համապատասխան էլ մասնիկ է ծնվում։

Այսպիսով, տեսությունը դաշտերը դիտում է իբրև «տարրական» մասնիկների՝ ֆոտոնների, մեզոնների, էլեկտրոնների և այլ վիրտուալ «ամպեր», վիրտուալ քվանտներ։ Ինչպես տեսնում ենք, դաշտը «զուտ» անընդհատություն չէ, այլ այն միաժամանակ անընդհատություն է և ընդհատություն, դրանց միասնությունը։ Այս միասնության մեջ հանդես է գալիս դաշտի ներքին հակասությունը, որը տեղի է ունենում վիրտուալ քվանտների, բաժինների միջև։ Այդ հակասությունը դաշտի շարժման աղբյուրն է։ Դաշտերը, իրենց ներքին շարժման, ինքնաշարժման շնորհիվ կարող են ծնել իրենց հատուկ դիսկրետ մասնիկներ, նոր որակներ, որոնք արդեն դաշտի և նյութի միասնություն են։ «Մատերիան» այսինքն՝ նյութը և լույսը, միաժամանակ ունի ալիքի և մասնիկի հատկություն, բայց դրանք ամբողջովին վերցրած ո՛չ ալիք են ոչ մասնիկ և ոչ էլ մեկի և մյուսի խառնուրդ» (С. И. Вавилов, Глаз и солнце, М.—Л., изд. АН СССР, 1950, стр. 43—44)։

Դաշտը, մեր կարծիքով, իր մեջ ունի նյութի վերածվելու **պոտենցիալ հնարավորություն**, որը որոշակիորեն դրսևորվում է «տարրական» մասնիկների մոտ։ Այսպիսով, դաշտն իրենից օտարելով մասնիկը, միաժամանակ դրսևորում է իր խորքում թաքնված նյութական հատկություն։ Դաշտը և նյութը միասնության մեջ սահմանափակում են միմյանց, հանդես են գալիս որպես հակադրություններ, հակադիր բևեռներ, որոնց հակասությունն առաջացնում է մասնիկների ներքին շարժում, որը շարժման մի նոր ձև է և այն հատուկ է միատեսակ մասնիկներին։ Մասնիկի շարժումը հենց մասնիկի հետ կապված և նրա հետ մեկտեղ առաջացած շարժումն է։ Եթե չլիներ մասնիկը, չէր լինի նաև շարժման այդ ձևը։ Երբ չքանում է մասնիկը, չքանում է շարժումը։ Դա ցույց է տալիս, որ շարժումը մասնիկներից անկախ չէ. այն դրանց և՛ գոյության ձևն է և՛ կործանման պատճառը. մյուս կողմից՝ շարժումը կործանելով մասնիկները, ինքը նույնպես կործանում է իրեն որպես այդպիսին։ Շարժումը դրանց գոյության ձևն է այն իմաստով, որ մասնիկները, ինչպես տեսանք, առանց շարժման գոյություն ունենալ չեն կարող, ինչպես մատերիան ընդհանրապես գոյություն չունի առանց շարժման։ Շարժման շնորհիվ է, որ մատերիական ձևերը ձևավորվում են, դառնում այն, ինչպես գոյություն ունեն։ Շարժումն իր մեջ ներառում է նաև հանգստի մոմենտներ։ Այդ ժամանակ են մասնիկները դառնում կայուն, որը տարբեր մասնիկների մոտ տարբեր ձևով է դրսևորվում։ Հանգստի մոմենտը յուրաքանչյուր մասնիկի մոտ որոշակի տևողություն ունի, որով բնութագրվում է դրանց գոյության սահմանը։ Բացի այդ, շարժումն իր մյուս կողմով, հասունությամբ, կործանում է մասնիկներին։ Ներքին ինքնաշարժումը դրանց չի թողնում մնալ նույն վիճակում, այլ քակտում է նախկին կապե-

րը, կայուն մոմենտները, անընդհատ փոխում վիճակները և, վերջապես, ստիպում փոխակերպվելու մատերիայի նոր ձևերի։

Այս ամբողջ պրոցեսը մասնիկների ներքին կայունության և փոփոխման դիալեկտիկական միասնությունն է, որի մեջ հիմնականը նրանց հոսուն կողմն է, այն վերջիվերջո, հասցնում է մասնիկների փոխակերպման։

Շարժման էական հատկություններից մեկն էլ այն է, որ սրա մի ձևը սահմանափակում է մյուս իր իսկ ձևերի գործողությունները։ Շարժման մի ձևը սահմանափակելով մյուս շարժումների գործողությունները, ակտիվությունը, դրանով իսկ, մի կողմից՝ հնարավորություն է ընձեռում իր կրողին բարդանալու և նոր ձևեր ստեղծելու, մյուս կողմից՝ ինքն է բարդանում և փոխակերպվում շարժման նոր ձևերի կամ շարժման նոր ձևերի առաջացման պայմաններ ստեղծում։

Մասնիկների մասսայի աստիճանական մեծացումը և խտացումը տանում է դրանց ալիքի երկարության կարճացում, հետևաբար և շարժման արագության սահմանափակում։ Բայց քանի որ տարբեր մասնիկների մասսաների խտությունը տարբեր է, ուստի, մասնիկների շարժումն էլ տարբերվում է մեկը մյուսից։ Շարժման այդ ձևը գոյություն կունենա այնքան ժամանակ, որքան գոյություն կունենա տվյալ մասնիկը։ Դրա ոչնչացման հետ կանհետանա նաև շարժման ձևը կամ ավելի ճիշտ՝ տվյալ շարժումը կրող մասնիկի փոխակերպման ժամանակ այն կփոխանցվի առաջացած մասնիկներին և սրանց մեջ կդրսևորվի որպես նոր հակասության առաջացման պատճառ, իսկ հակասությունը, իր հերթին, կառաջացնի շարժման նոր ձև։

Նախկին շարժումը ասես մտնում է նոր շարժման մեջ, որը նախկինի և նորի դիալեկտիկական միասնությունն է այնպես, ինչպես նախկին մասնիկ մատերիան հիմք է դառնում նոր մասնիկների առաջացման։ Նոր մասնիկները նախկին մասնիկների մատերիայի նոր դրսևորումն են, այսինքն՝ հնի և նորի միասնություն։ Մասնիկների նման փոխակերպումները ծագումնաբանական (գենետիկական) բնույթ են կրում։

Մատերիայի կառուցվածքում ամեն մի ձև, ամեն մի հանգույց գտնվում է մյուս ձևերի, հանգույցների մեջ։ Դրանք իրենց բարդության աստիճաններով գտնվում են մեկը մյուսից «բարձր» կամ «ցածր»։ Մատերիայի ստորին ձևերը ներառվում են մատերիայի կառուցվածքի ավելի բարձր ձևերի մեջ և դառնում դրանց մասերը, որոնք որոշ օրինաչափություններով կապվում են իրար հետ և դառնում նրանց բովանդակությունը։ Այսպես էլ շարժման տարբեր ձևերն իրենց կրողների հետ միասին մտնում են համապատասխան օբյեկտների կառուցվածքի մեջ և դառնում դրանց շարժման առաջացման պատճառը։ Ինչպես մատերիայի ձևերը, այնպես էլ դրանց շարժումներն իրար մեջ մտնում են ոչ թե որպես մեխանիկական միացում, այլ՝ որպես մեկը մյուսի օրգանական մասը և հանդես են գալիս ամբողջի հետ մեկտեղ։ Այսպիսի միասնության մեջ ստորին ձևերը բազմաթիվ կապերով կապված են բարձր ձևի հետ և ենթարկվում դրա ներքին օրինաչափություններին (օրինաչափություններն իրենք օբյեկտների և սրանց մասերի միասնության արդյունք են) և միաժամանակ պահպանում են իրենց ինքնուրույնությունը։ Նրանք ամբողջի հետ միասնություն կազմելով, միաժամանակ հակադիր են ամբողջին և ձգտում են անջատվել նրանից (այս ավելի շատ բնորոշ է անօրգանական աշխարհին)։ Սակայն, նրանք իրենց շարժման մեծությամբ ու վիճակով չեն կարողանում



հաղթահարել այն արգելքները, որոնք ստեղծվում են ամբողջի կողմից։ Այսպիսով, դաշտերը, իրենց բաժինների, քվանտների հակասությունների շնորհիվ առաջացնում են դաշտի շարժումը։ Մասնիկի և դրա հետ կապված դաշտի հակասությունից ծնվում է մասնիկի շարժումը։ Պրոտոնների և նեյտրոնների (միջուկի մասնիկների) փոխազդեցությունից, որի շնորհիվ ստեղծվում են ատոմի միջուկը, առաջանում է միջուկի սպեցիֆիկ շարժումը։ Պրոտոններն ու նեյտրոնները միջուկում դառնում են միջուկի մասնիկներ կամ սրա կառուցվածքի մասեր, միաժամանակ պահպանելով իրենց որոշակիությունը։ Դրանց շարժումներն ենթարկվում են միջուկի սպեցիֆիկ շարժմանը, օրինաչափություններին։ Մասնիկների շարժումները սահմանափակվում են միջուկի շարժումով։ Լինելով մասնիկների շարժումների գործողությունների հետևանք, այն մի նոր շարժում է, որը համապատասխանում է միջուկի բնույթին։ Միջուկի շարժումն իր մեջ առնելով մասերի շարժումները, այն դրսևորում է յուրովի։ Միջուկի շարժումն իր շարժման և նեյտրոնների ու պրոտոնների շարժման, մասնիկների և բոլոր շարժումների միասնություն է։ Միջուկը ատոմի սիստեմում կորցնում է իր ինքնուրույնությունը և դառնում նրա մասը։ Ատոմի շարժումը սահմանափակում է միջուկի և իր թաղանթի էլեկտրոնների շարժումների կոնկրետ դրսևորումները։ Սակայն ինչպես միջուկի, այնպես էլ այս դեպքում, ատոմի շարժումն արդյունք է միջուկի և թաղանթի էլեկտրոնների շարժումների գործողությունների։ Ատոմի շարժման մեջ միջուկի և էլեկտրոնների շարժումները դրսևորվում են ատոմի շարժման միջոցով։ Իսկ միջուկի մասնիկների շարժումը՝ ավելի բարդ շարժման՝ քիմիական շարժման ձևի մեջ։

Ատոմները մոլեկուլների սիստեմում նույնպես կորցնում են իրենց ինքնուրույնությունը և դառնում ամբողջի մասերը, բովանդակությունը, կորցնում իրենց շարժումների ինքնուրույն դրսևորումները։ Մոլեկուլի շարժումը շարժման նոր ձև է՝ ֆիզիկական շարժման ձև։ Մոլեկուլները կապվելով միմյանց, ստեղծում են անթիվ մարմիններ, որոնք ունեն իրենց սպեցիֆիկ շարժումները։ Այս սխեմատիկ նկարագրությունը, իհարկե, չի կարող ամբողջական պատկեր տալ այդ բարդ սիստեմների կառուցվածքի և շարժումների մասին։ Սրանով մենք միայն ցույց ենք տալիս մատերիայի ձևերի հետ անխզելիորեն կապված շարժման ձևերն ու դրանց առաջացումը, առանց խորանալու շարժման ձևերի խոր բացատրման մեջ։ Դա առանձին հարց է և պահանջում է առանձին քննարկում։

«Տարրական» մասնիկների փոխակերպումների ժամանակ ծնված մասնիկները մատերիայի նոր ձևեր են, որոնք, իրենց հերթին, ունեն նոր ձևեր առաջացնելու անսահման պոտենցիալ հնարավորություններ, քանի որ դրանք անսահման խոր են և անսպառ։ Այդ մասնիկներից յուրաքանչյուրն ունի որոշակի որակ։ Որպես մատերիայի ձև, դրա չքանալուց մատերիան անհետ չի կորչում, այլ մեկ ուրիշ տեղ, մեկ ուրիշ պայմաններում ծնվում է որպես մատերիայի մի նոր ձև, որին էլ համապատասխանում է նոր որակ։ Այդ որակը պոտենցիալ հնարավոր բազմաթիվ որակներից մեկն է միայն։ Դա նշանակում է, որ եթե ստեղծվեն այլ պայմաններ, ապա կառաջանա ո՛չ թե մատերիայի այդ, այլ մեկ ուրիշ ձև, և կունենա այլ որակ։ Հայտնի է, որ ամեն որակի հետ կապված են նրան հատուկ բազմաթիվ հատկություններ, որոնք որա-

կը դրսևորում են արտաքնապես։ Հետևապես ամեն որակ իր հետ միասին երևան է բերում իրեն հատուկ հատկություններ։ Ուստի, ամեն մի որակ կունենա ինչպես որոշակիորեն դրսևորված, այնպես էլ բազմաթիվ չդրսևորված պոտենցիալ հատկություններ, որոնք կդրսևորվեն այն դեպքում, երբ կառաջանան նոր օբյեկտներ, որոնց հատկությունների գոյությունը պայմանավորված կլինի տվյալ որակի գոյությամբ, վերջինիս անհետացմամբ կանհետանան այդ հատկությունները։ Նույնանման հատկություններ կարող են առաջանալ, եթե հանդես գա դրանց համապատասխան որակ, որը կլինի նույնանման օբյեկտների որակը։ Ուրեմն, մատերիայի յուրաքանչյուր ձևի որակն ու հատկությունները միշտ դառնում են պոտենցիալ որակ և պոտենցիալ հատկություններ կամ պոտենցիալ հնարավորություններ։

Պոտենցիալ հնարավորություններ ասելով հասկանում ենք մատերիայի անսահման հնարավորությունները, որոնք կարող են հետագայում էլ նույնանման ձևեր, որակներ և հատկություններ ստեղծել։

Իսկապես, անօրգանական և օրգանական աշխարհում ամենուրեք հանդիպում ենք նույնանման օբյեկտների։ Բնությունը յուրատեսակ կրկնություն է և կրկնություն չէ։ Այն կրկնվողի և չկրկնվողի միասնություն է։ Եթե այդպես չլիներ, ապա բնության մեջ գենետիկական կապ չէր լինի, օրինաչափություններ և օրենքներ չէին լինի։ Նույնանման օբյեկտներ երևան են գալիս այն ժամանակ, երբ ստեղծվում են նույնանման պայմաններ (բացարձակ նույնական պայմաններ չեն լինում, դրանք համընկնում են հիմնականում, էականում)։ Այսինքն, եթե պրոցեսներն ունեն նույն հաջորդականությունը, մասսան ու էներգիան՝ նույն չափը և այլն, ապա միայն կարող են առաջանալ նույնանման օբյեկտներ, որոնք բացարձակ նույնական չեն լինի։ Հետևաբար, բացարձակ նույնական որակներ ու հատկություններ էլ չեն կարող լինել։ (Այդ լավ երևում է օրգանական աշխարհում)։ Մեզ կարող են առարկել, ասելով, որ նույնանման «տարրական» մասնիկները բացարձակ նույնական են, քանի որ դրանց լիցքը, սպին և այլն նույնն են։ Դրանք նույնական են այն դեպքում միայն, երբ գտնվում են միևնույն տեղում և նույն վիճակում, դրանից դուրս նրանք իրարից տարբերվում են. «Երկու էլեկտրոնը տարածության տարբեր տեղերում երկու տարբեր առարկաներ են, հետևաբար պետք է ընդունենք, որ դրանց որակն էլ տարբեր է» (А. И. Уемов, Вещ, свойства и отношения, изд. АН СССР, 1963, էջ 36)։

Օբյեկտների նույնական որակն և հատկությունները նրանք են, որոնք համընկնում են ընդհանուրով, էականով, հիմնականով։ Բայց դրանց կողքին կան այնպիսի հատկություններ, որոնք հատուկ են միայն տվյալ տեսակին պատկանող կոնկրետ օբյեկտներին, որոնցով տարբերվում են մյուսներից։ Յուրաքանչյուր օբյեկտ նույնականի և առանձնահատուկի միասնություն է։ Այս իմաստով նույն տեսակին պատկանող օբյեկտներն իրար և՛ նման են, և՛ միաժամանակ նման չեն։ Այն, ինչ տարածության մի տեղում ոչնչանում է և հանդես է գալիս մեկ ուրիշ տեղում, նույն առարկան չենք համարում, չնայած կարող է իրար շատ նման լինեն (նույն տեղը, էջ 10)։

Վերևում բերված դատողությունները պարզաբանենք օրինակներով։ Այսպես, պի-մեզոնը փոխակերպվում է դրական մյու-մեզոնի և նեյտրինոյի $\pi^+ \longrightarrow \mu^+ + \nu$ Պի-մեզոնը որպես մատերիայի կոնկրետ ձև, դադարում է գոյություն ունենալուց, բայց որպես մատերիայի բաժին, քվանտ, չի կորչում։



Ծնված մասնիկներն որակապես տարբերվում են նախկին մասնիկից իրենց մասսայով, սպինով, երկարակեցությամբ և այլն։ Օրինակ՝ պի-մեզոնը ունի 273 միավոր մասսա, սպին հավասար է զրոյի, կյանքի տևողականությունը $10^{-8}$ վրկ. է, այնինչ մյու-մեզոնն ունի 200 միավոր մասսա, 1/2 սպին, $10^{-6}$ վրկ. կյանքի տևողություն։ Իսկ նեյտրինոն՝ զրո միավոր մասսա, չունի լիցք, կայուն մասնիկ է և այլն։ Սակայն չպետք է այնպես պատկերացնել, որ պի-մեզոնի հատկություններն այդ մասնիկների մոտ անհետ կորել են։ Պի-մեզոնի այն հատկությունները, որոնք հատուկ են միայն այդ մասնիկին, դրանից առաջացած մասնիկների մոտ պահպանվում են որպես պոտենցիալ հնարավոր հատկություններ։ Այդ մասնիկներն, իրենց հերթին, փոխակերպվում են այլ մասնիկների։ Սրանցից առաջացած մասնիկները կարող են դրսևորել ո՛չ միայն փոխակերպվող մասնիկի, այլև պի-մեզոնի հատկությունները, որոնք մյու-մեզոնի և նեյտրինոյի մոտ որոշակիորեն դրսևորված չէին։ Մեկ ուրիշ օրինակ. նեյտրոնը չունի լիցքային հատկություն, սակայն պրոտոնի, էլեկտրոնի, նեյտրինոյի փոխակերպվելիս դրսևորում են լիցքային հատկություններ։

Մատերիան որքան էլ շատ դրսևորված ձևեր և հատկություններ ունի, դրանով իրեն չի սպառում, այլ ունի անսահման պոտենցիալ հնարավորություն՝ նոր ձևեր և հատկություններ ստեղծելու համար։ Մատերիայի ձևերը քանակապես և որակապես փոխվում են, բայց այդ հավիտենապես անկործանելի է, որովհետև հավիտենական պրոցես է, հավիտենական շարժվում և զարգանում է։ Հույն մտածող Հերակլիտի խոսքերով՝ «Այդ տիեզերքը, որ նույնն է գոյություն ունեցող ամեն ինչի համար, չի ստեղծված որևէ աստծու և ոչ էլ որևէ մարդու կողմից, բայց միշտ եղել է, կա և հավիտյան կմնա որպես կենդանի հուր՝ որոշ չափով վառվող և որոշ չափով հանգչող»։

Բազմաթիվ ձևեր և հատկություններ դրսևորելու հետ միասին մատերիան ունի մի կարևոր կողմ ևս։ Այն սահմանափակում է իր բազմացումը, որակների առաջացումը։ Այս երկու կողմերը մատերիայի մեջ հակադիր և բևեռային կողմեր են, որոնք դիալեկտիկական միասնության մեջ են։ Քվանտային տեսությունը կանխատեսել է «տարրական» մասնիկների բազմաթիվ փոխակերպումներ, սակայն այդպիսի փոխակերպումները փորձերում չեն դիտվում։ Հավանական է, որ բնությունն այստեղ ևս գործում է իր սահմանափակման օրենքներով։

Միկրոմասնիկների ինքնափոխակերպումները չպետք է դիտել միայն իբրև մասնիկների «զուտ» ներքին պրոցեսների արդյունք։ Մասնիկների ինքնափոխակերպումներն արդյունք են ինչպես ներքին պրոցեսների, այնպես էլ արտաքին միջավայրի։ Մասնիկների փոխակերպումներն ընթանում են ներքին և արտաքին միջավայրում։ Ներքին միջավայր ասելով հասկանում ենք դրանց հետ անխզելիորեն կապված դաշտերը, որոնց հետ ինտենսիվ փոխազդեցության մեջ են։ Արտաքին միջավայր համարում ենք այն դաշտերը, որոնք մասնիկների սեփական դաշտերի և մասնիկների հետ մշտական փոխազդեցության մեջ են և դրանց են փոխանցում արտաքին օբյեկտների ներգործությունները։ Բնության բոլոր մեծ թե փոքր օբյեկտները փոխադարձ կապակցության, փոխադարձ պայմանավորվածության և փոխադարձ ներգործության մեջ են։ «Մեզ մատչելի ամբողջ բնությունը կազմում է մի սիստեմ, մարմին-

ների մի ամբողջական կապակցություն» (Ֆ. Էնգելս, Բնության դիալեկտիկա, 1957, էջ 59)։

Հետևաբար մասնիկների ինքնափոխակերպումներն արդյունք են դրանց ներքին պրոցեսների և սեփական ու արտաքին դաշտերի փոխադարձ ներգործության, որը ոչ մի դեպքում վերացնել հնարավոր չէ։ Բացի դրանից, որոշ մասնիկների փոխակերպումների համար անհրաժեշտ են որոշակի պայմաններ, դրանք ոչ բոլոր միջավայրում և պայմաններում կարող են փոխակերպվել այլ մասնիկների։ Օրինակ՝ նեյտրոնը ատոմի միջուկի պայմաններում փոխակերպվում է միայն պրոտոնի, իսկ նրանից դուրս, ազատ վիճակում՝ պրոտոնի, էլեկտրոնի և նեյտրինոյի։ Ֆոտոնը միջուկային դաշտի և միջուկի հետ փոխազդեցության մեջ գտնվելով, փոխակերպվում է էլեկտրոն-պոզիտրոն զույգի։ Բայց մի ֆոտոնը, ինչպիսի մեծ էներգիա էլ որ ունենա, առանց նյութի հետ փոխազդելու, զույգ մասնիկներ չի առաջացնում։ Հավանական է, որ արտաքին դաշտերի առկայությունը միայն, որպես միջավայր, բավական չէ ֆոտոնի և ուրիշ մասնիկների փոխակերպման համար, անհրաժեշտ է նաև նյութի առկայություն, ուստի, դաշտի և նյութի որոշակի խտությունն է նպաստում որոշ «տարրական» մասնիկների փոխակերպումներին։

Դիալեկտիկական մատերիալիզմն ուսուցանում է, որ մատերիան, որպես օբյեկտիվ ռեալություն, անստեղծելի և անկործանելի է։ Դրա ամենափոքր հատիկն անգամ անհետ չի կորչում և ոչնչից չի ստեղծվում, այլ մատերիայի հավիտենական շարժման, ծավալման ու զարգացման շնորհիվ կործանվում են հին ձևերը և առաջանում նորերը։ Որտեղ չքանում է որևէ մատերիական օբյեկտ, դրան փոխարինում են ուրիշները, որոնք մյուսների առաջացման համար մատերիական հիմք են ծառայում։ Այնտեղ, որտեղ վերջանում է օբյեկտի սահմանը, այնտեղից սկսվում են մյուսի սահմանները, վերջ չկա մատերիական օբյեկտների անսահման հերթափոխություններին։ Այդ ընդհանուր հավիտենական պրոցեսի հիանալի իլյուստրացիան են միկրոմասնիկների ինքնափոխակերպումները։ Մի մասնիկի չքացումը միաժամանակ ուրիշների ծնունդ է նշանակում, մի մասնիկի սահմանի վերացումը, ուրիշների սահմանների սկիզբն է։ Այդ բնության հավիտենական պրոցես է, մասնիկներից յուրաքանչյուրը հավիտենական պրոցեսի միայն մի մոմենտ է, մասնիկները տվյալ ամեն մի մոմենտում այն են և միաժամանակ այն չեն, գոյություն ունեն որպես այդպիսին և գոյություն չունեն որպես այդպիսին։ Դրանք նույնի և ուրիշի միասնություն են։ Ուրիշը գտնվում է նույնի մեջ, ո՛չ թե արդեն պատրաստի, ձևավորված վիճակում, այլ ուրիշի մեջ պրոցեսի ձևով, այդպիսին դառնալու հնարավորության ձևով։

Տիեզերական պրոցեսի հենց այդ մոմենտներն իրենցից ներկայացնում են մատերիայի միկրոաշխարհի ընդհանրություններ, և այդ պրոցեսի մեջ որպես մեկը մյուսի հետ կապված օղակներ կազմում են անընդհատություն։ Մասնիկների ընդհատություններն ու անընդհատությունները միասնություն են և մի ամբողջական օրգանիզմ։ Այդ կենդանի, հավիտյան փոփոխվող օրգանիզմը մատերիայի կառուցվածքում մի աստիճան է, մի վիճակ, որի վրա բարձրանում է մակրոաշխարհը և այդ երկու աշխարհները միասին կազմում են միասնական բովանդակ բնությունը, մատերիան։

Կ· ՄԱՄԻԿՈՆՅԱՆ

# ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐԻ ԱՐԾԱՐԾՈՒՄԸ ՆԱԽԱՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅ ՄԱՄՈՒԼՈՒՄ

Առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմը լայն արձագանք գտավ հայկական միջավայրում։

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները ղեկավարվելով տեսական և տակտիկական լենինյան սկզբունքներով, բացահայտում էին այդ ավերիչ պատերազմի ծագման պատճառները, նրա բնույթը, պատերազմող կողմերի զավթողական նպատակները, աշխատավորությանը ոտքի էին հանում ընդդեմ պատերազմի, հանուն դեմոկրատական խաղաղության ու հեղափոխության։ Բաքվի, Թիֆլիսի, Ալեքսանդրապոլի, Բաթումի, Երևանի կուսակցական կոմիտեները, Ղարսի և Սարիղամիշի կայազորների բոլշևիկները հակապատերազմական թռուցիկներ ու պրոկլամացիաներ էին տպագրում և տարածում։ Բոլշևիկյան կոչերն ու թռուցիկները թափանցում էին գործարանները, նավահանգիստները, հանքերը, ծայրամասային գյուղերը։ Վ. Ի. Լենինին տեղեկացնելով երկրամասի բոլշևիկների գործունեության մասին, Ստ. Շահումյանը գրել է, որ նրանք այնպիսի լայն համբավ ունեն, որի համար Լենինը հանգիստ կարող է լինել (տե՛ս Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, էջ 421—422)։

Նրանք, ամենից առաջ, ցարիզմի գործակալների ու իմպերիալիզմի գաղափարախոսների, բուրժուա-ազգային կուսակցությունների դեմ անհաշտ պայքար էին մղում։ Մասնավորապես հայ բոլշևիկները, քաջ գիտակցելով կամավորական գնդերի զինվորների ազնիվ զգացումները, նրանց նախազգուշացնում էին, որ կամավորական շարժումը կօգտագործվի արևմտահայության գլխովին բնաջնջման քաղաքականությունը իրագործելու համար, մերկացնում էին այդ շարժման նախաձեռնողներին ու ղեկավարներին։ «Պայքար» թերթը, հաղթահարելով ռազմական գրաքննության կապանքները, սիստեմատիկաբար քննադատում էր ցարական իշխանության յուրօրինակ կցորդ ու կամակատար դարձած դաշնակցականների ազգակործան քաղաքականությունը, նրանց մեքենայությունները, աշխատավորության լայն զանգվածներին բացատրում էր ճշմարտությունը պատերազմի, խաղաղության և հեղափոխության մասին, մեծապես նպաստում մասսաների ինտերնացիոնալ համախմբ-

վածության: «Պայքարի» 1916 թվականի համարներում տպագրված Ստ. Շահումյանի, Ա. Միկոյանի, Ա. Ամիրյանի հոդվածներում անխնա մերկացվում էր ռազմատենչ բուրժուական նացիոնալիզմը, բանվորներին և դեմոկրատական տարրերին պարզաբանվում էր ժողովուրդների բարեկամության և նրանց համատեղ պայքարի հրատապ նշանակությունը: Պատահական չէր, որ բանվորներն իրենց նամակներում այս թերթը համարում էին «լուսատու աստղ հայկական մթին իրականության մեջ», մի օղակ, որի միջոցով նրանք «միանում են միջազգային պրոլետարիատի հետ» («Պայքար», 1917, № 3):

Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները պատերազմի տարիներին տարածում էին «Правда», «Социал-демократ», «Кавказский рабочий», «Бакинский рабочий», «Սոցիալ-դեմոկրատ», «Պայքար» և «Բանվորի կռիվը» թերթերը: Ալեքսանդրապոլում, Ղարսում, Սարիղամիշում, Հաղպատում, Երևանում, Նոր Բայազետում, Ղափանում, Աշտարակում, Շամշադինում, Դիլիջանում «Բոլշևիկյան օր» էր անցկացվում, ուր թերթեր և հեղափոխական գրականություն էր վաճառվում (Խ. Հ. Բարսեղյան, Բոլշևիկյան հայ պարբերական մամուլի պատմություն (1900—1920), Ե. 1956, էջ 333—334): 1917 թվականի ամռանը Ալեքսանդրապոլում լույս է տեսնում առաջին հայերեն «Նոր կյանք» թերթը, որը լայն տարածում է գտնում Հայաստանում: Թերթը լենինյան դիրքերից ցույց էր տալիս իմպերիալիստական պատերազմին վերջ տալու և սոցիալիզմին անցնելու ուղին: «Ծագող արշալույսի շողերն արդեն լուսավորում են ոսկեզօծ լեռների կատարները: Արշալույսի ծագման հետ պիտի բարձրանա կատաղի քամի՝ արդար բողոքը տանջված մարդկության:

Փոթորկից հետո պիտի նայի արշալույս ժպտադեմ.
Դիմենք դեպի նա հզոր շարքերով:
Կորչի պատերազմը:
Կեցցե՜ համաշխարհային հեղափոխությունը բանվոր դասակարգի»
(«Նոր կյանք», 1917, № 4):

Բոլշևիկյան բոլոր հրատարակությունների էջերից միշտ հնչել է պրոլետարական միաբանության մարտակոչը՝ ընդդեմ պատերազմի, աշխատավորության արյունով սնվող իմպերիալիզմի, հանուն խաղաղության և ազատ կյանքի:

Հեղափոխական փոթորիկների այդ շրջադարձային ժամանակաշրջանում մեծ դեր խաղաց հայ ականավոր բոլշևիկ, մարքսիզմի տեսաբան Արշավիր Մելիքյանը (1879—1937):

Նա, ինչպես ասում է ակադեմիկոս Աշոտ Հովհաննիսյանը, ինքնատիպ ու անկախ մտածող էր՝ օժտված տրամաբանելու ուժեղ կարողությամբ և հռետորական փայլուն ձիրքով: Լինելով վտարանդի, նա Շվեյցարիայում ծանոթանում և մտերմանում է Վ. Ի. Լենինի հետ, իր բնորոշմամբ «պայքարող ոգու այդ հսկա ու վեհապանծ էվերեստի հետ»: Մտերմանում է նաև Պլեխանովի, Ռ. Լյուքսենբուրգի, Լունաչարսկու, Ժան Ժորեսի, Կ. Լիբկնեխտի և Ա. Բեբելի հետ: Նրան ճանաչում ու հարգում էին էմիգրանտ բոլշևիկները, որոնց շարքերում էր ինքը 1906 թվականից: Նա օժտված էր արտակարգ ունակություններով, տիրապետում էր բազմաթիվ լեզուների, խորապես ուսումնասիրել էր



մարքսիզմը: Ա. Մելիքյանը առանձնապես բեղմնավոր գործունեություն ծավալեց պատերազմի տարիներին, որի նախօրյակին վերադարձել էր Հայաստան: Հետագայում, 1919 թվականին, Ռ. Լյուքսենբուրգը Կ. Մելիք-Օհանջանյանից տեղեկանալով, որ Ա. Մելիքյանը հայրենիքում է, բացականչել է. «Մեր գործը Հայաստանում շատ կշահի նրա ներկայությունից»: Իրոք, 1911 թվականից սկսած նա մարքս-լենինյան գաղափարների առաջին տարածողներից մեկն էր Անդրկովկասում և Հայաստանում, Երևանի կուսակցական կազմակերպության ղեկավարներից էր, «Խոսք» թերթի հիմնադիրն ու խմբագիրը: Ժամանակակիցները պատմում են, որ նա «գեղեցիկ, պարզ, ոգեշնչված խոսելու մեծ շնորհք ուներ, նրան լսում էին կլանված հափշտակությամբ: Մելիքյանը Լենինի Ապրիլյան թեզիսների առաջին պրոպագանդիստն էր մեզ մոտ»: Նա հաճախ էր բանավեճի մեջ մտնում մենշևիկների, էսեռների և դաշնակցականների հետ, պաշտպանում ու մասսաներին խորապես լուսաբանում լենինյան տակտիկան ու ստրատեգիան պատերազմի, խաղաղության և հեղափոխության հարցերում:

Ա. Մելիքյանի դասախոսությունները մեծ մասամբ նվիրված էին պատերազմական թեմային: Ի ուրախություն մեզ, պահպանվել են պաշտոնական շատ ռեկլամ-հայտարարություններ այդ մասին, դասախոսությունների որոշ կոնսպեկտներ, որոնք առատ լույս են սփռում մի շարք հույժ կարևոր հարցերի վրա (տե՛ս ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4056):

Նրա գրավոր ու բանավոր ելույթները, ամենից առաջ, ուղղված են կուսակցության տեսական և տակտիկական լենինյան դրույթների պրոպագանդմանը, պատերազմի, ազգային-ազատագրական շարժումների և խաղաղության վերաբերյալ հարցերում դաշնակցություն կուսակցության գաղափարախոսության ու գործելակերպի դեմ: Չնայած նրան, որ Ա. Մելիքյանի դասախոսությունները տեղի էին ունենում դաշնակցական օրգանների խիստ հսկողության տակ, այնուամենայնիվ, նա միշտ իր տարերքի մեջ էր, զինված անհերքելի փաստերով ու օժտված բանավեճ մղելու հմուտ կարողությամբ:

Ա. Մելիքյանը հիմնավորապես քննադատում է կամավորական շարժման կազմակերպիչներին: Հայ աշխատավորները պատրաստ էին արյան գնով օգնելու արևմտահայության ազատագրմանը: Այս ազնիվ, ոգևորիչ հայրենասիրական զգացմունքների մղումով էլ նրանք մտան կամավորական գնդերը, ասում էր նա լեփ-լեցուն դահլիճի ամբիոնից: Սակայն նրանք չեն գիտակցում այդ շարժման ստվերոտ կողմը՝ նրա ահավոր, ողբերգական հետևանքը. վերջապես, նրանք գլուխ չեն հանում պատերազմող տերությունների արտաքին քաղաքականության խճճված հարցերից, այդ տերությունների միջև գոյություն ունեցող անլուծելի հակասություններից, որոնց ծնունդն է պատերազմը: Բայց պատերազմն իր հակամարդկային բնույթով հանդերձ քիչ բան չի սովորեցնում հասարակ մարդկանց՝ կամավորական շարժման մասնակիցներին, այնպես որ դաշնակցականներին և նրանց գործելակերպն ընդօրինակող ավանտյուրիստներին միշտ չէ, որ կհաջողվի մոլորեցնել այդ հասարակ մարդկանց և նրանց ծառայեցնել իմպերիալիստական նպատակներին: Մելիքյանը դաշնակցական պարագլուխներին անողոք մեղադրում էր այն հարցում, որ նրանք տմարդի կերպով համագործակցում են Կովկասի փոխարքայի և ցարական այլ իշխանությունների հետ:

Ա. Մելիքյանը ցույց էր տալիս հայ բուրժուա-ազգայնական կուսակցու-

թյունների կատարյալ սնանկությունը պատերազմի ծագման պատճառների և
նրա բնույթի մեկնաբանման հարցերում։ Իր դասախոսություններից մեկում
նա ծանր կացության մեջ դրեց իր դավանանքի ոխերիմ թշնամիներին այն
բանի համար, որ նրանք այդ ավերիչ պատերազմի պատճառը համարում
էին միայն Գերմանիայի ագրեսիվ դիրքը, իսկ Անտանտի պատերազմի մեջ
մտնելը բացատրում էին պարզապես «մարդասիրական զգացմունքներով և
կարեկցանքի դրսևորումով Սերբիայի նկատմամբ»։

Այս կապակցությամբ Ա. Մելիքյանը հանգամանորեն կանգ է առնում
Անտանտի տերությունների քաղաքականության վրա, ցույց տալիս նրանց
անսքող ագրեսիվ նպատակը, մատնացույց անում, որ դաշնակցականների
համակրանքը դեպի Անտանտը համազոր է դավաճանության հայ աշխատա-
վորության և, ընդհանրապես, բոլոր փոքր ժողովուրդների նկատմամբ։ Հեգ-
նելով իր ընդդիմախոսներին, նա ասում էր, որ հայ ժողովրդի դժբախտու-
թյան՝ մասսայական կոտորածների ու ավերումների մեջ նույնչափ հանցա-
գործներ են Գերմանիան և Անգլիան, որչափ և առաջինի դատապարտողներն
ու երկրորդի երկրպագուները։ Հիրավի, մեղադրելով վերջիններիս կարճատե-
սության կամ, ավելի շուտ, բացահայտ դավաճանության մեջ, նա հարցնում
էր. ինչպե՞ս գնահատել ցարական զորքերի հարձակումները Թուրքահայ շրջան-
ների վրա և նահանջը դեպի Անդրկովկաս։ Սա քաղաքական բնույթի գործո-
ղություն է, քանի որ ցարական իշխանությունը դրանով իսկ ուզում է կանխել
ազգային-ազատագրական շարժումները երկրամասում և կենսագործել «Հա-
յաստանը առանց հայերի» կամ «Հայաստանը կազակներին» իր քաղաքակա-
նությունը։

1918 թվականի մարտի 19-ին Երևանի աշակերտական մարքսիստական
խմբակը կազմակերպել էր «Պատերազմը և խաղաղությունը» թեմայով դասա-
խոսություն։ Չորս օր անց զինվորական «Զանգ» թերթը դասախոսությունից
քաղվածքներ է տպում, իր գնահատականը տալիս Ա. Մելիքյանին և նրա դա-
սախոսության հասարակական հետևանքներին, որոնց կանխումը անհնարին
էր (տե՛ս ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4056, ց. 1, գ. 77ա)։ «Զանգի»
քաղվածքներից երևում է, որ աշակերտական մարքսիստական խմբակի սիրե-
լի ղեկավարը կանգ է առել հետևյալ հիմնական հարցերի վրա. ա) առաջին
համաշխարհային պատերազմի պատճառները, բ) պատերազմի իմպերիա-
լիստական բնույթը, գ) Ռուսաստանի մասնակցությունը այդ պատերազմին,
դ) երկրորդ հեղափոխությունը Ռուսաստանում, ե) մեծամասնականների հա-
յացքները պատերազմի, խաղաղության և հեղափոխության հարցերի վերա-
բերյալ։ «Զանգը» տալիս է դասախոսության հիմնական բովանդակությունը և
իր վերաբերմունքը։ Թերթը ցավով է հայտնում, որ երեք ժամ տևող դասա-
խոսության ընթացքում Արշավիր Մելիքյանը «ագիտացիոն ճառ էր ասում»,
«նրա պատասխանները ընդդիմախոսներին վերածվեցին մի այնպիսի մի-
տինգի, ուր բոլշևիկներին էլ հնարավորություն տրվեց արտահայտվելու»։
Թերթը գոհունակություն է հայտնում, որ ընդդիմախոսները (դաշնակցա-
կանները) քննադատեցին «դասախոսի բոլշևիկյան միակողմանիությունն առ-
հասարակ հասարակական ներկա խնդիրներու շուրջ»։ Ի վերջո, «Զանգը» պա-
հանջում է «չթույլատրել նման դասախոսությունները», «առանց այն էլ մեր
պղտորած մթնոլորտը խառնել նման հավաքույթներու մեջ» (նույն տեղը)։
Թերթը խորապես վշտացած է, որ Ա. Մելիքյանը հարգանք չի տածում դեպի



իր քաղաքական հակառակորդները։ «Նա սիրում է իր բոլոր հակառակորդնե-
րին հիմարության աստիճան տգետ դուրս բերել»—մի բան, որ «ներելի չէ»։
Միաժամանակ թերթը Ա. Մելիքյանին համարում է «լուրջ ընդունակություն-
ների և մտապաշարի տեր» մարդ, ինչպիսին չեն հանդիսանում նրա հակա-
ռակորդները։ Սակայն, որպեսզի մի կերպ նսեմացնի «մեծ մտապաշարի տեր
բոլշևիկին», թերթը նրան «մեծամիտ» և «անհամեստ» է անվանում։ Կասկա-
ծից վեր է, որ «Զանգը» բաժանում է իր ջատագովների դժբախտությունը։

Մյուս դասախոսություններից նշենք «Կապիտալի ու աշխատանքի համաշ-
խարհային պայքարը և Հայաստանի անկախությունը» (նույն տեղը, գ. 14) և
«Մանր ազգերի անկախությունը և կոմունիստները» (նույն տեղը)։

Արշավիր Մելիքյանը իր ելույթները սեղմ տպագրել է «Խոսք» թերթի
էջերում (ընդամենը 12 դասախոսություն-հոդված) «Ներկա պատերազմը»
խորագրի տակ (տե՛ս «Խոսք» 1918, № 2, 3, 4, 5, 6, 7, 9, 10, 1919 թ. № 1)։

Առաջին հոդվածում ցույց է տրված իմպերիալիզմի դեմքը։ Իմպերիալիս-
տական պետությունները վարում են ներքին հակաժողովրդական և արտաքին
զավթողական քաղաքականություն, տեղիք տալով պատերազմներին։ Նրանք
ազմկալից դիվանագիտությամբ, զենքի շառաչյունով և ուրիշի հողերի յուրա-
ցումով նպատակ էին դնում «խլացնել և ճնշել այն հսկայական դժգոհու-
թյունը, որ կուտակվել էր նույն պետությունների բանվորական և առհասարակ
ռամկավար շրջաններում» («Խոսք», 1918, № 2)։ Պատերազմը իմպերիալիզմի
ծնունդ է։ «Պատերազմի ծագման մեջ ոչ մի պատասխանատու դեր չեն խա-
ղացել ոչ պրոլետարիատը, ոչ գյուղացիությունը, ոչ նույնիսկ մանր բուրժուա-
զիան։ Նա ուրիշների հանցավոր ձեռքերի գործ է. նրա համար միակ պա-
տասխանատուներն են բուրժուազիան, կալվածատիրությունը և նրանց կամքը
կատարող դիպլոմատները և քաղաքական գործիչները» (նույն տեղը)։ Մի ու-
րիշ հոդվածում (նույն տեղը, № 10), հարց է տալիս, թե ո՞վ սկսեց առաջին
համաշխարհային պատերազմը, ո՞ւմ վրա է ընկնում պատասխանատվությունը
ամբողջ մարդկության առաջ։ Եվ պատասխանում է, որ բանվորն ու գյուղա-
ցին ոչ մի մեղք, ոչ մի հանցանք չունեն, որ այն սկսել են կապիտալի մագ-
նատները և նրանց իմպերիալիստական կառավարությունները։ Անօգուտ և
ապարդյուն գործ է համարում զբաղվել այն հարցով, թե ով առաջինը սկսեց
կամ ով ավելի ագրեսիվ է կռվում։ Մեղավոր ու հանցավոր է իմպերիալիզմը,
որի խորտակումը դարձել է օրակարգի հարց, կոնկրետ պրակտիկայի խնդիր։
«Ինչ է իմպերիալիզմը» հարցին հոդվածագիրը պատասխանում է Լենինից,
Պլեխանովից, Կաուցկուց կատարված մեջբերումներով։

Անգլո-գերմանական մրցումը հոդվածում (նույն տեղը, № 3) վեր է հան-
ված աշխարհի բաժանման ու վերաբաժանման պատմությունը, գերմանական
մարտնչող իմպերիալիզմի ձգտումները, ապա սպառազինված և տնտեսապես
հզոր ախոյանի դիրքորոշումը, որոնց միջև սկսվել է անողոք և կատաղի կռիվ։
Անգլիան իր «նուրբ հոտառությամբ վայրկենապես զգաց մոտեցող վտանգը
և սկսեց պատրաստություններ տեսնել ճակատագրական ընդհարման հա-
մար»։

Առանձին հոդված է նվիրված Բաղդադի երկաթուղուն՝ փաստորեն մեծ
տերությունների շահերի խաչաձևմանը և նրանց ռազմական պատրաստու-
թյուններին։ Բոլոր ուժեղները ձգտում էին բաժան-բաժան անել Տաճկաստա-
նը, նրանք նման էին քաղցած գայլերի, որոնք սպասում էին այն երանելի

վայրկյանին, երբ կհնչուեն նախատեսված զոհին. «բայց որովհետև սեղանակիցները ատում էին իրար և փոխադարձաբար վախենում էին իրարից, ոչ ոք չէր համարձակվում սկսել առաջինը» (նույն տեղը, № 4)։

Մրցումն Աֆրիկայում (այսպես է վերնագրված հերթական հոդվածը, նույն տեղը, № 5), հոդվածում ընթերցողը խորամուխ է լինում արյունահեղ ճակատամարտերի այն գաղտնիքի մեջ, որի բանալին գտնվում է Միջագետքում և Աֆրիկայում։ Հեղինակը թվարկում է սև մայրցամաքի հարստությունները, առանձնապես Կատանգայի անհամար հարստությունները, ապա և անգլիական խորամանկ իմպերիալիզմի ու գերմանական որոնող երիտասարդ իմպերիալիզմի ընդհարման անխուսափելիությունը։

Վերին աստիճանի ուշագրավ է նախատեսումը և ինտերնացիոնալը հոդվածը (նույն տեղը, № 6), որը մեծ հետաքրքրությամբ է ընթերցվում։ Հույժ կարևոր նշանակություն ունեցող այդ տեսությունում տրված է իմպերիալիստական պետությունների պատերազմին նախապատրաստվելու մի ամբողջ 10-ամյա ժամանակահատվածի պատմությունը։ Այս կապակցությամբ գրախոսվում են մի շարք գրքեր։ Բալկանյան պատերազմներին պետք է հաջորդեր՝ համաշխարհայինը, սակայն մի ուժ, մի գործոն կար, որ նրան կարող էր կասեցնել և սաղմի մեջ խեղդել՝ դա ինտերնացիոնալն էր. բայց, դժբախտաբար, նրա «պաշտոնական պարագլուխները և պատասխանատու ղեկավարները վարակվեցին ռազմա-շովինիստական ախտով, դավաճանեցին կարմիր դրոշակին և դարձան կապիտալի հլու սպասավորներ և բարապաններ»։ Այնուհետև. «Բոլոր երկրների սոցիալիստների մեծամասնությունները... ընդունեցին և նվիրագործեցին իրենց կառավարությունների նվաճողական-իմպերիալիստական քաղաքականությունը և հնարավոր դարձրին ազգերի փոխադարձ ոչնչացումը», իսկ փոքրամասնությունների բողոքն ու պայքարը արդեն չէին կարող փոխել իրադարձությունների ընթացքը։ Սակայն թերագնահատել այս փոքրամասնություններին աններելի սխալ կլիներ։ Տվյալ դեպքում Ա. Մելիքյանը նկատի ունի Լենինի գլխավորած Ցիմմերվալդի և Կինտալի կոնֆերանսները, որոնք խոշոր նշանակություն ունեցան բոլոր երկրների սոցիալիստներին համախմբելու և պատերազմի դեմ պայքարելու գործում։ Նա խորապես հավատում էր, որ միջազգային հեղափոխությունը վրա կհասնի, կկորչի սպանդը, կծնվեն նոր երկրներ՝ Նոր Անգլիա և Նոր Գերմանիա։

Իններորդ հոդված-դասախոսությունում (նույն տեղը, № 7), նորից անդրադառնալով պատերազմի բռնկման պատճառներին, Ա. Մելիքյանը շեշտը դնում է այն բանի վրա, որ «բուրժուազիան պետք է կրի արժանի պատիժ և վերջիվերջո կրելու է։ Դա անխուսափելի է»։ Այնուհետև. «...մենք ականատես ենք լինելու բանվոր և բուրժուա դասակարգերի վիթխարի, հսկա անխնա և երկարատև գոյամարտին։ Մենք ապրում ենք պատմության մի չտեսնված դարագլուխ և ով անտարբեր չէ դեպի կատարվող երևույթը, այսօր ևեթ պիտի որոշի ում կողմն է նա անցնում՝ կապիտալի, թե պրոլետարիատի...» (նույն տեղը, № 9)։

Պրոլետարիատի դիկտատուրան հոդվածում Ա. Մելիքյանը խոսում է իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելու մասին, տալիս է մարքսիզմի տեսակետը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու հարցում։



Իմպերիալիստական պատերազմը սկսվել և իր բոցերի մեջ է առել ժողովուրդներին, երկրներ և քանի գնում ավելի է թեժանում ու սպառնում աշխատավորությանը։ Ի՞նչ դիրք պետք է բռնի սոցիալիստը, ո՞րն է նրա վերաբերմունքը դեպի պատերազմը և պատերազմող կողմերը, ո՞ւմ է նա ցանկանում հաջողություն և ում՝ պարտություն, ում է պատրաստ օգնել և ում դեմ է կռվելու։ Ահա այս կենսական հարցերում է, որ Արշավիր Մելիքյանը սուր. անխնա քննադատության կրակի տակ է առնում երկրորդ Ինտերնացիոնալին, զայրույթով դատապարտում նրան՝ բանվոր դասակարգին դավաճանելու, սոցիալիզմը վարկաբեկելու, իմպերիալիստական բուրժուազիայի կողմն անցնելու համար։ Հանդես գալով Ինտերնացիոնալի պարագլուխների դեմ, նա չի խնայում նաև նրան, ում անչափ սիրել ու միշտ կարդացել է, որի խոսքերով հաճախ հիմնավորել է իր մտքերը—Պլեխանովին։ Իր համերաշխությունը հայտնելով փոքրամասնություն կազմող ցիմմերվալդցիներին, միանալով պատերազմի դեմ իրենց ձայնը բարձրացնողներին, ընդունելով լենինյան հայացքները պատերազմի ու խաղաղության մասին, Ա. Մելիքյանը դատապարտում է բոլոր նրանց, ովքեր չեն դիրքորոշվում դեպի բոլշևիզմը, դեպի պրոլետարիատի արդար կռիվը։ Նա չի հանդուրժում Պլեխանովին՝ նրա շովինիստական դիրքորոշման համար։ Իր 11-րդ հոդվածում նա քաղվածքներ է անում Պլեխանովի «Պատերազմի մասին» գրքից և ապացուցում նրա տեսակետի հակամարքսիստական և քաղաքականապես վնասակար լինելը։ Պլեխանովը սոցիալիստներին կոչ էր անում պաշտպանել իրենց հայրենիքը, հանցավոր էր համարում միայն Գերմանիային, համեմատում էր 1914—1918 թթ. պատերազմը ֆրանկ-պրուսականի հետ և օգտագործում Մարքսի խոսքերը՝ իր դիրքն արդարացնելու համար։ Ծառանալով այդ դիրքորոշման դեմ, Ա. Մելիքյանը փաստարկում է.

ա) Ֆրանկո-պրուսական պատերազմի և այժմյան պատերազմի անալոգիան ոչինչ չի ապացուցում։ Իեկկի «Ինտերնացիոնալ» գրքի «Ֆրանկո-գերմանական պատերազմը և բանվոր դասակարգը» գլուխը, որը երաշխավորում է կարդալ Պլեխանովը, բոլորովին այլ բան է ապացուցում, ցույց է տալիս. թե հայացքների ինչպիսի շփոթ էր տիրում սոցիալիստների գլխում այդ պատերազմի մասին։ Պլեխանովը կամ նմանօրինակ շփոթի կողմնակիցն է ներկա պատերազմի մասին կամ մոռացել է գրքի բովանդակությունը։ Պլեխանովն իրար է խառնում պարզ և անպաճույճ դեպքերը բարդ դեպքերի հետ։

բ) Անընդունելի է Պլեխանովի իմպերիալիզմին տված գնահատականը, սխալ է նրա տեսակետը պատերազմող կոալիցիաների մասին։ Երբ ընդհարվում են Եվրոպայի, Ամերիկայի և Ասիայի գիշատիչները՝ այդ գայլերը, առյուծները, վագրերն ու աղվեսները, որոնք միշտ պատրաստ են հոշոտել, ծվեն-ծվեն անել իրար, որոնք հարատև պաշտպանողական-հարձակողական դրության մեջ են գտնվում իրար հանդեպ, մենք այդպիսի դեպքում հրաժարվում ենք որոնել մեղապարտին ու անմեղին։ Մեղքը նրանց գոյության մեջ է։

գ) Պլեխանովի հետ հաշտվելն անհնար է այն պատճառով, որ նա սոցիալիստին դարձնում է սոցիալ-շովինիստ։ Սա դավաճանություն է պրոլետարիատի հանդեպ։

դ) Դժվար չէ հասկանալ, որ մեջ բերելով Մարքսի խոսքերը ֆրանկո-պրուսական պատերազմի մասին, Պլեխանովն ըստ էության հեռանում է մարքսիզմից։ «Մարքսը,— ասում է Ա. Մելիքյանը,— դեռ յոթանասունական

թվականներին ավելի լավ էր ըմբռնում 1914—1918 թթ. դեպքերը, քան նրա
«աշակերտներից» շատերը նույն այդ 1914—1918 թթ. (Նույն տեղը, № 10)։

Ռուսաստանի պարտությունը—եզրափակիչ հոդվածն է, որում հեղինակը
ցույց է տալիս կապիտալիզմի խորտակման և սոցիալիստական հեղափոխու-
թյան օրինաչափ լինելը (Նույն տեղը, 1919, № 1)։ Նա քննության է առնում
Ռուսաստանի ռազմա-տնտեսական վիճակը, ընդգծում, որ դեռևս 1915 թվա-
կանին սկսվել էր նրա սնանկությունը։ Այլ կերպ էլ լինել չէր կարող, քանի որ
ցարիզմը և ժամանակավոր կառավարությունը գործում էին տնտեսական
զարգացման օրենքների դեմ։ Տիրապետող քաղաքական ռեժիմը յուրաքան-
չյուրի մեջ սպանել էր սերը դեպի իր երկիրը և նրան տրամադրել գտնել փըր-
կության ճանապարհը։ Հեղափոխական սիտուացիան շարունակում էր խորա-
նալ, քանի որ ռազմունակությունը կորցրած երկիրը շարունակում էր պատե-
րազմել միջազգային կապիտալի թելադրանքով։ Ռոմանովը, Գուչկովը, Միլ-
յուկովը, Կերենսկին, Ծերեթելին միջազգային բուրժուազիայի ձգտումներն
իրագործելու նպատակով քարուքանդ արին հսկա պետությունը։ «Հարկավոր
է բոլշևիկյան հեղափոխական, կտրուկ և խիզախ ուժը, որպեսզի վերջ տրվի
այդ անարգ խաղին. բոլշևիկները կարողացան փրկել բեկորները այն պետու-
թյան, որ աճուրդով ծախվում էր միջազգային կապիտալին»։ Ա. Մելիքյանը
միայն ափսոսանքով է գրում, որ «բոլշևիկյան բռունցքը մի երեք տարի սրա-
նից առաջ քարուքանդ չարեց» ժողովուրդների բանտը։

Բոլշևիզմը պետք է հաղթանակի նաև այստեղ՝ Անդրկովկասում և Հա-
յաստանում, ասում էր Ա. Մելիքյանը Միակ ուղիղ ճանապարհը (Նույն տե-
ղը, № 2) հոդվածում։ Վրաց մենշևիկները, հայ դաշնակցականները և թուրք
մուսավաթականները ընդունակ են իրենց ցասումն ու զայրույթն արտահայ-
տել հեղափոխական Ռուսաստանի դեմ, իսկ իրենց ազգերին տանել դեպի կա-
տարյալ անկում, դարձնել երկրամասը միջազգային կապիտալի գաղութ։
«Ազգերի այսպիսի ղեկավարներին անպայման պիտի տապալել», «հարկա-
վոր է արմատապես հեղաշրջել կացությունը և վերացնել կարճամիտ, կար-
ճատես և ապաշնորհ վարիչներին»։

Ա. Մելիքյանի դասախոսությունները պատերազմի մասին ամբողջովին
ուղղված են տիրող դաշնակցական, մենշևիկյան ու մուսավաթական ռեժիմի
ծանր հետևանքների դեմ։ Նրանք ո՛չ միայն գիտա-պատմական բնույթ
էին կրում, այլև հեղափոխական գործողության էին կոչում, զոտեպնդում աշ-
խատավոր մասսաներին սովետական իշխանություն հաստատելու համար։
Այս առթիվ «Խոսք» թերթում բազմաթիվ հոդվածներ են տպագրվել (Նույն տե-
ղը, 1918, № 1, 2, 4, 5 և այլն)։

Արշավիր Մելիքյանի նման վարքագծի՝ նրա քաղաքական ազդեցության,
դասախոսությունների ու հոդվածների և խմբագրած թերթի ուղղության հա-
մար դաշնակցական իշխանությունները մի անգամ չէ, որ սպառնալի պատա-
սխանատվության են կանչել նրան, հալածանքների ենթարկել, սաստել։ Կա-
ռավարությունը № 17-ի առաջնորդող հոդվածի
լանքի տակ է վերցվել «Խոսք» թերթը (ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի արխիվ,
համար, որի հեղինակն էր Ա. Մելիքյանը (ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի արխիվ,
ֆ. 4056, ց. 1, գ. 92)։ Դատարանում խմբագիրը ամենայն վճռականությամբ
և համառությամբ պաշտպանեց թերթի դիրքը, հանդես եկավ մեղա-
դրողի և դատապարտողի դերում։

Այսպես, Արշավիր Մելիքյանի թվարկած և այլ գրվածքները հետաքրքր-



րական աղբյուր են տվյալ էտապի հայ հասարակական, մասնավորապես հայ
բոլշևիկյան մտքի պատմության համար։

Թերևս քննադատական խոսք պիտի ասենք, քանի որ բոլոր դեպքերում
չէ, որ համոզիչ են նրա մտքերը կամ գոհացուցիչ՝ բացատրությունները։

Դեռևս 1918 թվականին նա մնում էր այն մտքին, որ համաշխարհային
հեղափոխությունը Արևմուտքից պետք է գա, որ նոր Անգլիան և նոր Գերմա-
նիան պետք է դառնան այդ հեղափոխության առանցքը (տե՛ս «Խոսք», 1918,
№ 6), որ Սովետական Ռուսաստանը անպարտելի կլինի արևմտյան շարժման
շնորհիվ և այլն (Նույն տեղը, № 9)։ Ա. Մելիքյանը խորապես չէր ըմբռնել սո-
ցիալիստական հեղափոխության լենինյան թեորիան և կոնկրետ չէր պատկե-
րացնում սովետական իշխանության առավելությունները։

Իր հոդվածներից մեկում նա ցավով է նշում, որ «կտրված է արտաքին
աշխարհից», որի պատճառով «զգույշ է իր պնդումների մեջ» (Նույն տեղը)։
Երևի այս կտրվածությունն էր գլխավոր պատճառը, որ նա մնացել էր այդ
սխալ տեսակետի վրա։

Իմպերիալիզմի բնորոշումներում և նրա հիմնական գծերի բացահայտ-
ման մեջ տարբեր մոտեցումներ կան, որոնք նշում է Ա. Մելիքյանը (Նույն տե-
ղը, № 2)։ Բայց նա հետևողական չէր հակամարքսիստական հայացքների
քննադատության մեջ, նրա տեսադաշտից վրիպել են ռուսական իմպերիալիզ-
մի առանձնահատկությունները և այլն։

Այս և այլ կարգի սայթաքումներն ու անհարթությունները վկայում են, որ
հայ մարքսիստական միտքը պատմական մի այնպիսի բարդ ժամանակա-
շրջանում, ինչպիսին 1914—1918 թթ. էին, ունեցել է մասնակի տատանումներ
ու շեղումներ, որոնք, ի դեպ, տեսականի պակասի լրացումով և հեղափոխա-
կան պայքարի բովում են հաղթահարվել։

Ա. Մելիքյանը զերծ չէր տեսական և քաղաքական սխալներից, բայց և
չէր համառում նրանցում, մետաֆիզիկ չէր իր հայացքներում. ինչպես Աշոտ
Հովհաննիսյանն է վկայում՝ հրաժարվում էր վրիպած տեսակետից, հենց որ
համոզվում էր իր սխալականության մեջ։

Հիրավի, դա ժամանակ էր պահանջում։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈԼԵԿՏԻՎ ՋԱՆՔԵՐՈՎ

Տարիներ առաջ Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տե-
քստիլ կոմբինատը չէր կատարում պլանները։ Այդ բացասաբար էր անդրա-
դառնում ոչ միայն քաղաքի, այլև հանրապետության թեթև արդյունաբերու-
թյան արտադրական ցուցանիշների վրա։ Ահա թե ինչու կոմբինատում ստեղծ-
ված վիճակը քննության առարկա դարձավ կուսակցական վերադաս
օրգաններում, որոնք կոնկրետ միջոցառումների դիմեցին՝ այդ հսկա ձեռ-
նարկությունը առաջավորներին հասցնելու համար։

Լուրջ գործի անցան նաև կոմբինատի տնտեսական ղեկավարները, կու-
սակցական կազմակերպությունը, արտադրության նշանավոր մարդիկ։ Կոմ-
բինատի անվանի ջուլհակուհիներ, Սոցիալիստական աշխատանքի հերոս
Աստղիկ Պետրոսյանը, ՀԿԿ Կենտկոմի անդամ Մարիա Անտոնովնան, վարպե-
տի օգնական Գարեգին Տոնոյանը և մանածագործուհի Լիզա Հակոբյանը
«Եկեք ընկերներ, աշխատենք հոգով, խղճով, համատեղ ջանքերով, շտկենք
դրությունը» վերնագիրը կրող բաց նամակով, որը հրապարակվեց քաղաքա-
յին «Բանվոր» թերթում, դիմեցին տեքստիլագործներին՝ առաջարկելով հա-
մատեղ ջանքերով շտկել դրությունը։ Բացահայտելով ձեռնարկության ետ
մնալու պատճառները, նրանք գրում էին. «Մեզ հայտնի է, որ կոմբինատի
կուսակցական, արհմիութենական կազմակերպությունները իրենց ժողովնե-
րում քննարկում են արտադրությանը հուզող հարցեր։ Ցավալին այն է, որ
ընդունված որոշումները լիովին չեն կենսագործվում՝ կազմակերպական կեն-
դանի աշխատանքի բացակայության հետևանքով։ Մրցությունը՝ աշխատա-
վորների ակտիվության բարձրացման այդ հզոր միջոցը, լիովին ի սպաս չի
դրվում առաջադրված խնդիրների կատարման նպատակին։

Մեզ՝ լավագույն տրադիցիաներ ունեցող տեքստիլագործներիս, պատիվ չի
բերում ետ մնալը։ Եկեք, ընկերներ, խոսքներս մեկ անենք և շտկենք դրու-
թյունը»։

Հիրավի, սրանք էին կոմբինատի ետ մնալու պատճառները։ Կոմբինա-
տում աշխատում էին շուրջ 650 կոմունիստ, 2116 կոմերիտական, կուսակցա-
կան կազմակերպությունն իր մեջ ընդգրկում էր 10-ը արտադրամասային
կազմակերպություն, 43 կուսակցական խումբ, ադմինիստրացիայի գործու-
նեությանը վերահսկող 13 հանձնաժողով։

Անհրաժեշտ էր այդ ուժը գործի դնել և դրանից ամեն ինչ կփոխվեր։
ՀԿԿ Լենինականի քաղկոմը և կոմբինատի կուսակցական կազմակերպու-
թյունը կոնկրետ քայլերի դիմեցին ձեռնարկության թերությունները վերաց-



նելու և կոլեկտիվում աշխատանքը բարելավելու համար։ Մշակվեցին ար-
տադրական ու կազմակերպական մի շարք միջոցառումներ, որոնք արտադրա-
մասերի և տեղամասերի խորհրդակցություններում քննարկվելուց ու լրա-
ցումներից հետո, ներդրվեցին արտադրության մեջ։ Մեծ տեղ հատկացվեց
նյութական ու ֆինանսական մատակարարման հարցերին, կոմբինատի կու-
սակցական և տնտեսական ղեկավար կադրերի կազմը համալրվեց կազմա-
կերպական ու տնտեսական աշխատանքի հարուստ փորձ ունեցող մարդկան-
ցով, իրենց գործունեությունն աշխուժացրին «Մետաքսագործ» բազմատիրաժ
թերթը, պատի թերթերն ու մարտական թերթիկները։

Կուսակցական ժողովներում քննության առնվեցին տեխնոլոգիական պրո-
ցեսների բարելավման հարցերը, հետևողական պայքար ծավալվեց արտա-
դրության ճիշտ կազմակերպման, կադրերի որակավորումը բարձրացնելու և
աշխատանքի առաջավոր մեթոդները լայնորեն արմատավորելու ուղղությամբ։
Լուրջ ուշադրություն նվիրվեց արտադրանքի որակի բարձրացմանը։ Այս ամե-
նի շնորհիվ կոմբինատը դուրս եկավ տևական ճեղքվածքից, սկսեց սիստեմա-
տիկաբար կատարել պետական առաջադրանքները։

Եվ ահա 1963—1966 թվականներին տեքստիլ կոմբինատի կոլեկտիվը
տասն անգամ արժանացավ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի, ՍՍՀՄ
թեթև արդյունաբերության մինիստրության, հանրապետության ժողտնտխոր-
հի, ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշների և առաջին կարգի մրցանակների։ Իսկ
բամբակյա բարձրորակ գործվածքների արտադրության յոթնամյա պլանը
հաջողությամբ կատարելու, արտադրության մեջ նոր տեխնիկա և տեխնոլո-
գիա արմատավորելու համար կոմբինատը 1966 թվականի հունիսին պարգե-
վատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։ Այդ մեծ հաջողությու-
նը ձեռք բերվեց արտադրության հաջող կազմակերպման, քաղաքական ու
կազմակերպական աշխատանքի ծավալման, ինչպես նաև կոմունիստների
նախաձեռնության և արտադրության մեջ նրանց ավանգարդային դերի ապա-
հովման շնորհիվ։

Այս ամենի հետ մեկտեղ կոմբինատի կուսկոմիտեն ակտիվացրեց ար-
տադրամասային կուսկազմակերպությունների և կուսխմբերի գործունեությու-
նը, այն ուղղեց գլխավոր տնտեսական խնդրի լուծմանը։ Կուսկազմակերպու-
թյունն ամեն ինչ անում է, որպեսզի յուրաքանչյուր բանվոր, ինժեներ, տեխ-
նիկ և ծառայող իր լուման ներդնի արտադրության զարգացման գործում։

Ձեռնարկության տնտեսական գործունեության հետագա բարելավմանը
մեծ չափով նպաստեց նաև «Աշխատանքի արտադրողականության բարձրաց-
ման և ինքնարժեքի իջեցման վիճակը ֆաբրիկայում և այն բարելավելու ուղ-
ղությամբ կուսակցական կազմակերպության խնդիրները» հարցի նախապատ-
րաստումն ու քննարկումը։ Կուսկազմակերպության ժողովում նշվեց, որ գործ-
վածքային ֆաբրիկայում աշխատանքի արտադրողականությունը, Միության
այլ ձեռնարկությունների համեմատությամբ, նկատելի չափով ցածր է, չնա-
յած, երկրի բոլոր ֆաբրիկաների համար աշխատանքի համանման պայման-
ներ են ստեղծված։ Գործվածքային ֆաբրիկայում աշխատանքի արտադրողա-
կանությունը ցածր էր 12—15 տոկոսով։ Արտադրվող յուրաքանչյուր մետր
գործվածքի վրա 1,4 անգամ ավելի աշխատանք էր ծախսվում, քան Կալինին
քաղաքի տեքստիլ կոմբինատում և մոտ 35 տոկոսով ավելի, քան Լատվիա-
կան ՍՍՀ «Բոլշևիչկա» տեքստիլ կոմբինատում։

ժողովը կոնկրետ միջոցառումներ նշեց աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման առաջադրանքների կատարման համար։ Այդ գործում մեծ դեր խաղացին կուսխմբերը. նրանք դարձան սոցիալիստական մրցության ակտիվ կազմակերպիչներ, հետևողական պայքար ծավալեցին բանվորների աշխատանքային ակտիվության բարձրացման, արտադրության նոր ռեզերվների հայտաբերման և օգտագործման համար։ Մանարան ֆաբրիկայի միջնաթելի գործամասի հիմնական երկրորդ հերթափոխի կուսակցական խումբը (կուսկազմակերպիչ Ս. Մինասյան) ուսումնասիրեց և քննության առավ արտադրվող թելի որակի, անհավասարությունների և մետրաժի պահպանման վիճակը։ Պարզվեց, որ ինչպես միջնաթելի հիմնական երկրորդ, այնպես էլ ֆաբրիկայի մյուս հերթափոխություններում հսկողության բացակայության պատճառով գրեթե բոլոր մանողները չէին ապահովում մասրաների վրա թելի փաթաթման անհրաժեշտ քանակությունը։ Տեխնոլոգիայով նախատեսվող 900 մետրի փոխարեն, փաթաթվում էր միայն 650—700 մետր։ Այդ պատճառով մասրաները 3 րոպեից հետո դատարկվում էին, հարկ էր լինում ավելի հաճախակի փոխել դրանք. այս խիստ ավելացնում էր մեքենաների պարապուրդները, իջեցնում աշխատանքի արտադրողականությունը, չէր ապահովում մանող ցեխի հանորդ բանվորուհիների նորմալ աշխատանքը։

Հարցի քննարկումից հետո կուսակցական խումբը ուժեղ հսկողություն սահմանեց թելի պահանջվող մետրաժի վրա, բանվորուհիների շրջանում բացատրական լայն աշխատանք տարավ, որի շնորհիվ մասրաների վրա փաթաթված թելի միջին երկարությունը շուտով 34-ից հասավ 39 տոկոսի։ Մասրաները 3-ի փոխարեն սկսեցին աշխատել 5 րոպե, կրճատվեցին պարապուրդները և միջնաթելի արտադրամասում արտադրողականությունը երկու տոկոսով բարձրացավ։ Այս ոլորտում գոհացուցիչ արդյունքների հասնելուց հետո հերթափոխի կուսխումբը որոշեց այդ կարևոր ռեզերվը գործի դնել ամբողջ ֆաբրիկայում. ուստի, նրա փորձի արդյունքների ու դրա կիրառման եղանակների մասին զեկուցվեց ֆաբրիկայի սկզբնական կուսկազմակերպության ժողովում։ Այնուհետև, կուսկազմակերպության հանձնարարությամբ միջնաթելի հիմնական երկրորդ հերթափոխի փորձը ներդրվեց ողջ ֆաբրիկայում։

Իր աշխատանքում էական փոփոխություններ մտցրեց նաև մանող միջնաթելի արտադրամասի հիմնական առաջին հերթափոխի կուսակցական խումբը (կուսկազմակերպիչ Ս. Սահակյան)։ Աշխատանքային կարգապահության հաճախակի խախտումների հետևանքով այստեղ թողարկվում էր նախատեսվածից պակաս արտադրանք։ Հրավիրված կուսակցական ժողովը խիստ քննադատեց ստեղծված վիճակը և նշվեցին թերությունները հիմնովին վերացնելու կոնկրետ ուղիներ։

Կոմբինատի դիրեկցիայի և կուսկազմակերպության ձեռնարկած միջոցառումներից հիշատակության արժանի է դիսպետչերական ծառայության ստեղծումը, որն ապահովեց տեխնոլոգիական պրոցեսների համաչափ և կանոնավոր ընթացքը։ Դիսպետչերական խմբերը հատուկ հսկողության տակ առան, կարգավորեցին մեքենայական պարկը լրիվ կարողությամբ գործելու, հումքի և օժանդակ նյութերի անխափան մատակարարումն ապահովելու հարցերը։ Նրանք, հետևելով կոմբինատի ֆաբրիկաների արտադրամասերի հերթափոխերի աշխատանքներին, իրենց ձեռքի տակ ունենալով տեղամասերի յուրաքանչյուր ժամվա տվյալները կարողանում էին վերացնել նկատված անսար-



քություններն ու աշխատանքի նորմալ ընթացքին խանգարող պատճառները։

Կուսակցական կազմակերպությունը և տնտեսական ղեկավարությունը նպատակահարմար գտան կատարել նաև արտադրամասերի խոշորացում, ուժեղացնել ղեկավարությունը։ Այդ միջոցառման շնորհիվ զգալիորեն բարելավվեցին տեխնոլոգիական պրոցեսները, կարգավորվեց բամբակի նախամշակման, մանվածքի հենքի պատրաստման պրոցեսը, աստիճանաբար բարձրացավ կիսաֆաբրիկատների որակը։ Մանածագործին, ջուլհակին ու վերամշակողին հնարավորություն ընձեռվեց ավելի արդյունավետ օգտագործել մեքենան և հասնել բարձր արտադրողականության։

Արտադրողականության բարձրացմանը մեծ չափով նպաստեց առաջավոր բրիգադների և անհատների օգնությունը ետ մնացողներին։ Ֆաբրիկաներում ստեղծվեց այդպիսի 24 բրիգադա, որտեղ ընդգրկվեցին արտադրության 140 առաջավոր։ Օրվա որոշակի ժամերին նրանք լինում էին ետ մնացող տեղամասերում, ցուցադրում իրենց աշխատանքի առաջավոր ձևերը։

Փոխօգնության բրիգադների նախաձեռնողներն էին գործող առաջին ցեխի ավագ վարպետ, ՍՄԿԿ անդամ Ց. Սարգսյանը, կոմունիստական աշխատանքի բրիգադավար, վարպետի օգնական Լ. Վիրաբյանը, ջուլհակուհիներ Ն. Լատոնինան, Վ. Սարգսյանը, մանածագործուհիներ Ց. Զաքարյանը, Գ. Ավետիսյանը, Բ. Վարդանյանը և շատ ուրիշներ, որոնց ջանքերի շնորհիվ պայմաններ ստեղծվեցին թերությունների վերացման համար, և արտադրամասերը առաջավոր բնագծեր դուրս եկան։ Բացի այդ, կոմբինատի կուսակցական և տնտեսական ղեկավարությունը սկսեց ավելի շատ շփվել բանվորների հետ, ուշադիր լինել, ունկնդրել նրանց դիտողություններն ու առաջարկությունները։ Նրանց ձեռնարկած միջոցառումների կոմպլեքսում կարմիր թելի նման անցնում էր աշխատավորների կուլտուր-կենցաղային և աշխատանքային պայմանների բարելավման խնդիրը։ Այս ուղղությամբ ձեռնարկած միջոցառումները ևս իրենց նշանակալի դերը կատարեցին կոմբինատն առաջավոր ձեռնարկությունների շարքը դուրս բերելու գործում։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման և բանվորների աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավման տեսակետից, կարևոր նշանակություն ունեցավ մեկ հերթափոխի անցնելը։ Բարեկարգվեցին կոմբինատի արտադրական տեղամասերն ու տերիտորիան, ստեղծվեցին բանվոր-բանվորուհիների կյանքի ու կենցաղի համար բոլոր անհրաժեշտ պայմանները։ Հարկ եղավ արմատապես վերակառուցել հովացման առկա սիստեմը։ Ֆաբրիկաներում տեղակայվեցին նոր սարքավորումներ (օդափոխիչ սարքեր, խտացրած օդ մատակարարող հարմարանքներ), որոնք հնարավորություն ընձեռեցին զգալիորեն բարելավելու աշխատանքային պայմաններն ու տեխնոլոգիան։ Շահագործման հանձնվեց 14 հազար քմ բնակելի տարածություն, զգալի չափով բարձրացավ բանվորների աշխատավարձը։

Կոմբինատի կուսակցական կազմակերպությունը սկսեց մոտիկից զբաղվել տեխնիկական առաջադիմության հարցով, որը քննության առնվեց XVIII կուսհամագումարի անվան մանարան, գործվածքային, ներկման-վերամշակման ֆաբրիկաների, գլխավոր մեխանիկի բաժնի կուսակցական կազմակերպությունների ժողովներում ու կուսկոմիտեի նիստերում։ Յոթնամյակի տարիներին ձեռնարկության ֆաբրիկաներում տեղակայված նոր մեքենաները

հնարավորություն ընձեռեցին աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 10—12 տոկոսով։

Լայն կիրառում ստացան ավտոմատ հաստոցներն ու դազգահները։ Լիովին ավտոմատացվեց հենքի թելի հանգույցների կապման բարդ և աշխատատար պրոցեսը, որը գործվածքային ֆաբրիկային ետ պահող հիմնական պատճառներից մեկն էր։ Ներկման-վերամշակման ֆաբրիկայի կուսկազմակերպության նախաձեռնությամբ կատարելագործվեց ու պարզեցվեց կտորի սպիտակեցման տեխնոլոգիական պրոցեսը։ Ֆաբրիկան անցավ գործվածքի մշակման պերօքսիդային եղանակին, որի շնորհիվ գործվածքի սպիտակեցումը կատարվում է մեկ պրոցեսով, բացի այդ, կրճատվում է օգտագործվող քիմիական նյութերի քանակը։

Վերջին 4—5 տարիներին կոմբինատում մոդեռնացվեց մեծ թվով հին մեքենաներ և սարքեր։ Նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրումը մեծ հեռանկարներ բացեց արտադրանքի ավելացման համար։ Այսպես, 1965 թվականին, 1962 թվականի համեմատությամբ, պատրաստի գործվածքի թողարկումն ավելացավ 25 միլիոն մետրով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 22 տոկոսով։

Կոմբինատում լայն թափ առավ նորարարների շարժումը։ Այստեղ յուրաքանչյուր հինգերորդ մարդը արտադրության նորարար է։ 1959—1965 թվականների ընթացքում արտադրության մեջ ներդրվեց 3432 ռացիոնալիզատորական առաջարկություն և խնայվեց 2 միլիոն 338 հազար ռուբլի։ Նորարարական աշխատանքներում բարձր ցուցանիշների հասնելու համար կոմբինատի կոլեկտիվը 9 անգամ արժանացել է ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի 1-ին և 2-րդ կարգի մրցանակների։ Այժմ էլ կոմբինատի ձեռնարկություններում լայն ծավալ է ստանում սոցիալիստական մրցությունը։ Կոմունիստականի կոչում նվաճելու համար պայքարում են 156 բրիգադա (2 հազար հոգի)։ Այդ բարձր կոչմանն արժանացել են 67 բրիգադա (750 հոգի)։

Կոմբինատի կուսկազմակերպությունը լրջորեն զբաղվեց նաև ձեռնարկության շահութաբեր աշխատանքի ապահովմամբ։ Կոմբինատը, ճիշտ է, սիստեմատիկաբար կատարում էր համախառն արտադրանքի պլանը, ասորտիմենտի ընդլայնման առաջադրանքը, սակայն չէր ապահովում օգուտների պլանը, ձեռնարկությունն աշխատում էր վնասով։

Կոմբինատի կուսկոմն առանձնացրեց 200 տնտեսագետ և այլ մասնագետներ, որոնք մանրազնին ուսումնասիրեցին ֆաբրիկաների և արտադրամասերի գործունեությունը։ Պարզվեց, որ ձեռնարկությունում բոլոր պայմանները կան ո՛չ միայն պետական հատկացումներից լիովին հրաժարվելու, այլև շահութաբեր աշխատելու համար։ Այդ հարցը քննարկվեց բոլոր սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, որոնք շահութաբեր աշխատանքի բազմաթիվ նոր ռեզերվներ բացահայտեցին։ Այնուհետև կուսակցական կազմակերպության բոլոր օղակները սկսեցին հետևողականորեն զբաղվել շահութաբերության բարձրացման կարևոր պայմանի՝ թողարկվող արտադրանքի որակի բարելավման հարցերով։ Այժմ ֆաբրիկաներում ամեն շաբաթ անց են կացվում որակի հասարակական ստուգատեսներ, որոնց արդյունքները քննարկվում են տեխնիկական խորհրդում և առաջին տեսակի արտադրանքի թողարկումը ավելացնելու հաշվին շահութաբերության բարձրացման համար ձեռնարկվում համապատասխան միջոցներ։



Այդ բնագավառում առանձնապես լավ ցուցանիշներ ձեռք բերեց գործվածքային ֆաբրիկայի կոլեկտիվը, որի կուսկազմակերպության աշխատանքի դրական փորձը, որոշ ժամանակ անց, ընդհանրացվել և մասսայականացվել է կոմբինատի բոլոր ձեռնարկություններում։

Այս ամենի արդյունքը եղավ այն, որ 1965 թվականի չորրորդ եռամսյակից արտադրամասերն ու տեղամասերը սկսեցին աշխատել օգուտով։

Կուսակցական-կազմակերպական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքները բարելավելու շնորհիվ, Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի կոլեկտիվը ո՛չ միայն հաջողությամբ կատարեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի առաջադրանքները, այլև, ամրապնդելով ձեռք բերած հաջողությունները, մեծ ոգևորությամբ ձեռնամուխ եղավ նոր հնգամյա պլանի կատարմանը։

Տեքստիլ կոմբինատի կուսկազմակերպության բեղմնավոր գործունեությունը մեկ անգամ ևս ցույց է տալիս, որ կուսակցական աշխատանքը կոլեկտիվ ստեղծագործություն է, որ այն կարող է ցանկալի արդյունքներ տալ միայն այն դեպքում, երբ գործի են դրվում նրա բոլոր ձևերն ու մեթոդները, երբ համագործակցված են աշխատում կազմակերպության բոլոր օղակները։

ՍՏ. ՄԿՐՏՉՅԱՆ

## ԲԱՐՁՐ ՊԱՀԵԼ ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԿՈՉՈՒՄԸ

Բարձր պահել կոմունիստի կոչումը, նշանակում է ճշտորեն կատարել կուսակցության ծրագիրն ու կանոնադրությունը։ Կոմունիստը աշխատանքի հանդեպ ունեցած իր վերաբերմունքով կոլեկտիվի մեջ ստեղծագործական մթնոլորտ է ստեղծում, ոգևորում մարդկանց, բարձր տրամադրություն առաջացնում, մոբիլիզացնում աշխատանքային նորանոր սխրանքների համար։

Նոյեմբերյանի շրջանի ձեռնարկություններում և հիմնարկություններում շարքային կոմունիստի լավ աշխատանքի օրինակները շատ են։ Լալվարի սովխոզի կուսկազմակերպության անդամ Ե. Հարությունյանի ղեկավարած բրիգադայում տարեցտարի բարձրանում է խաղողի բերքատվությունը։ 1965 թվականին նրա բրիգադան իր մշակած այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացավ 136 ցենտներ խաղող։ Առատ բերք կար նաև անցյալ տարի։ Դրվատանքի խոսքեր կարելի է ասել նաև Կողբի սովխոզի հովիվ Ս. Աբովյանի, փայտամշակման կոմբինատի փականագործ Ս. Թանդիլյանի, Ղալաչայի կոլտնտեսության անասնապահ Ա. Մուրադյանի, Այրումի պահածոների գործարանի բանվոր Մ. Սիրադեղյանի, Պտղավանի սովխոզի բրիգադավար Ս. Մատինյանի, № 7 շարժական մեքենայացված շարասյան որմնադիրների բրիգադավար Ս. Մարտիրոսյանի, Ոսկեպարի թռչնաբուծական ֆերմայի բրիգադավար Ս. Ադամյանի և շատ ուրիշների մասին։

Հասարակական արտադրության հոգսերը կոմունիստի հոգսերն են։ Նա միշտ դժվար հաղթահարելի բնագծերում է, այնտեղ է, ուր պահանջում է գործի ընդհանուր շահը։ Դոստլուի կաթնաանասնապահական ֆերմայում ընկած

էր աշխատանքային կարգապահությունը, վատ էր հաշվառման վիճակը, անընդհատ իջնում էին ցուցանիշները: Կուսկազմակերպությունը ֆերմայի նոր վարիչ առաջադրեց երիտասարդ կոմունիստ Ս. Աբաղյանին, որը եռանդուն գործունեություն ծավալեց կոմունիստների օգնությամբ, բարելավվեցին անասնապահների կուլտուր-կենցաղային պայմանները, կազմակերպվեց սոցիալիստական մրցություն, ծավալվեց քաղաքական-մասսայական աշխատանք, սահմանվեցին խրախուսանքի միջոցներ: Այդ ամենի շնորհիվ բարձրացավ աշխատանքային կարգապահությունը, անասունների մթերատվությունը:

Կոմունիստը նորի ջատագովն է: Նա առաջինն է ներդնում առաջավոր փորձը, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները, ամեն ինչ անում արտադրության պրոցեսը հեշտացնելու և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար: Այս առումով կարելի է նշել Կողբի կահույքի կոմբինատի կոմունիստների լավ աշխատանքը: Մի ժամանակ ֆաներապատվող մասերի մակերեսը հղկվում էր ձեռքով, որի հետևանքով ցածր էր աշխատանքի արտադրողականությունը և արտադրանքի որակը: Կոմունիստ Ա. Յարալյանի նախաձեռնությամբ մեքենայացվեց հղկման պրոցեսը: Դրա շնորհիվ արտադրողականությունը բարձրացավ 40 տոկոսով:

Կոմբինատում սեղանների ոտքերը մշակում էին առանձին-առանձին: Դա շատ ժամանակ էր խլում: Արտադրամասի վարիչ Հ. Բարսեղյանի ղեկավարությամբ պատրաստված հատուկ հարմարանքն այժմ հնարավորություն է ընձեռում չորս ոտքը միաժամանակ պատրաստելու:

Շատ էր խոտանը ճկած աթոռների դետալների արտադրամասում: Արտադրամասի վարիչ Ռ. Յարալյանը վերափոխեց հաստոցի ճկման սիստեմը, որի շնորհիվ այժմ խոտանը նվազագույնի է հասցվել:

Բայց և կան այնպիսի դեպքեր, երբ կոմունիստներն իրենց ղեկավարած տեղամասերում տարիներ շարունակ աշխատանքը կատարում են հին եղանակով, չեն զբաղվում աշխատատար պրոցեսների մեքենայացմամբ, վատ են օգտագործում պարարտանյութերը, չեն արմատավորում առաջավոր փորձը: Կողբի սովխոզի և Ղալաչայի կոլտնտեսության կոմունիստները, օրինակ, վատ են օգտագործում ոռոգման ջուրը:

Կոմունիստը հասարակական ունեցվածքի պաշտպանն է: Նա ակտիվ պայքարում է հասարակական ունեցվածքը վատնողների ու շռայլողների դեմ: Կողբի սովխոզում և Այրումի պահածոների գործարանում կոմունիստներ Մ. Անանյանը, Ա. Զիլինգարյանը գովելի աշխատանք են կատարում այդ ուղղությամբ: Սակայն քիչ չեն դեպքերը, երբ առանձին մարդիկ ոչ միայն չեն պայքարում հասարակական ունեցվածքը հափշտակողների դեմ, այլև իրենք են թույլ տալիս նման արարքներ: Հասարակական աշխատանքներում իրենց լավ են դրսևորում Լալվարի սովխոզի կուսկազմակերպության անդամ Ս. Կուչերենկոն, Կողբի կահույքի կոմբինատի կուսկազմակերպության անդամ Գ. Սահակյանը և շատ ուրիշներ: Բայց բոլոր կուսանդամ-թեկնածուները չեն, որ կատարում են իրենց կանոնադրական պարտականությունները, ակտիվորեն մասնակցում կուսկազմակերպության և կոլեկտիվի կյանքին: Կոմունիստներ Գ. Անանյանը, Ա. Ավագյանը (Կողբի սովխոզ), Վ. Աթոյանը (Ղալաչայի կոլտնտեսություն), Խ. Պողոսյանը (պահածոների գործարան), Է. Պետրոսյանը (Բաղանիսի տեղամաս) և ուրիշներ գրեթե կտրված են կուսակցական կյան-



քից, չեն մասնակցում ժողովներին ու հարցերի քննարկմանը, մեծ ուշացումներով են մուծում կուսակցական անդամավճարները:

Կոմունիստը բարոյական վեհ հատկանիշների մարմնացում է: Նա պետք է ատի խորթ բարքերը, լիովին նվիրվի կուսակցությանը, պրոպագանդի նրա քաղաքականությունն ու որոշումները ոչ միայն խոսքով, այլև գործով:

Կան կոմունիստներ, որոնք գաղափարական դաստիարակչական մեծ գործ են կատարում շրջանի աշխատավորների հետ: Այդ տեսակետից ղրվատանքի արժանի են Վ. Ազատյանը (Ղալաչայի դպրոց), Ա. Քյարիմովը (Դեբեդաշենի № 2 դպրոց), Մ. Մագուլյանը (Դեբեդաշենի № 1 դպրոց), Ս. Հարությունյանը (Բաղանիսի դպրոց), Ա. Բարսեղյանը (Ղոշղոթանի դպրոց), Հ. Դավթյանը (Արճիսի դպրոց) և շատ ուրիշներ: Նրանք միշտ այնտեղ են, ուր աշխատանքն է եռում: Սակայն դրանց կողքին, դժբախտաբար, հանդիպում ենք առանձին կոմունիստների, որոնք իրենք են խորթ բարքերի կրողները, զբաղվում են հարբեցողությամբ և այլն: Վերջերս շրջկոմի բյուրոն խուլիգանական արարք թույլ տալու համար կուսակցական պատասխանատվության ենթարկեց Մ. Մամեդովին: Նման վարքագծի համար պատասխանատվության են ենթարկվել նաև կոմունիստներ Ս. Երկնիփեշյանը (շրջսովետի գործկոմ), Ա. Հուսեյնովը (Դեբեդաշենի № 2 դպրոց) և ուրիշներ:

Կոմունիստը հասարակության և կոլեկտիվի առաջավոր անդամ լինելուց բացի, ընտանիքի անդամ է, նրա դաստիարակը: Ուրեմն, օրինակելի ընտանիքի ստեղծումը պետք է լինի կոմունիստին ներկայացվող կարևորագույն բարոյական պահանջներից մեկը: Ընտանիքի հանդեպ ցուցաբերվող անհոգատարությունն ու անտարբերությունը, կոմունիստական համակեցության կանոնների խախտումը անհամատեղելի են կոմունիստի կոչմանը: Նոյեմբերյանի կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները կոմունիստների հետ տարվող դաստիարակչական աշխատանքում հաշվի են առնում նաև բարոյական նորմերի պահպանման անհրաժեշտությունը: Օրինակ, սիստեմատիկորեն հարբեցողությամբ զբաղվելու և ընտանիքում անառողջ մթնոլորտ ստեղծելու համար կուսակցական պատասխանատվության է ենթարկվել շրջսպառկոոպմիության կուսկազմակերպության անդամ Դ. Ասատրյանը:

ՍՄԿԿ XXIII համագումարը հատակորեն դրեց կուսակցական կարգապահության և կյանքի բոլոր բնագավառներում կոմունիստների դերը բարձրացնելու հարցերը: Կենտկոմի հաշվետվության առթիվ համագումարի բանաձևում ասված է. «Հոգատարությունը կուսակցական շարքերի մաքրության մասին, որ յուրաքանչյուր կոմունիստ արժանապատվությամբ կրի և արդարացնի լենինյան կուսակցության անդամի կոչումը կուսակցության, բոլոր կուսակցական կազմակերպությունների կյանքի օրենքն է»:

Կենսագործելով համագումարի այս ցուցումը, մեր շրջանի կուսակցական կազմակերպությունները կձեռնարկեն կուսակցական-կազմակերպչական և քաղաքական-դաստիարակչական բոլոր միջոցները, որպեսզի միշտ բարձր լինի լենինյան կուսակցության անդամի կոչումը:

Հ. ԹՈՐՈՍՅԱՆ

ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմի քարտուղար

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՏԱՍՆԱՄՅԱ ՔԱՂԱՔԱՇԻՆՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

(1955—1965 թթ.)

Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ

Ճարտարապետ, վաստակավոր շինարար

Մոսկվայում կայացած շինարարների խորհրդակցությունը (1954 թ.) բացահայտելով նախագծման և շինարարական աշխատանքներում տեղ գտած թերությունները, նշեց սովետական ճարտարապետության զարգացման նոր ուղիներ: Քաղաքաշինության և բնակարանային շինարարության վերաբերյալ այդ խորհրդակցությունն առաջարկեց. ա) բնակելի շինարարությունը կենտրոնացնել քաղաքների կառուցապատումից ազատ հողամասերում՝ նոր բնակելի մասիվների ձևով. բ) մասսայական շինարարությունը կատարել մաքսիմալ մեքենայացման և հավաքովի եղանակով, տիպային նախագծերով, գ) առավել ուշադրություն նվիրել ճարտարապետության ֆունկցիոնալ և խնայողության խնդիրներին:

Անցած տասնամյակում (1955—1965 թթ.) Հայաստանում քաղաքաշինական մեծ աշխատանքներ են ծավալվել: Տասնամյակի առաջին կեսին բնակելի շինարարությունը կատարվում էր մեծ մասամբ փողոցների առանձին հատվածների, շենքերի խմբավորումներով, իսկ վերջին հինգ տարում՝ մասսիվների ձևով, ազատ հողամասերում: Այս ասպարեզում հանրապետության առաջին և բավական մեծ փորձի իրացումը, Երևանի Հրազդանի գեղատեսիլ ձորի հյուսիս-արևմտյան մասում կառուցված Աջափնյակն էր, որի շինարարությունն արդեն մոտենում է ավարտին. դա հնարավորություն կընձեռի որոշ եզրակացություններ անելու: Ըստ նախագծի Աջափնյակում կառուցվելիք 720 հազար քառակուսի մետր բնակելի մակերեսի կեսից ավելին արդեն կառուցապատված է, այստեղ ապրում են մոտ 50 հազար բնակիչ:

Այժմ Աջափնյակի առաջնահերթ մասն ունի բնակիչներին սպասարկելու բոլոր անհրաժեշտ օբյեկտները՝ դպրոցական, մանկական, առևտրի, կենցաղսպասարկման, կուլտուրական և այլ հիմնարկներ, ինժեներական սարքավորման բոլոր տեսակները, խաղահրապարակները, լողավազանները, կանաչապատվում են և՛ փողոցները, և՛ միկրոշրջանները:

Արդեն սկսվել է մասսիվի՝ հատակագծով նախատեսված հասարակական կենտրոնների կառուցումը: Նախապատրաստական աշխատանքներ են տարվում Կ. Հալաբյանի անվան փողոցից սկսվող Հրազդանի ձորն ընկած տարածությունում հանգստի վայր կառուցելու ուղղությամբ: Այս երկու կառույցների (հասարակական կենտրոնի և այգու) ավարտումով Աջափնյակը կամբողջա-



նա ու պատշաճ ձևավորում կստանա: Սակայն, նրա նոր միկրոշրջաններում դարձյալ ետ են մնում բարեկարգման և սպասարկման օբյեկտների կառուցման աշխատանքները: Չնայած դրան, Աջափնյակի բնակելի թաղամասերի բարեկարգման վիճակն ավելի բարվոք է, քան նույն ժամանակաշրջանում կառուցված մյուս բնակելի թաղամասերինը (Զեյթուն, Զարբախ, Շենգավիթ):

Հիշատակության արժանի է Նորքի նոր բնակելի մասսիվի կառուցումը, որն սկսվել է 1965 թվականին: Այս նոր թաղամասը, որը Աջափնյակի մեծությունն է ունենալու, իր բնակլիմայական պայմաններով թերևս ամենալավն է և ուշադրության արժանի: Այստեղ հատկապես հաջող ընթացավ նոր ճանապարհի (փողոց) կառուցումը: Ավանի նեղ, ոլորապտույտ ձորը լայնացել է, ուղղվել: Այժմ Երևանն ունի մի նոր լայն ու գեղեցիկ մայրուղի:

Սակայն բնակելի մասսիվի շինարարական և նախագծման աշխանքներում նկատվեցին թերություններ և շտապողականություն: Շենքերի մեծ մասը կառուցվեցին, այսպես կոչված, «կասետային» տիպի, հավաքովի երկաթբետոնե պանելներով, որոնք, չնայած նախագծողների մեծ ջանքերին, միօրինակ են և զիջում են Աջափնյակի տուֆե շենքերին:

Նորքի բնակելի զանգվածի նախագիծը ուշացումով քննարկվեց ճարտարապետների միությունում, ուր թեև ընդհանուր սխեման հավանության արժանացավ, բայց թերություններ նշվեցին միկրոշրջանների կառուցապատման ձևերում, տրանսպորտի սխեմայում, շենքերի միօրինակություններում: Եթե Երևաննախագծի կոլեկտիվը նույնպիսի եռանդ ցուցաբերի Նորքի զանգվածի նախագծման և շինարարության գործում, ինչպիսին նա ցուցաբերեց Ավանի ձորի ճանապարհի շինարարությունում, այս թաղամասը կարող է դառնալ Երևանի լավագույն բնակելի շրջանը:

Հանրապետությունում սկզբնական շրջանում ազատ թաղամասերում բնակարանային շինարարություն ծավալելու հետևանքով զգալիորեն կրճատվեց քաղաքների կենտրոնական մասերի շինարարությունը, դանդաղեց կենտրոնների վերակառուցումն ու բարեկարգումը: Այդ, գուցե պատճառաբանված, բայց սխալ մոտեցում էր: Հետագայում այն վերանայվեց և վերջին մի քանի տարիների ընթացքում վերսկսվեցին քաղաքների կենտրոնական մասերի վերակառուցումն ու բարեկարգումը: Բայց որոշ տեղերում այն կատարվեց համեմատաբար նոր կառուցված մենատնային շինարարության հաշվին կամ այդ թաղամասերի ազատ տարածություններում (Երևանում՝ Կոմիտասի փողոցի շրջակայքում, Զեյթունում) այն հաշվով, որ հետագայում (մենատները քանդելու հաշվին) նոր կառուցված բազմահարկ շենքերի համար կառուցվեն բակեր ու հասարակական շենքեր:

Մասսայական բնակարանային շինարարությունը հանրապետության բոլոր քաղաքներում ծավալվել է քաղաքաշինության նույն սկզբունքներով, ինտենսիվ շինարարությամբ, ծայրամասերում՝ ազատ հողամասերի վրա և քաղաքի կենտրոնների վերակառուցմամբ:

Լենինականում նոր բնակելի շինարարությունը կենտրոնացված է քաղաքի հյուսիսային մասի Անտառային մասսիվում, ինչպես նաև Մարալիկի, Ախալքալաքի խճուղիներին կից տարածություններում: Միաժամանակ սկսվել է քաղաքի կենտրոնի վերակառուցումը:

Ճարտարապետների միության վարչության և Լենինականի քաղսովետի գործկոմի միացյալ նիստում քննարկվեցին քաղաքի կառուցապատման նախագծերը, շինարարական ու բարեկարգման աշխատանքները: Նշվեց քաղաքի կենտրոնական մասի կառուցապատման նախագծի դեռ շատ սխեմատիկ, թերի լինելը, որը կարիք ունի հետագա մշակման:

Արագ տեմպերով կառուցվում է Կիրովականը: Այստեղ նույնպես քաղաքի կենտրոնական մասերում և ծայրամասերում ստեղծվում են բնակելի նոր թաղամասեր (Դիմացը): Տերիտորիալ անհարմարություններն ստիպում են, որ Կիրովականում կառուցվեն բարձրահարկ շենքեր, իսկ դրա համար անհրաժեշտ է կառուցապատման լավ նախագիծ, որը դեռևս չի ավարտված:

Ալավերդիում, Դեբետի կիրճում, անասելի դժվար պայմաններում կա-

ուցվել են բազմաթիվ բնակելի տներ, որոնք զուրկ են բակերից, գտնվում են սանիտարական վատ պայմաններում։ Գործադրած ջանքերի շնորհիվ արդեն քաղաքը տերիտորիալ անհարմարություններից ազատվելու հնարավորություն է ստացել։ Կառուցվել է Սանահինի սարահարթը տանող խճուղին, սկսվել է առաջին միկրոշրջանի շինարարությունը։

Դիլիջանում գեղեցիկ է ձևավորված քաղաքի կենտրոնը։ Նոր կառուցված լճակը և ծաղկանոցները կուրորտային տեսք են տվել նրան։ Սակայն նույնը չի կարելի ասել բնակարանային շինարարության մասին։

Հրազդանում հասարակական կենտրոնի օրիգինալ շենքի կառուցումով ամբողջանում են 2 բնակելի միկրոշրջան։ Սակայն չի զգացվում քաղաքի ընդհանուր միասնությունը, նրա առանձին մասերն անջատ են և ինքնուրույն, պատշաճ ուշադրություն չի նվիրվում բարեկարգմանը։ Նույնն է վիճակը Լուսավանի և Աբովյանի նոր միկրոշրջաններում։

Հոկտեմբերյանի կառուցապատման և բարեկարգման հարցը քննարկվեց ճարտարապետների միության քաղաքաշինության սեկցիայում։ Այդ քաղաքը զարթոնք է ապրում։ Մինչև վերջին տարիները Հոկտեմբերյանը կառուցապատվում էր բացարձակապես բնակելի մենատներով՝ տնամերձ հողամասերում։ Այժմ քաղաքում սկսվել է բարձրահարկ շենքերի շինարարությունը, որը ստեղծում է զգալի հակադրություն հին ու նոր կառույցների միջև։ Այդ առանձնապես նկատելի է քաղաքի կենտրոնական հրապարակի հանգույցում։ Անհրաժեշտ է օգնել հոկտեմբերյանցիներին կազմելու կենտրոնական մասի վերակառուցման նախագիծ։

Քաղաքաշինության սեկցիայում վերջերս քննարկվեցին նաև Հայգյուղնախագծում կազմված 3 սովխոզների բնակարանային շինարարության նախագծերը։ Պետք է խոստովանել, որ սովխոզների և գյուղերի քաղաքաշինության հարցերը դուրս են մնացել ինչպես ճարտարապետական հասարակայնության, այնպես էլ պետշինի ուշադրությունից։ Այսպես, օրինակ, 40-րդ սովխոզում (Աշտարակի շրջան) նախագծված է կառուցել միայն քաղաքատիպ 4 հարկանի շենքեր, իսկ 41-րդում (նույնպես Աշտարակի շրջան) երկհարկանի 8 բնակարանանոց կոտեջային (երկհարկանի մենատուն) տիպի շենքեր, բայց ընդհանուր բակով, կովանոցով ու զուգարանով, իսկ ամեն մի շենքի շուրջը յուրաքանչյուր ընտանիքի հատկացվելու է 1000 քմ մակերես ունեցող տնամերձ հողամաս, որն ընդհանուր բակի և կոտեջների հետ կազմում է 1250 քմ։ Ինչպես տեսնում ենք, նույն սոցիալական խմբավորում ունեցող, նույն գյուղատնտեսական շրջանում բնակեցման սիստեմը ծայրահեղորեն տարբեր է։

Հարց է ծագում. եթե սովխոզի յուրաքանչյուր աշխատողին տրվում է 1250 քմ հողամաս, անասուն պահելու հնարավորություն, էլ ինչ իմաստ ունի նրանց մի ընդհանուր շենքում բնակեցնել. չէ որ 1250 քմ հողամասի վրա ազատ կտեղադրվեն և՛ մենատունը, և՛ կովանոցը, և՛ մյուս օժանդակ հարմարանքները։ Բացի այդ, եթե սովխոզի (№ 40) աշխատողին թույլատրվում է ունենալ սեփական տնտեսություն, հարմա՞ր է արդյոք նրան բնակեցնել 4 հարկանի շենքում, անջատ իր տնտեսությունից։ Սրանք ո՛չ միայն քաղաքաշինության, այլև կարևոր սոցիալական պրոբլեմներ են, որոնցով պետք է լուրջ զբաղվել։

Տասնամյակի ընթացքում մեծ աշխատանք է կատարված քաղաքների ինժեներական սարքավորման՝ ջրմուղ-կոյուղու, հատկապես գազամատակարարման, ճանապարհաշինարարության, ջերմամատակարարման և այլ բնագավառներում։ Բայց, չնայած դրան, անհրաժեշտ է առավել ուշադրություն նվիրել այդ գործին, քանի որ ջրի պրոբլեմը շատ քաղաքներում լրիվին չի լուծված և անբավարար է ընթանում կոյուղու ցանցի ընդարձակումը։

Առանձնապես ուրախալի են մեր քաղաքների հաջողությունները կանաչապատման և ջրային մակերեսների (լճակների) ստեղծման ասպարեզում։ Այսպես, 10—15 տարի առաջ Դեբետի ձորի երկու լանջերն էլ Ալավերդիում լերկ ժայռեր էին։ Այժմ պղնձաքիմիական կոմբինատի մոտակա ժայռերն ան-



գամ կանաչով են ծածկված, իսկ աջափնյա մասում արդեն խիտ անտառով է պատված։ Կանաչապատվել են նաև այնպիսի քաղաքներ, ինչպես Կամոն, ուր առաջներում կանաչը շատ քիչ էր։ Քաղաքներում ամենուրեք կառուցվում են ջերմոցներ, ստեղծվում տնկարաններ, կանաչապատման և ծաղկապատման համար՝ անհրաժեշտ տնտեսություններ։ Երևանում կառուցվել են մի շարք ջրավազաններ իրենց պուրակներով (Մոսկովյան փողոցի, Կոմիտասի, Թբիլիսիի պողոտաների վրա, օպերայի բակում), որոնք հարստացրել են քաղաքի տեսարանները և հանգստի հաճելի վայրեր են. սակայն դեկորատիվ ջրավազանների հետ մեկտեղ անհրաժեշտ է կառուցել լողավազաններ։

Հանրագումարի բերելով անցած տասնամյակի ընթացքում հանրապետությունում կատարված քաղաքաշինության աշխատանքները, կարելի է ասել, որ և հաջողությունները, և՛ թերությունները ընդհանուր են բոլոր քաղաքների համար, այդ պատճառով էլ կարիք չկա կանգ առնել ամեն մի բնակավայրերի վրա առանձին։

Ամենամեծ հաջողությունն այդ ժամանակաշրջանում մասսայական բնակելի շինարարության աննախընթաց ծավալումն էր և ժամկետների կրճատումը։ Եթե առաջներում նույնիսկ ոչ-մեծ բնակելի շենքերը կառուցվում էին երկու սեզոնում, այժմ կառուցվում են մի քանի ամսում։ Այս հնարավոր դարձավ բնակելի շինարարությունը ազատ հողամասերում, մասսիվների ձևով տեղադրելու, շինարարության պրոցեսների մեքենայացման և տիպային նախագծերի օգտագործման շնորհիվ։ Ճիշտ է, տիպային նախագծերի ոչ հաջող կիրառումն ունեցել է նաև որոշ բացասական հետևանքներ, սակայն չպետք է անտեսել դրանց դրական խոշոր արդյունքները։ Տիպային նախագծերի մասսայական օգտագործման շնորհիվ է, որ հնարավորություն ընձեռվեց ունիֆիկացնելու կոնստրուկցիաները, ծածկերը, սյուները, սանհանգույցները, լուսամուտները, դռները, դրանք պատրաստել գործարանային եղանակով, և շինարարության մեջ կիրառել հավաքովի սկզբունքը, որով շինարարությունը պերծավ պատահական ցածրորակ նախագծերից։

Նշված հաջողությունների հետ մեկտեղ, այդ ժամանակաշրջանի բնակելի շինարարությունն ունի նաև բնորոշ թերություններ։ Այսպես. բնակելի թաղամասերի կառուցապատման պերիմետրալ ձևը տասնամյակում փոխարինվեց «տողային» (строчная) և «ազատ» կառուցապատման ձևերով, որոնք քաղաքաշինության տեսակետից ավելի ճկուն են և լավ հարմարվում են բարդ տեղանքին։ Սակայն, կառուցապատման այդ նոր ձևերը, մի կողմից՝ տիպային նախագծերի սահմանափակության և միօրինակության և, մյուս կողմից՝ դրանց դեռևս լավ չտիրապետելու պատճառով, իրենց ճարտարապետական արտահայտչականությամբ չհասան անհրաժեշտ մակարդակի, չօգտագործվեցին այդ նոր ձևերի պրոգրեսիվ հնարավորությունները։

Կառուցապատման տողային սկզբունքի հետևանքով, մեծ մասամբ, շենքերի միօրինակ շարաններ ստեղծվեցին, որոնք դասավորված են փողոցներին ուղղահայաց, իսկ ազատ կառուցապատման սկզբունքը որոշ ճարտարապետների կողմից ընկալվեց որպես առհասարակ ազատ սիստեմ՝ շենքերի անկանոն դասավորություն։ Մինչդեռ, ազատ կառուցապատման սկզբունքը ավելի բարձր մակարդակի՝ օրինաչափությունների սիստեմ է, շատ ավելի արտահայտիչ, քան կառուցապատման այլ սիստեմները։

Երկրորդ և, թերևս, ամենամեծ թերությունն այն է, որ միևնույն տիպային շենքերի և միևնույն կառուցապատման ձևերի օգտագործման հետևանքով բոլոր քաղաքներում ստեղծվեց նրանց դիմազրկման, ինքնուրույն կերպարը կորցնելու ահավոր վտանգ։ Գտնվելով Երևանի Աջափնյակում, Լենինականի՝ Անտառայինում, Կիրովականի՝ Դիմացում, Լուսավանի, Հոկտեմբերյանի և շատ այլ քաղաքների բնակելի նոր թաղամասերում, մոռանում ես, թե ո՞ր քաղաքում ես, ո՞ր թաղամասում. ամենուր նույն շենքերը, դպրոցները, մանկապարտեզները, կինոթատրոնը, նույն դասավորությունը և, վերջապես, նույն արթիկ-տուֆը։ Թեև առանձին վերցրած այդ կոմպլեքսները,

ինքնըստինքյան, վատ չեն, բայց երբ կրկնվում են ամեն մի քաղաքում ու թաղամասում՝ անհրապույր են, անհանդուրժելի:

Նշված թերություններից խույս տալու համար անհրաժեշտ է բարձրացնել հատակագծման և կառուցապատման նախագծերի մակարդակը, լուրջ փոփոխություններ մտցնել մասսայական տիպային շենքերի նախագծման մեջ, ստեղծել միօրինակությունից ձերբազերծվելու առավել հնարավորություններ: Ամենաարդյունավետ միջոցը կլինի տիպային շենքերի փոխարեն անցնել տիպային տարրերի կառուցմանը (սեկցիաների, շենքերի հատվածների, առանձին կոնստրուկցիաների և այլն), որը հնարավորություն կընձեռի ստանալ տարբեր կոմպոզիցիաներ, որոնք կբավարարեն քաղաքաշինության կոնկրետ պահանջները:

Ամեն մի քաղաք պետք է ունենա քաղաքաշինության իր ուրույն դեմքը, որը համապատասխանի այդ քաղաքի բնակլիմայական պայմաններին, ֆունկցիոնալ նշանակությանը (արդյունաբերական քաղաք, շրջկենտրոն, կուրորտ և այլն), քաղաքի պատմությանը (պատմական հուշարձաններ), ճարտարապետական քաղաքաշինության յուրահատկություններին, բնակլիմայական պայմաններին: Այսպես, եթե Երևանում բնակելի շենքերի կառուցապատմամբ պետք է ապահովել բակերի բաց, ազատ օդափոխության հնարավորությունները , այնտեղ ունենալ լողավազաններ, ապա Լենինականում, ընդհակառակը, անհրաժեշտ է քամիներից պաշտպանված փակ դիրք, իսկ լողավազաններ ամենևին էլ պարտադիր չեն: Անհրաժեշտ է, որ մայրաքաղաքը լինի վեհաշունչ, մեծամասշտաբ, ունենա մոնումենտալ հրապարակներ, հասարակական շենքեր, իսկ կուրորտային քաղաք Դիլիջանը՝ լինի կենսուրախ, կանաչապատված, պահպանվեն բնական գեղեցկությունները, ունենա թեթև ճարտարապետական ոճ. Ալավերդին՝ գործարար շունչ, աշխատանքի ռիթմ, զգացմունք: Սևանում զգացվի լիճը, էջմիածնում իշխեն պատմական հուշարձանները, Հոկտեմբերյանում՝ ծաղկող այգիները: Միօրինակությունը խախտելու միջոցներից մեկն էլ զանազան, հատկապես, տեղական շինանյութերի օգտագործումն է՝ տարբեր որակի և գույների հարուստ բազմազանությամբ:

Ինքնատիպության պրոբլեմը ո՛չ միայն էսթետիկական, այլև ավելի մեծ չափով ֆունկցիոնալ նշանակություն ունեցող պրոբլեմ է: Չի կարելի նույն տիպային բնակարանները նույն պատշգամբներով, հարկայնությամբ ու կառուցապատման և բարեկարգման ձևերով կառուցել բոլոր քաղաքներում, որովհետև մեզ մոտ, ինչպես արդեն նշել ենք, չնայած փոքր տարածության, կլիմայական պայմանները տարբեր են: Այս ամենից հետևում է, որ տարբեր բնակլիմայական և այլ պայմաններից ելնելով, անհրաժեշտ է նոր տիպերով հարստացնել բնակելի և մասսայական հասարակական շենքերի տիպային նախագծերի կազմը, մշակել հատուկ տիպեր կուրորտների և այլ սպեցիֆիկ բնակավայրերի համար, բարձրացնել հատակագծման կուլտուրան, ուժեղացնել պետշինի հսկողությունը:

Չպետք է անտեսել տասնամյակի ընթացքում երևան եկած մի թերություն ևս. այդ, այսպես կոչված, «թղթային» նախագծման երևույթն է (որը բնորոշ էր քսանական թվականներին). այսինքն՝ որոշ նախագծեր արվում են կտրված իրական պայմաններից, հնարավորություններից: Գծագրերը, մակետները գեղեցիկ են, բայց, ցավոք, մնում են միայն որպես նախագիծ: Աբովյան քաղաքի համար արված են մի քանի հետաքրքրական նախագծեր, գեղեցիկ մակետներով, բայց իրական շինարարությունը տեղում բոլորովին ուրիշ ձևով է մարմնանում: Այս երևույթն ունի երկու պատճառ. մեկը՝ նախագծողների իրական պայմաններից կտրվելն է, մյուսը՝ կառուցող կազմակերպությունների անփոփոխությունը. երկուսն էլ շատ վտանգավոր են:

Տասնամյակի քաղաքաշինության կարևոր դրսևորումներից մեկն է նաև հանրապետության քաղաքների կենտրոնական մասերի ինտենսիվ վերակառուցումը: Երևանում, Լենինականում, Կիրովականում և այլ քաղաքներում կառուցվեցին նոր հրապարակներ, բացվեցին նոր փողոցներ, հին շենքերի հաշվին կենտրոնական մասերում ստեղծվեցին կոմպլեքսներ:



Այս հարցում եղան որոշ դժվարություններ. վերակառուցումը համընկավ ճարտարապետության ոճային, շենքերի մասշտաբների ու հարկայնության զգալի փոփոխությունների հետ, որով խզման վտանգ ստեղծվեց մինչ այդ գոյություն ունեցող շենքերի ու կոմպլեքսների և նորերի միջև: Սխալ կլիներ, իհարկե, ճարտարապետական միասնությունը պահպանելու համար կրկնել մինչ այդ կառուցված շենքերի ճարտարապետական ձևերը, բայց նույնքան սխալ կլինի հաշվի չառնել դրանք:

Դժվարություններից մեկն էլ վերակառուցման ընթացքում պատմական նշանակություն ունեցող որոշ հին շենքերի պահպանման խնդիրն է: Երևանում, Լենինականում, էջմիածնում, Կամոյում, Գորիսում և մյուս համեմատաբար հին բնակավայրերում կան բնակելի և այլ հին շենքեր ու կառուցվածքներ, որոնք այդ քաղաքների պատմությունն են բացահայտում կամ ժողովրդական ստեղծագործության լավագույն նմուշներ են: Վերջին տարիներին (ինչպես և նախկինում) սխալ են թույլ տրվել, անխնա քանդելով դրանք: Վերակառուցման ընթացքում պատմական արժեք ներկայացնող շինությունները ոչ միայն պետք է պահպանվեն, այլև օգտագործվեն (որոշ վերանորոգման միջոցով) և մտցվեն նոր ստեղծվող կառուցապատման կոմպլեքսի մեջ, որը մեծ չափով կնպաստի քաղաքների ինքնատիպությանը, կտա նրանց առանձնահատուկ հմայք: Սակայն, դժբախտությունն այն է, որ կենտրոնների վերակառուցման նախագծերը ետ են մնում կառուցողական աշխատանքներից: Այսպես. Երևանի կենտրոնի նախագիծը դեռևս չի ավարտված, իսկ վերակառուցումն ընթանում է արագ թափով. նույն դրությունն է Լենինականում, Կիրովականում, էջմիածնում, Հոկտեմբերյանում, Կամոյում և այլուր:

Հանրապետության քաղաքների մեծ մասն անցած տասնամյակում որակապես փոխվեց. փոխվեցին կառուցումների հարկայնությունը, բարեկարգման և կառուցապատման ձևերը, փողոցները, հրապարակները: Քաղաքներն ստացան նոր ձևեր, ընդլայնվեցին նրանց մասշտաբները: Դրանցից շատերը թեև վաղուց քաղաք էին, այս շրջանում սկսեցին իրոք «քաղաքանալ» (օրինակ, Դիլիջանը, Իջևանը, Կամոն, Հոկտեմբերյանը և այլն), որը կարևոր շրջան է դրանց զարգացման համար: Որպեսզի ամեն մի քաղաք գտնի զարգացման իր ուրույն ուղին, լինի պատմականորեն նախապատրաստված և համապատասխանի սպեցիֆիկ պայմաններին, պետք է ճիշտ ընթացք տալ դրանց:

Քանակական և որակական աճի մեծ դժվարությունների առջև է կանգնած մեր մայրաքաղաք Երևանը: Բնակչության թիվը 500 հազարից անցնելուց հետո այն համաշխարհային մասշտաբով մտավ խոշոր քաղաքների շարքը: 1966 թվականի սկզբին Երևանում ՀՍՍՀ կառավարությունը, ՍՍՀՄ պետշինի մասնակցությամբ, հաստատեց Երևանի նոր գլխավոր հատակագծի տեխնիկատնտեսական հիմնավորման նախագիծը: Դրանով Երևանի բնակչության «հեռանկարային թիվը 900 հազար է նախատեսված: Սկզբունքորեն համաձայնելով այդ թվի հաշվարկման մեթոդին, հարկ ենք համարում նշել հետևյալը:

Մեծ քաղաքների բնակչության աճը զորեղ գործոն է: Այսպես, 1980 թվականից հետո, եթե Երևանի բնակչության աճը անգամ 2 տոկոս հաշվվի, ապա այն 35 տարում կհասնի 2 միլիոնի, իսկ նրանից հետո ավելի կարճ ժամանակում, 3 միլիոնի: Կան մարդիկ, որոնք հրապուրվելով այդ հեռանկարներով, ցանկանում են մայրաքաղաքը տեսնել որքան կարելի է մեծ: Մենք չենք բաժանում այդ կարծիքը և գտնում ենք, որ կառավարությունը և պետպլանը պետք է արդյունավետ միջոցներ ձեռնարկեն սահմանափակելու Երևանի բնակչության աճը: Ինքնըստինքյան հասկանալի է, որ խոսքը չի վերաբերում բնական աճին, այլ բնակչության մեխանիկական կրճատմանը, այսինքն՝ բնակչության հոսքին՝ Երևանից հանրապետության մյուս քաղաքները: Գերադասելի է ունենալ մեկ միլիոնանոց մայրաքաղաք և դրա հետ էլ հինգ՝ երկու հարյուր հազարանոց քաղաքներ, քան մեկ մայրաքաղաք 2 միլիոն բնակչությամբ: Այդ իրականացնելու համար անհրաժեշտ է հետևողականորեն կիրառել մեծ քաղաքների գերաճումը կանխելու վերաբերյալ կոմունիստական կու-

սակցության ծրագրում առաջադրված քաղաքաշինության սկզբունքները: Աշ-
խարհի բոլոր քաղաքաշինարարները, տնտեսագետները, սոցիոլոգները և հի-
գիենիստները այժմ այն կարծիքի են, որ շատ մեծ քաղաքները բնակեցման
լավագույն ձևը չեն:
Երևանի գլխավոր հատակագծի երկրորդ, նույնպես մեծ դժվարություններ
Երևանի գլխավոր հատակագծի երկրորդ, նույնպես մեծ դժվարություններ
հարուցող պրոբլեմը, տրանսպորտի կազմակերպումն է: Լեռնային բարդ ռե-
լիեֆի, խոր ձորերի և պտղատու այգիների առկայությամբ, քաղաքի տերիտո-
րիան՝ չնայած նախագծի կոմպակտությանը, բավական տարածված է, ուր
առանձին բնակելի շրջաններ զգալիորեն անջատված են՝ ինչպես Շահումյանն
ու Աջափնյակը, Նորքի նոր բնակելի մասսիվը: Դրա հետ մեկտեղ, բնակելի
առանձնացած շրջաններում չկան արդյունաբերական կամ այլ օբյեկտներ
(Աջափնյակում, Նորքի նոր մասսիվում) և բնակչությունը տեղում աշխա-
տանքով չի ապահովված: Նման դիրքավորումը պահանջում է բնակչության
մեծ տեղաշարժեր քաղաքի տարբեր մասերը, որը հնարավոր է տրանսպորտի
հզոր միջոցների առկայությամբ: Իսկ Երևանը չունի այդ հնարավորությունը:
Տրամվայը, որը համեմատաբար մեծ հնարավորություններ ունի, անհիմն
նոսրացվեց, իսկ տրոլեյբուսն ու ավտոբուսն ի վիճակի չեն ապահովելու քա-
ղաքի նորմալ երթևեկությունը: Նոր կազմվող գլխավոր հատակագծում
կենսական խնդիր է մայրաքաղաքում նորմալ երթևեկության համար որոնել և
գտնել տրանսպորտի ժամանակակից առավել արդյունավետ տեսակներ: Առա-
ջարկություն կա նաև, այսպես կոչված, մոնոռելսի (գետնից բարձր, ռելսից
կախված վագոնների) անցկացման մասին, սակայն հիշյալ վարիանտներից
ու առաջարկություններից և ոչ մեկը վերջնականապես հիմնավորված չէ:
Անհրաժեշտ է, որ այդ խնդիրը կարճ ժամանակում իր վերջնական լուծումը
ստանա, որովհետև տրանսպորտի դրությունը Երևանում գնալով վատանում է:
Երևանի կենտրոնի կառուցման էսքիզային նախագիծը (կազմված Երե-
վաննախագծում) մեծ իրադարձություն էր, որը քննարկվեց ճարտարապետնե-
րի միության մեջ, աշխույժ վիճաբանություններ հարուցելով: Ըստ այդ նա-
խագծի, զգալիորեն բարձրանալու է կենտրոնի կառուցապատման հարկայ-
նությունը, կիրառվելու են նոր ձևեր: Ընդհանուր առմամբ նախագծում ըն-
դունված հիմնական սկզբունքները ճիշտ են, թերությունները բխում են միայն
մասնավոր լուծումներից: Հիմնական դժվարությունն այն է, որ հարկայնու-
թյան բարձրացմամբ խզում չստեղծվի քաղաքի կենտրոնում կառուցված շեն-
քերի, հատկապես Լենինի հրապարակի և կառուցվելիք շենքերի միջև, որ
դրանք ոչ միայն չկազմալուծեն ստեղծված հատակագծային կառուցվածքն ու
միասնությունը, այլ նպաստեն, ամրապնդեն այդ միասնությունը: Խզման
վտանգը կարող է ստեղծվել ոչ այնքան նոր շենքերի բացարձակ չափերի ա-
վելացմամբ և ոճային տարբերությամբ, որքան նրանց կոմպոզիցիաների
սխալ դասավորման և մասշտաբայնության ընդհանրության խախտմամբ,
որոնց վրա և պետք է կենտրոնացնել ողջ ուշադրությունը:
Մեր կարծիքով, այն մեծ ուշադրությունը, որ նվիրվում է քաղաքների
գլխավոր հատակագծերի կազմմանը, կառուցապատման նախագծերի բացա-
կայության պատճառով, կորցնում է իր օգտակարությունն ու գործնական
նշանակությունը: Անհրաժեշտ է, թերևս, գլխավոր հատակագծերի թեթևաց-
ման և պարզեցման միջոցով ուշադրությունն ավելի կենտրոնացնել կառուցա-
պատման նախագծերի վրա:
Այս տասնամյակը կարևոր ժամանակաշրջան էր հանրապետության քա-
ղաքների զարգացման համար. այդ քաղաքաշինության մեծ իրադարձություն-
ների շրջան էր, որի ընթացքում զգալի չափով բավարարվեց բնակարանային
սուր պահանջը, բարձրացավ քաղաքների բարեկարգման մակարդակը և հիմք
դրվեց նոր քաղաքաշինության: Հայաստանի ճարտարապետները, նախագծա-
յին ինստիտուտները և պետշինը պետք է ամրապնդեն ձեռք բերված հաջո-
ղությունները և միջոցներ ձեռնարկեն թերությունները վերացնելու համար:

# ԿԱՊԻՏԱԼ ՆԵՐԴՐՈՒՄՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՈՒՄ

Բ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

Տեխնիկական գիտությունների թեկնածու

Կապիտալ ներդրումներն արտադրության զարգացման հիմնական գոր-ծոններից են: Դրանց ծավալը տարեցտարի զգալի չափով աճում է: Մեր հանրապետությունում 1958 թվականին դրանք կազմել են 158 մլն ռուբլի, իսկ 1965 թվականին՝ 405 մլն ռուբլի: Յոթնամյակի տարիներին հանրապետությունում 48 տոկոսով ավելի կապիտալ ներդրումներ են իրացված, քան սովետական իշխանության նախորդ տարիներին: Կապիտալ ներդրումների աճի տարեկան միջին տեմպերը յոթնամյակի տարիներին կազմել են ավելի քան 14 տոկոս:

Կապիտալ ներդրումները աճել են հատկապես հանրապետության արդյունաբերության մեջ (1958 թ. 71 միլիոն ռուբլուց 1965 թվականին հասել են 184 մլն ռուբլու), որի շնորհիվ մեծ չափով ավելացել են կառուցված և գործարկված արտադրական խոշոր ձեռնարկությունները: Եթե 1958 թվականին գործարկվել է պետական միայն 8 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն, ապա 1964-ին՝ 18: Յոթնամյակի տարիներին կառուցվել և գործարկվել են շուրջ 300 արդյունաբերական նոր ձեռնարկություններ ու արտադրամասեր:

Չնայած կապիտալ ներդրումների և արտադրական կարողությունների աճին, կապիտալ շինարարության արդյունքները մեր հանրապետությունում դեռևս ցածր են:

Ստորև բերվող աղյուսակը պատկերում է 1959—1964 թվականներին Հայաստանի արդյունաբերությունում կապիտալ ներդրումների արդյունավետությունը (տոկոսներով):

| | 1959 | 1960 | 1961 | 1962 | 1963 | 1964 |
|---|---|---|---|---|---|---|
| ԿԱՊԻՏԱԼ ՆԵՐԴՐՈՒՄՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՑՈՒՑԱՆԻՇԸ | | | | | | |
| ա) ըստ հասարակական արդյունքի | 155 | 273 | 120 | 87 | 86 | 61 |
| բ) ըստ ազգային եկամտի | 44 | 62 | 60 | 44 | 59 | 46 |
| գ) ըստ շահույթի | 10 | 13 | 5 | 17 | 22 | 12 |

Հասկանալի է, որ հասարակական արդյունքի, ազգային եկամտի և շահույթի ամբողջ աճը միայն նոր կապիտալ ներդրումների հետևանք չէ։ Աճի մի մասը կազմակերպական-տեխնիկական և այնպիսի միջոցառումների իրագործման արդյունք է, որոնք նոր կապիտալ ներդրումներ չեն պահանջում։ Սակայն անջատել այդ միջոցառումների շնորհիվ ստացվող արդյունքը դժվարին խնդիր է։ Ուստի, հասարակական արդյունքի, ազգային եկամտի և շահույթի աճը պայմանականորեն վերագրվում է տվյալ տարվա նոր կապիտալ ներդրումներին։

Ինչպես ցույց են տալիս աղյուսակի տվյալները, կապիտալ ներդրումների արդյունավետության ցուցանիշը արդյունաբերությունում, որպես հասարակական արդյունքի և կապիտալ ներդրումների հարաբերություն, սկսած 1960 թվականից, անընդհատ, զգալի չափով նվազում է։ Այն 1964 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, փոքրացել է 2,5, իսկ 1960 թվականի համեմատությամբ՝ 4,5 անգամ։ Համարյա անընդհատ նվազում է նաև ազգային եկամտի աճի և նույն տարվա կապիտալ ներդրումների հարաբերությունը. 1964 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, այն նվազել է 22 տոկոսով, իսկ 1960-ի համեմատությամբ՝ ավելի քան 1,7 անգամ։

Արդյունավետության այդպիսի նվազումը նշանակում է, որ հանրապետության արդյունաբերությունում հասարակական արդյունքի և ազգային եկամտի աճը կապիտալ ներդրումների մեկ ռուբլու հաշվով իջնում է և ժողովրդական տնտեսության զարգացման բարձր տեմպերը պահպանելու համար անհրաժեշտ է աստիճանաբար ավելացնել ազգային եկամտի կուտակման նպատակով օգտագործվող մասը։ 1964 թվականին, եթե պահպանվեր 1960-ի արդյունավետությունը, Հայաստանի արդյունաբերությունում կարելի էր ապահովել հասարակական արդյունքի 4,5 անգամ ավելի աճ, իսկ ազգային եկամտինը՝ 1,7 անգամ։ Այդ նշանակում է, որ միայն արդյունավետության իջեցման պատճառով հասարակությունը 1964 թվականին չի ստացել 335 մլն ռուբլու հասարակական արդյունք և 40 մլն ռուբլու՝ ազգային եկամուտ։

Շահույթի աճի տեմպերն արդյունաբերությունում, ինչպես երևում է աղյուսակի տվյալներից, կապիտալ ներդրումների տեմպերից բարձր են. դրա հետևանքով արդյունավետության՝ ըստ շահույթի որոշված ցուցանիշը, յոթնամյակի ընթացքում աճի տենդենց ունի, սակայն 1964 թվականին այդ ցուցանիշը, նախորդ տարվա համեմատությամբ, նվազում է ավելի քան 1,8 անգամ։

Կապիտալ ներդրումների մեկ ռուբլու հաշվով ազգային եկամտի և հասարակական արդյունքի աճի աստիճանական նվազումն ունի մի շարք պատճառներ. դրանք են՝ ա) հաշվման մեթոդով պայմանավորված, բ) օբյեկտիվ և գ) սուբյեկտիվ պատճառները։

Կապիտալ ներդրումների արդյունավետությունը սովորաբար որոշվում է որպես տվյալ տարում հասարակական արդյունքի, ազգային եկամտի կամ շահույթի աճի հարաբերությունը՝ նույն տարվա կապիտալ ներդրումներին։ Սակայն, ոչ բոլոր կապիտալ ներդրումներն են ուղղվում արտադրության աճ կամ արտադրական ծախքերի տնտեսում ապահովելու նպատակին։ Դրանց մի մասը, որպես կանոն, ծախսվում է տվյալ տարում մաշման հետևանքով շարքից դուրս եկող արտադրամիջոցները նորերով փոխարինելու ու վերականգնելու նպատակով։ Արդյունավետությունը ճիշտ գնահատելիս անհրաժեշտ է տարեկան կապիտալ ներդրումներից հանել այն մասը, որը ծախսվում է արտադրական հզորությունների մակարդակը պահպանելու համար։ Սակայն, այդպիսի հաշվումները կապված են դժվարությունների հետ։ Ուստի, դրանք կամ չեն կատարվում կամ կատարվում են միայն պարզեցված ձևով։

Հաշվման մեթոդով պայմանավորված մյուս պատճառն այն է, որ ծախսումների արդյունքը ստացվում է ոչ թե միջոցները ծախսելու տարում, այլ որոշ ժամանակ անց։ Այդ ժամանակը, որը գրականության մեջ անվանում են լագ, կարող է ունենալ տարբեր մեծություն։ Միության մեջ ժամանակի լագը մի-



ջին հաշվով կազմում է 2,5—3 տարի։ Քանի որ տարեկան կապիտալ ներդրումների բացարձակ ծավալը անընդհատ աճում է, ապա լագի առկայությունը կհանգեցնի նրան, որ կապիտալ ներդրումների արդյունավետությունը, որոշված նույն տարում ստացված արդյունքով, իրական արդյունավետությունից ցածր կլինի (բանն այն է, որ վերցրած արդյունքը կներկայացնի մի քանի տարի առաջ կատարված ավելի փոքր ծավալով կապիտալ ներդրումների միջոցով ստացվող արդյունքը)։ Լագի ճիշտ հաշվարկը նույնիսկ առանձին ձեռնարկություններում մեծ դժվարություն է ներկայացնում, իսկ առանձին ճյուղի կամ ժողովրդական տնտեսության համար այդպիսի հաշվարկ անհնար է կատարել։ Հաշվումներում լագը պարզեցված ձևով հաճախ ընդունվում է մեկ տարի, որը նույնպես հարցը չի լուծում։

Արդյունավետության իջեցման օբյեկտիվ պատճառներից կարելի է նշել հանրապետության տնտեսության ճյուղային կառուցվածքում տեղի ունեցող փոփոխությունները։ Բանը նրանում է, որ կապիտալ ներդրումները տնտեսության տարբեր ճյուղերում տարբեր արդյունավետություն ունեն, որը հիմնականում գների քաղաքականության արդյունք է։ Եվ քանի որ Հայաստանում յոթնամյակի ընթացքում ավելի բարձր տեմպերով զարգացել են քիմիական արդյունաբերությունը, մեքենաշինությունը և շինանյութերի արտադրությունը, այսինքն՝ այն ճյուղերը, ուր կապիտալ ներդրումներն ունեն համեմատաբար ցածր արդյունավետություն, ապա միջին արդյունավետությունը հանրապետությունում, այս պատճառով, որոշ չափով իջել է։ Օբյեկտիվ պատճառներից է նաև մշակման համար առավել բարենպաստ պայմաններում գտնվող բնական հարստությունների աստիճանական սպառումը, որի հետևանքով հարկ է լինում սկսել համեմատաբար պակաս բարենպաստ պայմաններում գտնվող հարստությունների օգտագործումը։

Կապիտալ ներդրումների արդյունավետության իջեցումը մեծ չափով պայմանավորված է նաև սուբյեկտիվ պատճառներով։ Այսպես, տարեցտարի ավելանում է տարեկան գործարկվող հիմնական ֆոնդերի ծավալը։ 1959 թվականին հանրապետության արդյունաբերությունում գործարկվել են 65 մլն ռուբլու հիմնական ֆոնդեր, իսկ 1963 թվականին՝ 124 մլն ռուբլու (այսինքն՝ 1,9 անգամից ավելի)։ Բայց 1965 թվականի հիմնական ֆոնդերի գործարկումը խիստ նվազել է, կազմելով 77,2 մլն ռուբլի։ Հիմնական ֆոնդերի գործարկման պլանը սիստեմատիկաբար թերակատարվում է. 1965 թվականին այն կատարվել է միայն 64,6 տոկոսով։ Մի շարք ճյուղերում այդ տոկոսը շատ ավելի ցածր է։ Այսպես, գունավոր մետալուրգիայում այն կազմել է 27,3, շինանյութերի արդյունաբերությունում՝ 43,7 տոկոս։ Պլանով նախատեսված 78 արտադրական օբյեկտներից, 1965 թվականին նախատեսված հզորություններ գործարկվել են միայն 40 օբյեկտներում, 16-ում՝ հզորությունը գործարկվել է մասնակիորեն, իսկ 22-ում՝ ոչինչ չի գործարկվել։

Հիմնական ֆոնդերի և արտադրական հզորությունների գործարկումը շինարարական կազմակերպությունների աշխատանքի կարևորագույն ցուցանիշն է, սակայն տվյալները ցույց են տալիս, որ շինարարական-մոնտաժային աշխատանքների պլանի կատարումը, համարյա բոլոր տարիներին, զգալի չափով բարձր է, քան գործարկմանը։ Այսպես, 1965 թվականին հանրապետության արդյունաբերությունում կապիտալ ներդրումների պլանը կատարված է 90,7, իսկ հիմնական ֆոնդերի գործարկմանը՝ միայն 64,6 տոկոսով։ Որոշ ճյուղերում այդ տարբերությունն ավելի մեծ է։ Գունավոր մետալուրգիայում կապիտալ ներդրումների և հիմնական ֆոնդերի գործարկման պլանի կատարումը համապատասխանաբար եղել է 80,8 և 27,3, իսկ շինանյութերի արդյունաբերությունում՝ 93,6 և 43,7 տոկոս։ Չկա մի ճյուղ, ուր 1965 թվականին հիմնական ֆոնդերի գործարկման պլանի կատարումը ավելի բարձր լինի, քան կապիտալ ներդրումներինը։

Նման վիճակի հիմնական պատճառներից մեկն այն է, որ շինարարության ընթացքի մասին դատում և շինարարների աշխատանքը գնահատում են կատարված շինմոնտաժային աշխատանքների ծավալով։ Անհրաժեշտ է շինա-

բարությունում, ինչպես դա կատարվում է արտադրության այլ ճյուղերում, աշխատանքը գնահատել ելնելով շինարարության վերջնական արդյունքից, այսինքն՝ շինարարական կազմակերպության վարձատրումը կատարել ըստ գործարկված օբյեկտների և արտադրական հզորությունների։ Նման մոտեցումը նյութապես կշահագրգռեր և կնպաստեր հզորությունների գործարկման արագացմանը, որը կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման կարևոր պայմաններից է։

Հիմնական ֆոնդերի գործարկումը ձգձգելու հետևանք է անավարտ շինարարության մեծ ծավալը։ Եթե 1958 թվականին Հայաստանի արդյունաբերությունում անավարտ շինարարությունը կազմել է 59,3 մլն ռուբլի, ապա 1964 թվականին այն կազմել է 164 մլն ռուբլի, այսինքն աճել է մոտ 2,8 անգամ։ Այն աճել է նաև տարեկան կապիտալ ներդրումների նկատմամբ (տոկոսներով). 1958 թվականի 100 տոկոսից 1964 թվականին հասել է 115 տոկոսի։ Որոշ ճյուղերում այդ հարաբերությունն ավելի բարձր է (1964 թվականին գունավոր մետալուրգիայում այն կազմել է 171,5, իսկ շինանյութերի արդյունաբերությունում՝ 157 տոկոս)։

Անավարտ շինարարության զգալի մասը չտեղակայված սարքավորումն է, որի ծավալը հանրապետությունում 1964 թվականի սկզբին եղել է 30,2 մլն ռուբլի, 1965-ին՝ 43,2, իսկ 1966 թվականի սկզբին 55,4 մլն ռուբլի, այսինքն՝ երկու տարվա ընթացքում աճել է 80 տոկոսով։

Անավարտ շինարարության մեծ ծավալն ու արագ աճը վկայում են, որ կապիտալ ներդրումները երկար ժամանակ գտնվում են սառած վիճակում, չեն ապահովում նախատեսված արդյունքը։ Անավարտ շինարարության ծավալը 1964 թվականին 50 տոկոս կրճատելու հաշվին միայն կարելի էր Հայաստանի արդյունաբերությունում տարեկան 13 մլն ռուբլի լրացուցիչ շահույթ ստանալ։ Շինարարության ընթացքը հսկելու համար անհրաժեշտ է ունենալ շինարարական օպտիմալ կուտակվածքի նորմատիվներ։ Այդպիսի նորմատիվները մշակված են Միության պետպլանի կողմից, սակայն դեռ ներդրված չեն։ Դրանց պրակտիկ կիրառությունը մեծ չափով կօգնի պլանավորող օրգաններին ու բանկին՝ շինարարական կազմակերպությունների աշխատանքը ճիշտ պլանավորելու, հսկելու և գնահատելու գործում։

Կապիտալ ներդրումների արդյունավետության իջեցման և անավարտ շինարարության ծավալի արագ մեծացման հիմնական պատճառներից մեկն էլ արտադրական օբյեկտների կառուցման ձգձգումն է։ Շատ օբյեկտների կառուցման նախագծային տևողությունը երեք և ավելի անգամ մեծ է այդ օբյեկտների կառուցման նորմատիվ ժամկետներից։ Սակայն նույնիսկ այդպիսի նախագծային ժամկետները չեն ապահովվում և կառուցման փաստացի ժամկետները, շատ դեպքերում, զգալիորեն ավելի մեծ են ստացվում, քան նախագծայինը։ Այնպիսի կարևոր կառույցների, ինչպիսիք են Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի, Ախթալայի հանքի, ավտոբեռնիչների, Հոկտեմբերյանի կոնյակի, արհեստական մետաքսաթելի գործարանների կառուցման տևողությունն ընդունված է 5—10 տարի, այն դեպքում, երբ նման ձեռնարկությունների կառուցման նորմատիվ տևողությունը մինչև երեք տարի է։ 1965 թվականի պլանով նախատեսված կապիտալ ներդրումները կազմել են կառուցվող արտադրական օբյեկտների նախահաշվային արժեքի 16,4 տոկոսը։ Ելնելով ներդրումների այդպիսի չափից, մեկ ձեռնարկության կառուցման միջին տևողությունը կկազմի 6,1 տարի։ Գունավոր մետալուրգիայում կառուցման միջին տևողությունը ստացվում է 18, թեթև արդյունաբերությունում՝ 13,4, քիմիական արդյունաբերությունում՝ 8 տարի։ Մեծ է նաև գործող ձեռնարկությունների վերակառուցման և ընդլայնման միջին տևողությունը։

Առանձին ձեռնարկություններ տասնամյակներ շարունակ գտնվում են շինարարության պրոցեսում, կառուցվում, վերակառուցվում և ընդլայնվում են, այդ չի կարող բացասաբար չանդրադառնալ արդեն գործարկված կարողությունների օգտագործման վրա։ Երևանի ավտոդողերի գործարանի ընդլայնումը շարունակվում է արդեն 11 տարի, մետաքսի կոմբինատինը՝ 17, ավ-



տոպահեստամասերի գործարանինը՝ 23 տարի և այլն։ Անթույլատրելիորեն երկարաձգվում է նաև ոչ խոշոր ձեռնարկությունների կառուցումը։ Աղինի պանրի գործարանը (նախահաշվային արժեքը 60 հազ. ռուբլի), կառուցվել է մոտ 4 տարում, Ալավերդու սառնարանը (նախահաշվային արժեքը 193 հազար ռուբլի)՝ մոտ 5 տարում։ Կառուցման այդպիսի անթույլատրելի ընթացքը ավելի ակնհայտ կդառնա, եթե նկատի առնենք, որ ԱՄՆ-ի արդյունաբերությունում արտադրական օբյեկտների կառուցման միջին տևողությունը կազմում է 12—16 ամիս։

Արդյունաբերական առանձին ձեռնարկությունների կառուցման ժամկետների ձգձգումները հիմնականում հետևանք են ֆինանսական, նյութական և աշխատանքային ռեսուրսների փոշիացմանը, այսինքն՝ միջոցները միաժամանակ բաշխվում են բազմաթիվ նորակառույց օբյեկտների վրա, յուրաքանչյուր կառույցին բաժին է ընկնում իր տարեկան նախահաշվային արժեքի միայն չնչին մասը։ Դրա հետևանքով կառույցները չեն ապահովվում շինարարական մեքենաներով, նյութերով, կոնստրուկցիաներով և բանվորական ուժով։

Միջոցների փոշիացումը Հայկական ՍՍՀ-ում ոչ միայն չի նվազում, այլ, նույնիսկ, ավելանում է։ Այսպես, 1965 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, շինարարության պլանով նախատեսված օբյեկտները ավելացել են 25, մեկ նորակառույցին բաժին ընկնող կապիտալ ներդրումները միջին հաշվով նվազել են 20, իսկ վերակառուցվող կամ ընդլայնվող մեկ ձեռնարկության կապիտալ ներդրումները՝ 32 տոկոսով։ Կապիտալ ներդրումները (շինարարության նախահաշվային արժեքը տոկոսներով արտահայտված) միջին հաշվով մեկ նորակառույցի համար նվազել են 5, իսկ վերակառուցվող կամ ընդլայնվող մեկ ձեռնարկության համար՝ 4 տոկոսով։ Այս տվյալները ցույց են տալիս, որ 1965 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, Հայկական ՍՍՀ-ում միջոցների փոշիացումը զգալի չափով ավելացել է, որը պետք է լրջորեն անհանգստացնի պլանային օրգաններին և ամեն բան արվի, որպեսզի նոր հնգամյակում այդ սխալը չկրկնվի։ Անհրաժեշտ է մշակել գիտականորեն հիմնավորված մեթոդ, որի օգտագործումը հնարավորություն կընձեռի որոշելու այն օբյեկտների լավագույն կազմն ու քանակը, որոնց կառուցումը պլանավորվող ժամանակամիջոցում առավել նպատակահարմար է։

Հայտնի է, որ օբյեկտների ճիշտ ընտրության դեպքում գործող ձեռնարկությունների վերակառուցման, ընդլայնման և տեխնիկական վերազինման համար ներդրվող կապիտալ միջոցները ունենում են ավելի բարձր արդյունավետություն, քան նոր շինարարությունը։ Այս պատճառով որքան մեծ է կապիտալ ներդրումների վերակառուցման և ընդլայնման համար ծախսվող մասը, այնքան բարձր է կապիտալ ներդրումների արդյունավետությունը։ Գործող ձեռնարկությունների վերակառուցման և ընդլայնման նպատակով ներդրվող միջոցները Հայկական ՍՍՀ-ում 1959 թվականին կազմել են արտադրական կապիտալ ներդրումների 30 տոկոսը և 1964 թվականին, աստիճանաբար աճելով, հասել են 58,5 տոկոսի։ Հանրապետության գունավոր մետալուրգիայում և քիմիական արդյունաբերությունում այդ մասը համապատասխանաբար կազմում է 65 և 87 տոկոս և ավելի բարձր է, քան ՍՍՀՄ նույն ճյուղերում ամբողջությամբ վերցրած։

Կապիտալ ներդրումների տեխնոլոգիական կառուցվածքը նույնպես զգալի ազդեցություն է թողնում ներդրումների արդյունավետության վրա։ Հիմնական ֆոնդերի ամենից ավելի ակտիվ մասը, որն ապահովում է արտադրական կարողությունների գործարկումը, սարքավորումն է։ Կապիտալ ներդրումների կազմում որքան բարձր է սարքավորման արժեքը, այնքան փոքր են արտադրական կարողության աճի համար պահանջվող տեսակարար կապիտալ ներդրումները և համապատասխանաբար բարձր՝ ներդրումների արդյունավետությունը։ Կապիտալ ներդրումների տեխնոլոգիական կառուցվածքը Հայկական ՍՍՀ-ում աստիճանաբար բարելավվում է։ Այսպես, Հայկական ՍՍՀ Մի-

նիստրների սովետին ենթակա ձեռնարկություններում շինմոնտաժային աշխատանքների տեսակարար կշիռը ամբողջ կապիտալ ներդրումներում աստիճանաբար իջնելով, 1958 թվականի 74 տոկոսից, 1964 թվականին հասավ 63 տոկոսի, իսկ սարքավորման տեսակարար կշիռը նույն ժամանակամիջոցում 22 տոկոսից աճեց 28 տոկոսի։ Այս ցուցանիշով մեր հանրապետությունը, և՛ ամբողջությամբ վերցրած, և՛ ըստ առանձին ճյուղերի, ետ է մնում ՍՍՀՄ միջին մակարդակից։ Այդ չի կարելի արդարացնել, մանավանդ, եթե նկատի առնենք մեր հանրապետության կլիմայական բարենպաստ պայմանները։

Գաղտնիք չէ, որ արտադրական օբյեկտների կառուցման տևողության վրա անմիջական ազդեցություն են թողնում նախագծային և շինարարական կազմակերպությունների աշխատանքում եղած թերությունները։ Նախագծման տևողությունը մեծ է։ Օրինակ, Երևանի ջերմաէլեկտրակենտրոնի նախագծային աշխատանքները տևել են 16 ամիս, ավտոպահեստամասերի գործարանի ընդլայնմանը՝ 15 և այլն։ Բանվորական գծագրերի կազմումը ձգվում է շինարարության ամբողջ տևողության ընթացքում։ Քիչ են օգտագործվում տիպային նախագծերը։ Նախագծման ելակետային տվյալները հաճախ լրիվ չեն կամ անճշտություններ ունեն, որի հետևանքով հարկ է լինում ուղղումներ մտցնել նախագծում, այսինքն՝ թանկացնել այն։ Երկար ժամանակ է ծախսվում նաև նախագծերի հաստատման վրա։

Նախագծերը հաճախ ցածրորակ են, իսկ դրա համար նախագծային կազմակերպությունները մինչև այժմ նյութական ոչ մի պատասխանատվություն չեն կրել։ Նախագծում ընդունվող լուծումների տնտեսական հիմնավորումը, դրանց ընտրությունը մի շարք տարբերակների համեմատության միջոցով, դեռևս չեն դարձել յուրաքանչյուր նախագծի անքակտելի մասը։ Թույլ է նաև նախագծի էքսպերտիզան։ Անհրաժեշտ է, ինչպես այդ նախատեսված է կուսակցության Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումում և կուսակցության XXIII համագումարի որոշումներում, բարձրացնել նախագծողների և էքսպերտների նյութական շահագրգռվածությունը և պատասխանատվությունն՝ իրենց աշխատանքի արդյունքների հանդեպ։

Կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման գործում մեծ հնարավորություններ կան շինարարության բնագավառում։ Այստեղ, առաջին հերթին, պետք է ճիշտ հաշվի առնել արտադրական կարողությունները և դրանց հիման վրա ճիշտ որոշել աշխատանքի ծավալը։ Չնայած դրան, շինկազմակերպությունների աշխատանքը պլանավորվում է մոտավորապես, նախորդ տարում կատարված աշխատանքի հիման վրա, որն անթույլատրելի է։

Փոքր նշանակություն չունի նաև շինարարական կազմակերպությունների խոշորացումը։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հանրապետության շինարարական կազմակերպությունները կարող են ապահովել պլանային շահույթը, եթե նրանց տարեկան աշխատանքների ծավալը 2 մլն ռուբլուց ավելի է։ Չնայած կազմակերպությունների զգալի խոշորացմանը, 1964 թվականին 2 մլն ռուբլուց ավելի աշխատանքներ ունեցող կազմակերպությունները կազմել են Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի ենթակայության բոլոր շինարարական կազմակերպությունների միայն 20, իսկ 1965 թ.՝ 25 տոկոսը, որը շատ քիչ է։ Սրանով մասնավորապես պետք է բացատրել այն, որ հանրապետության շինարարության մինիստրությունն աշխատում է վնասով։ Անհրաժեշտ է միջոցներ ձեռնարկել շինարարական կազմակերպությունների հետագա ռացիոնալ խոշորացման ուղղությամբ։ Պետք է նշել, որ խոշոր կազմակերպությունների թվով միութենական հանրապետությունների կազմում Հայաստանը վերջին տեղում է։

Շինարարական կազմակերպությունների մյուս թերությունը աշխատանքի անհավասարաչափությունն է։ Վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրապետության արդյունաբերության ճյուղերում շինարարական աշխատանքները կատարվում են անհավասարաչափ։ Կապիտալ ներդրումների ամենափոքր ծավալը բաժին է ընկնում հունվար ամսին, որից հետո մինչև եռամսյակի



վերջը, կապիտալ ներդրումները աստիճանաբար աճում են և որոշ չափով փոքրանում հաջորդ եռամսյակի առաջին ամսում։ Այս երևույթը նկատվում է բոլոր եռամսյակներում։ Եռամսյակային կապիտալ ներդրումները իրենց մաքսիմում չափին հասնում են վերջին եռամսյակում, իսկ ամսական կապիտալ ներդրումները՝ դեկտեմբերին։ Բայց, քանի որ շինարարական աշխատանքների կատարման համար կլիմայական պայմանները դեկտեմբերին հաճախ անբարենպաստ են, ապա քիչ չեն դեպքերը, երբ գործը ցածրորակ է լինում։ Շինարարական աշխատանքներն ավելի համաչափ կատարելու համար անհրաժեշտ է օգտագործել բոլոր հնարավորությունները։ Այս տեսակետից մեծ նշանակություն կունենա շինարարության մեջ ցանցային պլանավորման և ղեկավարման մեթոդների լայն կիրառումը, որը նախատեսվում է հնգամյա պլանի՝ կուսակցության XXIII համագումարի դիրեկտիվներում։ Չնայած այդ մեթոդների բարձր արդյունավետությանը, դրանք մեր հանրապետությունում առայժմ գրեթե չեն կիրառվում, որը նույնպես անթույլատրելի է։

Կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման ուղիներից են նաև արտադրության մասնագիտացումը, կոոպերացումը և կոմբինացումը, լավագույն կարողության ձեռնարկությունների ստեղծումը, ճյուղերի միջև անհրաժեշտ համամասնությունների ապահովումը և օբյեկտների կոմպլեքս գործարկումը, արտադրության նոր առաջավոր մեթոդների ներդրումը, արդյունաբերության պլանավորման և ղեկավարման կատարելագործումը, արտադրական կարողությունների արագ յուրացումը և այլն, որոնք մեր այսօրվա հրատապ խնդիրներից են։

ԾԱՆՈՒՑՈՒՄ

Խնդրում ենք մեզ թղթակցող հեղինակներին այսուհետև հոդվածները խմբագրության հանձնել մեքենագրված երկու օրինակ, 18 էջից ոչ ավելի ծավալով, նշելով անունը, ազգանունը, հայրանունը, հասցեն և հեռախոսի համարը։ Չտպագրվող հոդվածները հեղինակներին չեն վերադարձվում։

ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

# Հոբելյանական ՏԱՐԵԹՎԵՐ

## ԳԱՅԻ ԾՆՆԴՅԱՆ 80-ԱՄՅԱԿԸ



Այս օրերին, սովետական եղբայրական ժողովուրդների հետ միասին, հայ ժողովուրդը երախտագիտության խոր զգացումով է նշում իր լավագույն զավակներից մեկի՝ քաղաքացիական կռիվների լեգենդար հերոս Հայկ Բժշկյանի (Գայի) ծննդյան 80-ամյակը: Վեհիմաստ ու հատկանշական է նրա գիտակցական գործունեության կենսուղին:

Հայկ Բժշկյանը պատկանում է մեր դարի առաջավոր շարժման՝ կոմունիստական հեղափոխությանը նվիրված այն փայլուն սերնդին, որը զինվորագրվելով Լենինի կուսակցությանը, անձնուրաց մաքառմամբ և հերոսագործությամբ միշտ գտնվեց մեծ հոկտեմբերի հաղթության համար մղվող դժնի կռիվների առաջավոր խրամատներում: Կոփվելով ու առնանալով կարմիր բանակի շարքերում, Գայը դարձավ այդ իսկ բանակի տաղանդավոր ու անձնվեր կազմակերպիչներից և զորավարներից մեկը, իր սխրանքներով փայլուն էջեր գրելով սովետների իշխանության համար մղված տարեգրության ոսկե մատյանում:

Գայի ողեգրած ուղին ու վաստակած փառքը վառ ապացույց են այն բանի, որ հայ ժողովրդի փրկությունն ու վերածնունդը հնարավորությունից իրականություն դարձավ այն օրից սկսած, երբ նրա անձնազոհ զավակները հարեցին լենինյան գվարդիային, բռնեցին ռուսաստանյան պրոլետարական հեղափոխության դժվարին ճանապարհով:

Հոկտեմբերյան մարտերում հազարավոր այլազգի հերոսներ ու զորավարներ հանդես եկան, որոնք Գայի պես պայքարեցին կոմունիստական կուսակցության գաղափարների հաղթության համար: Մեծարելով լեգենդար Գային, միաժամանակ մեծարում ենք սոցիալիզմի կառուցման հաղթության համար զոհված հազարավոր հերոսներին: Ստորև տպագրում ենք մի դրվագ Գայի վարած Օրենբուրգյան ճակատամարտի վերաբերյալ:



## ԳԱՅԸ ՕՐԵՆԲՈՒՐԳԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎԱԾ ՄԱՐՏԵՐՈՒՄ

1919 թվականի մարտի 4-ին ցարական գեներալ Կոլչակը իմպերիալիստական տերությունների օգնությամբ ստեղծած մեծ ու լավ զինված բանակով հարձակում սկսեց 1800 կիլոմետր ձգվող արևելյան ողջ ռազմաճակատով մեկ: Արևելյան ռազմաճակատի բոլոր բանակները գլխավոր հրամանատարությունից մարտական առաջադրանքներ ստացան՝ թշնամու առաջխաղացումը կասեցնելու համար: Չնայած I և V բանակների համառ դիմադրությանը, հակառակորդին, այնուամենայնիվ, հաջողվում է մարտի 14-ին գրավել Ուֆան և առաջ շարժվել:

Մարտի 19-ին I բանակի հրամանատար Գայը Արևելյան ռազմաճակատի գլխավոր հրամանատարին ներկայացնում է թշնամուն ջախջախելու իր պլանը, ուր պարզ ու որոշակի նշված էին I բանակի, ինչպես և V բանակի աջ թևի խնդիրները և հարձակման ուղղությունները: «Խոստովանում եմ, Գայ Դմիտրևիչ, Ձեր պլանը լիովին համընկնում է մերի հետ, չնայած այն միանգամայն ինքնուրույն է մշակված» (Г. Н. Айрапетян, «Легендарний Гай», М., 1965 г., стр. 88); ասում է ռազմաճակատի գլխավոր հրամանատարը: «Ռազմաճակատի հրամանատարը, ըստ էության, ընդունեց Գայի այդ պլանը» (Г. Х. Эйхе, «Уфимская авантюра Колчака», М., 1960 г., стр. 133):

Հակառակորդը մեծ ուժեր կենտրոնացրեց Օրենբուրգի և Ստեռլիտամակի ուղղությամբ: Մարտի 23-ին I բանակին հրաման է տրվում վերականգնել դրությունը և պաշտպանել Վերխնե—Ուրալսկ—Ստեռլիտամակ և Վերխնե—Ուրալսկ—Օրենբուրգ ճանապարհների ուղղությունները:

I բանակի զորամասերը Գայից հարձակման հրաման են ստանում: Մարտի 24-ին կատաղի մարտ է սկսվում թշնամու զորամասերի և ուֆիմյան խմբի միջև, որին ղեկավարում էր Վելիկանովը: Դրությունն այնքան է լրջանում, որ վերջինս Գայից նահանջի թույլտվություն է խնդրում: Սակայն այդ մասում թշնամուն ցույց տրված դիմադրությունը տվյալ մոմենտում կարևորագույն նշանակություն էր ստացել. թշնամու նպատակն էր՝ շրջանցել I բանակի զորամասերը, ջախջախել նրանց և ապա դուրս գալ անպաշտպան ճանապարհների վրա: Ուստի, Գայը ո՛չ միայն մերժում է Վելիկանովին, այլև պատասխանում. «Ձեզանից այդպիսի հեռագիր չէի սպասում... անհամբեր սպասում եմ Ձեր հաղթանակին» (ՍԲԿՊԱ, ֆ. 157, գ. 191, թ. 251—252):

Կռիվը շարունակվում է: Ուֆայի ուղղությամբ թշնամուն ջախջախելու և ետ շպրտելու խնդիրը ուժերի մեծ լարում էր պահանջում: Ուստի, մարտի 27-ին I և V բանակների հրամանատարներին ուղարկած հատուկ հրամանում ասվում էր. «...Ուֆայի մոտ դրության վերականգնումը I և V բանակների

ընդհանուր խնդիրն է. ինչպես մեկ, այնպես էլ մյուս բանակը հասցնում են մեկ ընդհանուր գլխավոր հարված» (ՍԲԿՊԱ, ֆ. 157, ց. 3, գ. 183, թ. 72)։

Հակառակորդը մեկը մյուսի հետևից թարմ ուժեր էր նետում մարտի դաշտ։ Ինչպես զեկուցում է XX դիվիզիայի հրամանատար Վորոբյովը, թշնամին I բանակի զորամասերի դեմ ուժեղ հարձակում սկսեց, հատկապես, մարտի 28-ին և 29-ին։

Թշնամին արդյունքի չհասնելով I բանակի ձախ թևում, մարտի 30-ին նոր ուժերով հարձակման է անցնում Ավզյանո—Պետրովսկ գործարանի ուղղությամբ, որի գրավումը մեծ առավելություն կտար նրան։ Հակառակորդի պլանի իրագործման դեպքում շրջապատման վտանգ կսպառնար Ուֆայի տակ կռվող զորամասերին և, բացի այդ, թշնամու առաջ կբացեին դեպի Օրենբուրգ և Ստեռլիտամակ տանող ճանապարհները։

Ահա թե ինչու այնպիսի մեծ համառությամբ էին կռվում երկու կողմերն էլ։ I բանակի զորամասերը կարճ ընդմիջումից հետո անցնում են հակահարձակման, սակայն թշնամու գերակշիռ ուժերի ճնշման տակ ստիպված են լինում մեծ կորուստներով նահանջել։ Կապվելով Գայի հետ, Վորոբյովը հայտնում է. «...իմ հրամանների հաջող կատարմանը խանգարում է գնդերի փոքրաթիվությունը՝ գնդում մնացել է ամենաշատը 450 սվին»։ «Ընկեր Վորոբյով,— պատասխանում է Գայը,— բանը ոչ թե քանակի, այլ սորին հրամանատարական կազմի ոգու ու շնորհքի մեջ է։ Բարձունքում հարմար դիրք գրաված մեկ վաշտը կարող է պահել մի ամբողջ գունդ» (ՍԲԿՊԱ, ֆ. 157, ց. 3, գ. 214, թ. 145)։

Նկատի ունենալով ռազմա-ստրատեգիական տեսակետից խիստ կարևոր վերոհիշյալ գործարանի պահպանման անհրաժեշտությունը, Գայը շարունակում է. «Դուք չպետք է թույլ տաք այդ բանը, հաստատակամորեն թող զորամասերը գիշերեն լեռներում, անտառներում, դիմանան ամեն տեսակի արհավիրքների, միայն թե հակառակորդը չկարողանա գրավել երջանկության բանալին։ Թող բոլոր տնտեսական զորամասերը անմիջապես շարք կանգնեն այդ արտասովոր ճակատամարտն ուժեղացնելու համար, Ավզյանը հասարակ կետ չէ, որ կարելի լինի ետ գրավել։ Մնացածը կախված է ձեզանից։ Հենց այս գիշեր անպայման գրավեցեք Ասկարովո—Իմագադիևոն, այլապես Ձեզ համար շատ դժվար կլինի, մինչև լրացուցիչ ուժերի գալը արդեն ուշ կլինի... Ձեր հաստատակամությունը, վերջիվերջո, կընկճի հակառակորդին» (Նույն տեղը)։

Գայը միաժամանակ մեծ պատասխանատվություն էր դնում դիվիզիաների, բրիգադների, գնդերի և ջոկատների հրամանատարների ու քաղաքական կոմիսարների վրա։ Նա պահանջում էր «...ամբողջ հրամկազմի, հատկապես կոմիսարների մեծ լարվածություն, որոնք այդպիսի դժվարին պահերին մարտական ոգին բարձրացնելու համար պետք է լինեն առջևում և խանդավառեն բոլորին» (ՍԲԿՊԱ, ֆ. 157, ց. 3, գ. 214, թ. 146)։

Մարտի 30-ին նոր, ավելի ուժեղ ու արյունալի մարտ է բորբոքվում երկու կողմերի միջև։ Թշնամին դարձյալ գրոհի է նետում նոր ուժեր և ճեղքելով I բանակի պաշտպանագիծը, խիստ նեղում է նրա զորամասերին. «...գրոհը՝ Ավզյանո—Պետրովսկ ետ է մղված»,— զեկուցում է Վորոբյովը։

«Ես հույսս չեմ կորցնում,— գրում է Գայը Վորոբյովին,— եղիր սառնարյուն։ Լիովին հավանություն եմ տալիս քո միջոցառմանը, միայն թե զորամասերը խուճապի չմատնվեն, խանդավառիր կռվով...։ Լիակատար հաղթանակ



եմ ցանկանում։ Ջեկույցի եմ սպասում հակառակորդի Ավզյանո—Պետրովսկից ետ մղելու մասին» (ՍԲԿՊԱ, ֆ. 157, ց. 3, գ. 214, թ. 148—149)։

Միանգամայն հասկանալի է, թե ինչպիսի լուրջ պատասխանատվություն էր ընկած այդ օրերին I բանակի վրա և թե տվյալ մոմենտին ինչպիսի՜ նշանակություն ուներ վերոհիշյալ խնդրի կատարումը արևելյան ռազմաճակատի բախտի համար։ Ելնելով սրանից, Գայը Վորոբյովին հրամայում է. «...դրությունը փրկել ինչ գնով էլ լինի... Ամեն ինչ դիր խաղաքարտի վրա՝ ահա թե ինչ կարող եմ ասել քեզ։ Խմբավորեցեք ուժերը և հարվածեցեք Ասկարովոյի ու Մագադիևոյի ուղղությամբ՝ միաժամանակ։ Ահա բոլորը, միայն թե պաշտպանվի դրությունը, այլապես կկործանվեն բանակն ու ռազմաճակատը» (ՍԲԿՊԱ, ֆ. 157, ց. 3, գ. 214, թ. 140)։ Վորոբյովը պատասխանում է, որ «...հենց այդպես էլ հասկանում եմ վիճակը և հենց այդպիսի միջոցներ էլ ձեռնարկել եմ»։ Այնուհետև խոսակցության վերջում Վորոբյովը հայտնում է, որ շրջապատումից ազատվելու խիստ անհրաժեշտությունից դրդված մեր զորքերը թողել են Կագինսկի գործարանը, ուր թշնամին ավելի մեծ ուժերով հարձակում է սկսել մի քանի ուղղություններով և որ նա Ավզյանո—Պետրովսկ գործարանը վերցնելու համառ փորձեր է անում, որ Սմոլենսկյան գնդի հետ կապը խզված է և այլն։ Միաժամանակ Վորոբյովը նշում է, որ «չնայած այդ ամենին, զորամասերն, այնուամենայնիվ, ամուր դիմանում են և չեն նահանջում (Նույն տեղը, թ. 141)։ Նա խնդրում է Գայից՝ օգնել Սմոլենսկյան գնդի հետ կապը վերականգնելու և այլ հարցերում։ Գայը խոստանում է ամեն ինչ անել և հրամայում է դիմանալ մինչև Սմոլենսկյան գնդի ժամանումը։ Նա Վորոբյովին խորհուրդ է տալիս մեծ տեղ հատկացնել գիշերային հարձակումներին, նշում է, որ թշնամու դրությունն այնքան էլ լավ չէ և նրան ջախջախելու համար հարկավոր է միայն համարձակություն։ «Եթե պետք է, վաղն առավոտյան շուտ անձամբ մեկնիր Կուլգուրինո կամ Նովո-Սեխտովո,— ասում է Գայը Վորոբյովին։— Բոլորին ոտքի հանիր, միայն թե փրկվի դրությունը։ Հույսս դնում եմ քո եռանդի վրա» (Նույն տեղը)։ Վորոբյովը խոստանում է ամեն ինչ անել, միաժամանակ հիշեցնելով, որ թե իր և թե Վելիկանովի մոտ փամփուշտը վերջանալու վրա է։ Գայը խոստանում է հաջորդ օրը փամփուշտ ուղարկել և օգնել ինչով հնարավոր լինի։ «Ափսոսում եմ, թանկագին բարեկամ, որ հետդ չեմ... ողջունեցեք մեր խիզախներին»,—ասում է վերջում Գայը (Նույն տեղը, թ. 142)։

Մարտի 31-ին Վորոբյովին տրված հրամանում Գայը գրում էր. «...հենց այսօր վերջացնել գործը։ Վաղը ուշ կլինի։ Այսպիսի դեպքերում միակ միջոցը գիշերային գրոհն է։ Երեկ 24-րդ դիվիզիայի երկու վաշտեր գլխովին ջախջախեցին կազակների երկու հազարանոց բանդան... Նույնպիսի միջոցներ ձեռնարկիր նաև դու։ Այլևս ասելիք չունեմ, ամբողջ հույսս քո վրա է։ Լիակատար հաղթանակ եմ մաղթում» (Նույն տեղը, թ. 142)։

Ձեռնարկված միջոցառումների և I բանակի զորամասերի համառ ու երկարատև պայքարի շնորհիվ ետ են մղվում թշնամու բոլոր գրոհները։

Այնուհետև, հակառակորդը խոշոր ուժեր է կենտրոնացնում Ստեռլիտամակի տակ, դարձյալ նպատակ ունենալով շրջանցել I բանակի զորամասերը։ «Հենց նոր զեկույց ստացա, որ հակառակորդը ճեղքել է մեր ձախ թևը,— զեկուցում է Վորոբյովը,—Ես կդիմադրեմ, բայց հակառակորդը դրանից օգտ-

վում է և քաղաքը կտրելու նպատակով մոտենում է ձախից» (ՍԲԿՊԱ, ֆ. 157, ց. 3, գ. 176, թ. 169—170)։

Ելնելով ստեղծված ծանր իրադրությունից և բանակի կենդանի ուժը պահպանելու անհրաժեշտությունից, Գայը հրամայում է «Թողնել Ստեռլիտամակը» (նույն տեղը, թ. 170)։ Նա այդ նահանջը դիտում էր որպես տակտիկական ժամանակավոր միջոցառում և նպատակ էր հետապնդում պահպանել բանակի կենդանի ուժը, «...զորամասերը մի փոքր կարգի բերել, կատարել վերախմբավորում, որից հետո սկսել հարձակումը» (ՍԲԿՊԱ, ֆ. 157, ց. 3, գ. 183, թ. 105)։

Թշնամին գրավելով Ուֆան, Ստեռլիտամակը, իր հիմնական ուժերով ուղղություն է վերցնում դեպի Սամարա և Սիմբիրսկ, լուրջ սպառնալիք ստեղծելով այդ քաղաքների համար։

Հակառակորդը նպատակ էր դրել ինչ գնով էլ լինի գրավել այդ քաղաքները և ապա առաջ շարժվել։ Այդ ծանր պահին՝ ապրիլի 4-ին, I բանակին տրված հրամանը ապրիլի 5-ին փոխարինվում է նոր հրամանով՝ «Անհրաժեշտ է I բանակի դիվիզիաներն ուղարկել Ուֆա—Սամարա և Ուֆա—Սիմբիրսկ ուղղություններով հարձակվող հակառակորդի զորամասերին անմիջականորեն հարվածելու համար, իսկ երկրորդական խնդիրները, օրինակ, Ստեռլիտամակ—Օրենբուրգ ճանապարհի պաշտպանումը դնել IV բանակի վրա։

Գլխավոր հրամանատար՝ Վացետիս»։

Ռազմա-հեղափոխական խորհրդի անդամ՝ Արալով»։

(Из истории гражданской войны в СССР, М., 1961 г., стр. 152—153)։

Ինչպես տեսնում ենք, I բանակը նետվում էր մի տեղամասից մյուսը, ուր ամենից մեծ էր կոլչակյան զորամասերի կողմից սպառնացող վտանգը։

Ապրիլի 9-ին և 10-ին I ու V բանակների զորամասերն անհավասար մարտեր էին մղում թշնամու դեմ, աշխատելով կանգնեցնել նրա առաջխաղացումը։ Արևելյան ռազմաճակատում վճռվում է հեղափոխության բախտը,— նախազգուշացնում էր Վ. Ի. Լենինը։

Ապրիլի սկզբներին թշնամին խոշոր ուժեր կենտրոնացրեց Օրենբուրգի ուղղությամբ, այն գրավելու, սովետական զորամասերի թիկունքը դուրս գալու նպատակով։ Ապրիլի 13-ին հարավային խմբավորման ռազմա-հեղափոխական խորհրդի հրամանով Օրենբուրգ քաղաքի և նրա շրջանի պաշտպանությունը դրվում է I բանակի վրա։ Շուտով կազմակերպվում է Օրենբուրգյան հարվածող խումբ՝ Վելիկանովի գլխավորությամբ։ Սկսվում է Օրենբուրգի երկարատև ու հերոսական պաշտպանությունը, որը քաղաքացիական կռիվների աչքի ընկնող կարևորագույն ռազմական գործողություններից մեկն էր։ Սակայն այդ հարցին անդրադարձող մի շարք հեղինակներ անհիմն կերպով Գային մեղադրել են Օրենբուրգը թողնելու առաջարկի համար։ Մինչդեռ Ֆրունզեն գրել է Գային. «Ձեր հայեցողությանն եմ թողնում ստրատեգիական նպատակներով օրենբուրգյան շրջանը թողնելու կամ չթողնելու հարցը, որն ինձ հնարավորություն կտար Բուզուլուկի խումբը ուժեղացնել շրջանի ուժերի հաշվին» («Урал», 1965 г., № 10. стр. 142)։ Հենց Ն. Կ. Լիսովսկու վկայությամբ «Հանրապետության գլխավոր հրամանատարությունն իսկ, որն այն ժամանակ գլխավորում էր Վացետիսը, հանդես եկավ նահանջը շարունակելու օգտին» (Н. К. Лисовский, «Разгром дутовщины», 1917—1919 гг., М. 1964 г., стр. 121)։



Պատմական փաստերը ցույց են տալիս, որ թշնամին Օրենբուրգի տակ ուներ ավելի քան 20 հազար զինվոր, 56 թնդանոթ, 223 գնդացիր։ Մինչդեռ սովետական զորքերը կազմում էին ընդամենը մոտ 6 հազար զինվոր, ունեին 11 թնդանոթ, 84 գնդացիր (տե՛ս Е. А. Болтин, «Контрнаступления южной группы Восточного фронта и разгром Колчака (1919 г.)», М., 1949 г., стр. 58)։ Բացի այդ, թշնամին ուներ նաև հեծելազորի գերազանցություն։ Օրենբուրգի հերոս պաշտպանները Սովետական Ռուսաստանի հետ կապված էին Օրենբուրգ—Սամարա երկաթուղային նեղ ճանապարհով միայն։ Այս բոլորին ավելանում էր նաև զինամթերքի և պարենամթերքի խիստ պակասությունը։ Օրենբուրգի պաշտպանները ծանր ու համառ մարտեր էին մղում թշնամու գերազանց ուժերի դեմ։

Ահա այսպիսի ծանր պայմաններում էր Գայն առաջարկում թողնել Օրենբուրգը՝ բանակի կենդանի ուժը պահպանելու և քաղաքը կրկին ազատագրելու նպատակով միայն։ Գայը կողմնակից էր այդ քայլին դիմելու ամենածայրահեղ անհրաժեշտության դեպքում։ Սակայն ռազմաճակատ ուղարկելով վերջին ռեզերվները, ոտքի հանելով ամբողջ աշխատավորությանը և նոր համալրումներ ստանալով, Գայը միանգամայն հնարավոր է համարում ո՛չ միայն շարունակել Օրենբուրգի հերոսական պաշտպանությունը, այլև թշնամուն ջախջախելու և ետ շպրտելու խնդրի լուծումը։ Եվ, վերջապես, մի՞թե Օրենբուրգը թողնելու Գայի առաջարկը ապացույց է նրա վախկոտության կամ դավաճանության։ Մի՞թե պատմությանը հայտնի չեն բազմաթիվ նման դեպքեր։

Պատմական փաստերի օբյեկտիվ ուսումնասիրությունը ո՛չ միայն որևէ մեղադրանք չի ներկայացնում Գային, այլ ընդհակառակը, դրսևորում է նրան որպես տաղանդավոր զորահրամանատարի, Օրենբուրգի հերոսական պաշտպանության ակտիվ կազմակերպչի և ջերմ հայրենասերի։ Այդ մասին է վկայում նաև Օրենբուրգի պաշտպանության օրերին (և ընդհանրապես) բարձրագույն հրամանատարության կողմից Գայի նկատմամբ տածած մեծ վստահությունը։

Վերակազմելով ուժերը, ապրիլի 21-ին թշնամին անցնում է նոր, ավելի վճռական հարձակման։ Սակայն I բանակի հրամանատար Գայը, ելնելով տվյալ մոմենտի ու տեղանքի առանձնահատկություններից, իր հերթին մշակում է թշնամուն ջախջախելու համարձակ ու խելամիտ պլան. «Հաշվի առնելով հակառակորդի գնդերի քանակն ու որակը, տեղանքի առանձնահատկությունները, զորամասերի տեղադրությունը և ազատ ռեզերվների բացակայությունը, I բանակի հրամանատարը որոշում է կորպուսին հնարավորություն տալ անցնելու վարարած և ջրառատ Սալմիշ գետը, որից հետո թշնամու վրա հարձակվել թևերից, գրավել գետանցը և հակառակորդին սեղմելով գետին, ոչնչացնել» (Г. Д. Гай, «Первый удар по Колчаку», М., 1926 г., стр. 34)։

Ապրիլի 22-ին Սալմիշ գետի ափին Բելով խուտորի շրջանում տեղի է ունենում քաղաքացիական կռիվների ամենախոշոր ճակատամարտերից մեկը, որն ավարտվում է I բանակի զորամասերի փայլուն հաղթանակով։

Ապրիլի 26-ին թշնամին անցնում է հակահարձակման։ Նորից մեծ ուժով բորբոքվում է արյունալի մարտը երկու կողմերի միջև։ Կարմիրների հրետանին անխնա կրակ էր մաղում թշնամու շարքերի վրա, «...որտեղ այդ ժամանակ աներևակայելի իրարանցում և լիակատար խուճապ էր տիրում» (նույն տեղը, էջ 58)։ Թշնամին դիմում է փախուստի, թողնելով ամբողջ գումակը։

*Սալմիշի ճակատամարտը ունեցավ պատմական մեծ նշանակություն: Փաստորեն դա սովետական զորամասերի տարած առաջին խոշոր հաղթանակն էր Կոլչակի դեմ, որով, ինչպես տեսանք, ձախողվեց թշնամու պլանը: Այդ ճակատամարտում ջախջախվեցին հակառակորդի լավագույն զորամասերը: Այստեղ տեղի ունեցած արյունալի մարտերն իրենց վրա գրավեցին մյուս տեղամասերում կռվող թշնամու զորամասերի ուշադրությունը և թեթևացրին սովետական զորամասերի դրությունը: Կոլչակի դեմ տարած այդ հաղթանակը չափազանց բարձրացրեց Կարմիր բանակի մարտական ոգին և նախադրյալներ ստեղծեց հարավային խմբավորման հրամանատարության կողմից նախապատրաստվող հակահարձակման համար:*

*Սալմիշի մոտ հաղթանակն ապահովվեց շնորհիվ հարավային խմբի հրամանատար Մ. Ֆրունզեի մշակած ստրատեգիական պլանի, I բանակի հրամանատարության տակտիկական խելացի ձեռնարկումների և զինվորների ու հրամանատարական կազմի ցուցաբերած աննկարագրելի հերոսության:*

*Բարձր գնահատելով Սալմիշի ճակատամարտում տարած հաղթանակը՝ Մ. Ֆրունզեն գրում է. «Առաջին բանակի ռազմաճակատում առավել խոշոր իրադարձություն է հակառակորդի II և V դիվիզիաների զորամասերի ջախջախումը Սալմիշ գետի մոտ»* («Гражданская война в Оренбурге» (1917—1919 гг.), Оренбургское кн. изд-во, 1958 г., стр. 309):

*Այդ հաղթանակում Գայը բարձր էր գնահատում ընկ. ընկ. Մ. Ֆրունզեի, Վորոբյովի, Վելիկանովի և մյուս հրամանատարների խաղացած դերը:*

*Այս ամենը պարզորոշ ցույց են տալիս, թե որքան սխալ էին Լիսովսկին և ուրիշներ, որ խեղաթյուրելով պատմական ճշմարտությունը՝ ո՛չ միայն անտեսել են Գայի խոշոր դերը Օրենբուրգի պաշտպանության գործում, այլև նրան որակել որպես «վախկոտ», «թերահավատ» և այլն:*

*Սալմիշի ճակատամարտից հետո հակառակորդը նոր համալրում ստանալով՝ անցավ հակահարձակման, սակայն նրա բոլոր գրոհները Օրենբուրգի վրա ետ շպրտվեցին I բանակի կողմից: Վերջինիս զորամասերը, ապրիլի 29-ին անցնելով հակահարձակման, թշնամուն 7 վերստ ետ շպրտեցին Օրենբուրգից դեպի հարավ (ՍԲԿՊԱ, ֆ. 106, ց. 3, գ. 239, թ. 131):*

*Մայիսի 6-ին Մ. Ֆրունզեն, կապվելով Գայի հետ, ցանկանում է պարզել թշնամու դեմ հետագա պայքարի հետ կապված մի շարք հարցեր, իմանալ Գայի կարծիքը՝ I բանակին մարտական նոր առաջադրանքներ տալու համար:*

*Մ. Ֆրունզեն միանգամայն գոհ է մնում Գայի առաջարկած պլանից, ասելով. «Ձեր նկատառումներին ընդհանրապես, ես միանգամայն համաձայն եմ» (ՍԲԿՊԱ, ֆ. 157, ց. 3, գ. 146, թ. 116):*

*Այնուհետև Ֆրունզեն նշում է, որ, չնայած իր բազմաթիվ պահանջներին, այնուամենայնիվ, ոչ մի բրիգադ օգնության չի ուղարկվել Ուրալյան ռազմաճակատ՝ Բուգուրուսլան—Բուգուլմինյան խմբին փրկելու համար: «Այսպիսով,— շարունակում է Ֆրունզեն,— ես այժմ ռեզերվում ոչինչ չունեմ, բացի 2-րդ դիվիզիայի առաջին բրիգադայի հապճեպ վերակազմավորված զորամասերից, որոնք կարող են պատրաստ լինել մայիսի 15-ից ոչ շուտ... Հենց այդ հանգամանքն է, որ ինձ հարկադրում է դեպի Հյուսիս շարժել Ձեր ձախ թևը, քանի որ, անկեղծ ասած, մարտական տեսակետից հույսս դնում եմ միայն նրա վրա... եթե ես Ձեզ ճիշտ եմ հասկացել, դուք հնարավոր եք համարում նույնիսկ ինձանից անհապաղ համալրում չստանալու դեպքում, Օրենբուրգ և Ստեռլիտամակ—Շաֆրանովո գիծը գրավելու նպատակով, ակտիվ գործողությունների անցնել Ձեր բանակի ամբողջ ռազմաճակատում» (նույն տեղը, թ. 116): «Այո՛, հնարավոր եմ համարում», կարճ պատասխանում է Գայը: Թշնամու դեմ պայքարի մի նոր պլան է առաջարկում նա, սակայն Ֆրունզեն պատասխանում է, որ «Ձեր նշված կոմբինացիաներից առաջինն այժմ ավելի հարմար եմ գտնում... Ուրեմն եկեք հենց այդ պլանի վրա էլ կանգ առնենք: Արդեն այժմ նախապատրաստեք համապատասխան հրաման և արեք նախապատրաստման կարգադրություններ: Իմ հրամանը համապատասխան առաջադրանքով կստանաք վաղը» (նույն տեղը, թ. 117): «Լսում և սպասում եմ Ձեր հրամանին: Ամենայն հաջողություն» (նույն տեղը),—պատասխանում է Գայը:*

*Վերոհիշյալ փաստերը խոսում են Գայի ռազմական տաղանդի և բարձրագույն հրամանատարության՝ նրա նկատմամբ ցուցաբերած մեծ վստահության մասին:*

*I բանակի զորամասերն աչքի ընկան նաև Բուգուլմայի, Բելեբեյի, Ստեռլիտամակի և այլ քաղաքների ազատագրման ժամանակ: Նրանք ձախողում են նաև Դուտովի և Խանժինի բանդաների՝ Օրենբուրգը գրավելու բոլոր փորձերը, ջարդում գեներալ Կապելի ընտիր զորամասերը:*

*Մասամբ ստացած վերքերի, մասամբ ուժից վեր լարված աշխատանքի հետևանքով խիստ վատացել էր I բանակի հրամանատար Հայկ Բժշկյանի առողջությունը, որի վերականգնման համար էլ, համաձայն իր դիմումի (ՍԲԿՊԱ, 157, ֆ. ց. 3, գ. 259, թ. 205) մայիսի 23-ին Գայն ազատվում է I բանակի հրամանատարի պարտականությունից և ուղարկվում բուժման:*

*1919 թ. ապրիլ—մայիս ամիսներին արևելյան ռազմաճակատում սովետական բանակների հասցրած հարվածները մեկընդմիշտ ջլատեցին թշնամու ուժերը և Կոլչակի վերջնական ջախջախման հիմքը դրեցին: Այդ հաղթանակներում իր խոշոր ներդրումն ունի նաև I բանակը՝ տաղանդավոր հրամանատար Հայկ Բժշկյանի գլխավորությամբ:*

*«I բանակը,— գրում է Մ. Տուխաչևսկին,— ո՛չ միայն համարով, այլև գործով առաջինն էր ինչպես կազմակերպչական հաջողությունների բնագավառում, այնպես էլ քաղաքացիական կռիվների՝ լայն ու համարձակ մանևրների իրականացման գործում»* («Революция и Война», 1921 г., № 4—5, стр. 190):

ԺԵՆՅԱ ԳԱՍՊԱՐՅԱՆ
Խ. Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի պատմության ամբիոնի ասպիրանտ

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

Ի. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՆՈՐՄԵՐԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

*Մարդկային հասարակության գոյությունն առհասարակ խիստ կդժվարանա առանց այն բազմազան հասարակական հարաբերությունները կարգավորելու, որպիսիք առկա են մարդկանց, կազմակերպությունների, դասակարգերի կամ պետությունների միջև: Դրա օբյեկտիվ անհրաժեշտությունը հենց սկզբից էլ թելադրված է արտադրության պրոցեսի հասարակական բնույթով, մարդու հասարակական-արտադրական գործունեությամբ: Արտադրության, սպառման կամ մարդկանց այլ հասարակական հարաբերությունների նույնիսկ ամենաառաջին պրիմիտիվ ձևերը որոշակի կազմակերպվածություն ու կարգավորվածություն էին պահանջում:*

*Սոցիալական նորմերը յուրօրինակ ձևով են արտացոլում հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները: Ուստի, բնական է, որ հասարակական-տնտեսական ֆորմացիաների հերթափոխության հետևանքով փոփոխվում են նաև սոցիալական նորմերի բովանդակությունն ու սիստեմը: Շահագործողական հասարակության սոցիալական նորմերի համար բնորոշ են անտագոնիստական խոր հակասությունները: Դա պայմանավորված է մասնավոր սեփականության և արտադրական հարաբերությունների համապատասխան տիպի տիրապետությամբ, որոնց առկայության պարագայում իրավունքը, բարոյականությունը և բոլոր մյուս սոցիալական նորմերն արտահայտում են հասարակության տարբեր դասակարգերի կամքը և պաշտպանում նրանց շահերը: Բայց և այնպես, բուրժուական գաղափարախոսներն ամեն կերպ ճգնում են ապացուցել, թե կապիտալիստական հասարակարգում սահմանված իրավական և այլ սոցիալական նորմերը որպես թե արտահայտում են ամբողջ ժողովրդի կամքը և ծառայում են որպես իրավահավասար հարաբերությունների կարգավորման միջոց: Սակայն ռեալ իրականությունը հերքում է նրանց բոլոր ճիգերը: Իրավունքի, բարոյականության և մյուս սոցիալական նորմերի՝ որպես հասարակական հարաբերությունների կարգավորիչների, փոխհարաբերությունը սահմանափակված է նեղ դասակարգային շրջանակներով: Ահա թե ինչու այդ հասարակության մեջ թեկուզ տիրապետող դասակարգն անգամ չի կարող այնպես անել, որ իր բարոյականությունը դառնա ամբողջ հասարակության բարոյականություն կամ թե իր իրավունքն ամբողջովին ընդունեն հասարակության բոլոր անդամները: Կապիտալիստական և, առհասարակ, ամեն մի շահագործողական հասարակության մեջ անհնարին է հասնել սոցիալական նորմերի միասնության:*



*Սոցիալական նորմերը որակական բոլորովին նոր բովանդակություն են ձեռք բերում սոցիալիստական հասարակարգում: Դրանք ամենից առաջ արտադրական հարաբերությունների միանգամայն նոր տիպ են արտացոլում: Այդ հարաբերությունները, ինչպես հայտնի է, հիմնված են հանրային սեփականության ու սոցիալիստական տնտեսավարման վրա և բացառում են ոչ միայն դասակարգային ամեն մի հակամարտություն, այլև մարդու շահագործումը մարդու կողմից: Հետևապես, սոցիալիստական հասարակարգում ստեղծվում է բոլոր սոցիալական նորմերի հիմնական սկզբունքների միասնություն:*

***

*Սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի, դրանց բովանդակության, դերի ու հիմնական սկզբունքների ուսումնասիրությունը գնալով ավելի է գրավում հետազոտողների և պրակտիկ աշխատողների ուշադրությունը, որոնք զբաղվում են կառավարման կազմակերպման հարցերով: Քննարկվող պրոբլեմի վերաբերյալ հրապարակվել են մի շարք աշխատություններ, սակայն դրանցում անհամեմատ քիչ ուշադրություն է նվիրվել սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի ընդհանուր սկզբունքներին: Մինչև այժմ հարցը քննվել է մասնատված կարգով՝ կա՛մ իրավական, կա՛մ բարոյական սկզբունքների տեսակետից: Մինչդեռ, հայտնի է, որ սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի սիստեմն իրավունքից ու բարոյականությունից բացի ընդգրկում է նաև հասարակական կազմակերպությունների նորմերը, սոցիալիստական հասարակության կյանքը: Թե՛ սոցիալիզմի և թե՛ կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում բոլոր հասարակական հարաբերություններն էլ կարգավորվում են այդ նորմերով, թեպետև սոցիալիստական հասարակարգի զարգացման տարբեր էտապներում դրանցից յուրաքանչյուրը կարող է տարբեր դեր ու նշանակություն ունենալ: Սակայն, զարգացման բոլոր էտապներում էլ սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի համար բնորոշ է* սկզբունքների միասնությունը:

*Սոցիալական նորմերի հիմնական սկզբունքների բնութագրման կարևոր կողմերը շարադրված են գիտական կոմունիզմի հիմնադիրների աշխատություններում: Նրանք, ամենից առաջ, տվել են* սկզբունքի *գիտական ըմբռնումը: Մարքսիզմ-լենինիզմն այդպիսին է համարում այն գաղափարական հիմունքը, բնության և հասարակական կյանքի պրոցեսների վերաբերյալ այն ղեկավար դրույթը, որն ամբողջովին համապատասխանում է ռեալ իրականության շարժման ու զարգացման օբյեկտիվ օրինաչափություններին: Գիտական սկզբունքի մարքս-լենինյան հասկացողությունն, ամբողջությամբ վերցրած, վերաբերում է նաև սոցիալական նորմերի հիմնական սկզբունքների բնութագրմանը:*

Սոցիալական նորմի սկզբունքն այնպիսի հասարակական-իրավական կատեգորիա է, որն արտացոլում և ընդհանրացնում է հասարակական կյանքի այն օբյեկտիվ երևույթները, որոնք առնչված են բոլոր հասարակական հարաբերությունների կարգավորման հետ։ Այլ կերպ ասած, սոցիալական նորմերի սկզբունքն այն հիմնական գաղափարն է, այն ղեկավար հիմունքը, որը սահմանում է հասարակական հարաբերությունների նորմատիվ կարգավորման ընդհանուր ուղղությունն ու հիմնական գծերը։

Սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի հիմնական սկզբունքների էությունը բնորոշվում է նորաստեղծ սոցիալ-տնտեսական ու քաղաքական կարգով։ Այդ սիստեմի բովանդակությունը կազմում է հասարակության նորմատիվ կարգավորման ղեկավար հիմքը, այսինքն՝ նշում է այդ կարգավորման հիմնական ուղղությունն ու բնույթը։ Սոցիալիզմի սոցիալ-տնտեսական ու քաղաքական կարգն, իր հերթին, որոշվում է սոցիալիստական արտադրահարաբերությունների տիրապետությամբ։ Հայտնի է, որ այդ հարաբերությունների հիմքում ընկած է արտադրամիջոցների հանրային սեփականությունը։ Դրանից հետևում է, որ սոցիալիստական արտադրահարաբերությունների տիրապետությունը միաժամանակ կազմում է սոցիալիստական հասարակարգի բոլոր սոցիալական նորմերի սկզբունքների միասնության հիմքը։ Սոցիալիստական արտադրահարաբերությունները ներթափանցում են իրավունքի, հասարակական կազմակերպությունների բազմազան նորմերի, կոմունիստական բարոյականության նորմերի բովանդակության մեջ։ Իսկ սոցիալական նորմերն, իրենց հերթին, արտացոլում են սոցիալիստական արտադրահարաբերությունների էությունն ու առանձնահատկությունները՝ բարեկամության, համագործակցության ու փոխօգնության հարաբերությունները։ Այդ առանձնահատկությունները ներթափանցում են բոլոր սոցիալական նորմերի բովանդակության մեջ։ Սակայն, յուրաքանչյուր նորմի մեջ դրանք յուրովի, սպեցիֆիկ ձևով են արտացոլվում։

Այսպես, սոցիալիստական արտադրահարաբերությունների տիրապետության սկզբունքը, կոնկրետանալով սոցիալիստական իրավունքի մեջ, ինքնուրույն նշանակություն է ստանում որպես սոցիալիստական սեփականության պահպանության սկզբունք։ Այստեղ կենտրոնական տեղ են գրավում տնտեսական, գույքային ու աշխատանքային բազմազան հարաբերությունները կարգավորող իրավական նորմերը։

Սոցիալիստական սեփականության պահպանման իրավական սկզբունքին համապատասխանում է այն բարոյական սկզբունքը, որ սոցիալիստական հասարակության յուրաքանչյուր անդամ հոգ է տանում հանրային սեփականությունը պահպանելու ու բազմապատկելու համար։ Սոցիալիստական արտադրահարաբերությունների տիրապետության սկզբունքը ծառայում է որպես սոցիալիստական բարոյականության համապատասխան նորմերի զարգացման ու ամրապնդման օբյեկտիվ հիմք։ Սոցիալիստական սեփականությունը որոշիչ ներգործություն է ունենում դասակարգերի ու առանձին անհատների հասարակական հոգեբանության վրա։ Դա արտահայտվում է այն բանում, որ հաստատվում են բարոյական նոր սկզբունքներ կոլեկտիվիզմի, ընկերական փոխօգնության և այլն։

Սոցիալիստական արտադրահարաբերությունների տիրապետության սկզբունքը պայմանավորում է նաև մարդու շահագործման վերացումը մարդու



կողմից։ Այդ սկզբունքի վրա է հիմնված սոցիալիստական հասարակության բազմազան հասարակական հարաբերությունների նորմատիվ կարգավորումը։ Ինչպես տեսանք, տվյալ սկզբունքը կոնկրետանում է բազմազան սոցիալական նորմերում։ Պորտաբույծների, հակահասարակական մակաբույծ տարրերի, ուրիշի աշխատանքի կամ անաշխատ եկամուտների հաշվին ապրել ցանկացողների դեմ մղվող պայքարի իրավական նորմերին համապատասխանում են հասարակական կազմակերպությունների համանման բարոյական սկզբունքներն ու նորմերը։

Սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի սիստեմում հիմնական տեղ է գրավում աշխատանքի համընդհանրության սկզբունքը։ Այդ սկզբունքը ծագեց ու ձևավորվեց այն պայքարի պրոցեսում, որ մղում էին աշխատավորները շահագործող դասակարգերի դեմ՝ հանուն սոցիալական հավասարության, իսկ տեսականորեն հիմնավորվեց ու ծրագրային բնույթ ընդունեց գիտական կոմունիզմի հիմնադիրների աշխատություններում։

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո աշխատանքի համընդհանրության սկզբունքը դառնում է հիմնական, քանի որ այս ամբողջապես պայմանավորված է սոցիալիստական հանրակարգով։ Սոցիալիզմի պայմաններում հասարակությունը ոչ միայն իր յուրաքանչյուր անդամին պարտավորեցնում է աշխատել, այլև ապահովում է յուրաքանչյուրի աշխատանքն՝ ըստ ունակությունների և վարձատրությունն՝ ըստ այդ աշխատանքի քանակի ու որակի։

Սոցիալիստական հասարակության յուրաքանչյուր անդամ արտադրության պրոցեսում որոշակի հարաբերությունների մեջ է մտնում նույնպիսի ազատ աշխատավորների հետ, ինչպիսին ինքն է։ Սակայն, նա չի կարող ընտրել այն բանվորական կոլեկտիվի անդամներին, որոնք զբաղված են նյութական որոշակի բարիքների արտադրությամբ։ Դա նշանակում է, որ նա բանվորական կոլեկտիվի մեջ, հասարակականորեն օգտակար աշխատանքի պրոցեսում ոչ միայն իրացնում է աշխատանքի համընդհանրության սկզբունքը, այլև ձևավորվում է որպես սոցիալիստական հասարակության լիարժեք անդամ։ Այդ պատճառով սոցիալիզմի պայմաններում աշխատանքի համընդհանրության սկզբունքը հանդես է գալիս թե որպես սահմանադրական կարևորագույն պարտականություն և թե որպես հասարակության յուրաքանչյուր աշխատունակ անդամի բարոյական պարտք։ Դա համապատասխանորեն արտացոլվում է սոցիալական նորմերի մեջ։

Աշխատանքի համընդհանրության սկզբունքը սոցիալիստական իրավունքի բնագավառում իր արտացոլումն է գտել կյանքի մի շարք բնագավառներում, ինչպես և բարոյախոսական կատեգորիաներում։

Հասարակական կազմակերպությունների սոցիալական նորմերն աշխատանքի համընդհանրության վերաբերյալ կոնկրետանում են իրենց անդամներին առաջադրած մի շարք պահանջներում՝ բարեխիղճ վերաբերվել աշխատանքին, մշտապես ձգտել բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և որակավորումը, խստորեն պահպանել աշխատանքի կարգապահությունը և այլն։

Եթե մենք հարցին մոտենանք սոցիալ-քաղաքական տեսակետից, ապա սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի միասնության հիմքը սոցիալիզմի դեմոկրատիզմի սկզբունքն է։ Այդ դեմոկրատիզմը, հանդիսանա-

լով սոցիալիստական հասարակարգի հիմնական քաղաքական սկզբունքը, հենվում է սոցիալիստական արտադրահարաբերությունների ու աշխատավորների իշխանության վրա։

Իրավական նորմերի բնագավառում սոցիալիստական դեմոկրատիզմն իր արտացոլումը գտնում է պետական կամքի համաժողովրդական բնույթի մեջ, որը և, ամբողջությամբ վերցրած, սոցիալիստական իրավունքի աղբյուրն է։ Դա արտահայտվում է նաև այն բանում, որ օրինագծերի կամ օրենսդրական բնույթի ակտերի նախապատրաստմանը մասնակցում է ամբողջ ժողովուրդը։

Սոցիալիստական դեմոկրատիզմը, որպես սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի հիմնական սկզբունքներից մեկը, արտացոլվում է նաև կոմունիստական բարոյականության նորմերում։ Վերջիններս, ինչպես նաև իրավունքի նորմերն, իրենց սոցիալական բնույթով արտահայտում են ժողովրդի կամքը։ Սովետական ժողովրդի կամքն արտահայտվում է նաև հասարակական կազմակերպությունների ընդհանուր նորմերում։ Այսպիսով, սոցիալիստական դեմոկրատիան հանդես է գալիս որպես սոցիալիստական հասարակարգի բոլոր սոցիալական նորմերի ընդհանուր սկզբունք։

Սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի ամբողջական սիստեմի հիմնական սկզբունքներից է նաև հասարակական և անհատական շահերի զուգորդումը։ Այստեղ իր բարձրագույն դրսևորումն է գտնում անհատի և կոլեկտիվի ընդհանուր շահը։ Այդ բանը համոզիչ ապացուցում է, մասնավորապես, այն կարևոր փաստը, որ սոցիալիստական հասարակության անդամները, չհաշված առանձին հանցագործ տարրերը, հոժարակամ կատարում են բոլոր օրենքները և ակտիվորեն մասնակցում կոմունիստական շինարարության խնդիրների լուծմանը։ Դա բացատրվում է գլխավորապես նրանով, որ սոցիալիստական հասարակության մեջ անհատական ընդհանուր և հասարակական շահերն ունեն մի ընդհանուր սոցիալ-տնտեսական հիմք և իրենց բավարարման մեկ ընդհանուր աղբյուր։ Այդպիսի հիմք ու աղբյուր է հանրային սեփականությունը։

Սակայն, չի բացառվում, որ սոցիալիզմի ժամանակ հասարակական և անհատական շահերը առանձին դեպքերում չհամընկնեն, մի բան, որը պայմանավորված է մի շարք օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոններով։ Հայտնի է, որ սոցիալիզմի ժամանակ դեռևս պահպանվում են տարբերությունները դասակարգերի, քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև, որպիսի հանգամանքն առանձին դեպքերում խախտում է անհատի և հասարական շահերի միասնությունը։ Հանդիսանալով հասարակական հարաբերությունների կարգավորման հիմնական միջոցներ, սոցիալական նորմերն իրենց այդ ֆունկցիան կատարում են անհատի, կոլեկտիվի և ամբողջ հասարակության շահերն իրար զուգորդելու միջոցով։

Այստեղ անհրաժեշտ ենք համարում նշել, որ առանձին հեղինակներ այն կարծիքն են հայտնել, թե անհատական և հասարակական շահերի միասնության սկզբունքը պետք է դասել ո՛չ թե սոցիալական նորմերի, այլ միայն սոցիալիստական իրավունքի սպեցիֆիկ սկզբունքների թվին։ Սակայն, նրանց այդ թեզը համոզիչ չէ, քանի որ անհատի և կոլեկտիվի, աշխատավորների ընդհանուր ու անձնական շահերի զուգորդումը հենց սոցիալիստական տնտեսական ու քաղաքական կարգի կարևոր առանձնահատկությունն է։ Եվ եթե մենք նկատի ունենանք, որ սոցիալիզմի ժամանակ հասարակական հարաբե-



րությունները կարգավորվում են ո՛չ միայն իրավունքի միջոցով, այլև բարոյականության ու հասարակական կազմակերպությունների նորմերով, ապա հասկանալի կլինի, որ անհատական և հասարակական շահերի միասնության սկզբունքը հանդես է գալիս որպես սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի ընդհանուր սկզբունք։

Դրա հետ է առնչված սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի մյուս՝ սոցիալիստական հումանիզմի սկզբունքը։ Սոցիալիզմի բոլոր սոցիալական նորմերն էլ կոչված են իսկական հումանիստական հարաբերություններ հաստատելու մարդկանց միջև, հասարակության և անհատի միջև։ Դա, ամենից առաջ, պայմանավորված է այն բանով, որ մեր հասարակարգում իրավունքը, բարոյականությունը և հասարակական կազմակերպությունների նորմերը խորապես հումանիստական են իրենց բովանդակությամբ ու իրենց սոցիալական նպատակադրությամբ։ Դրանք միշտ էլ բարձր են պահում հասարակության անդամների մարդկային արժանապատվությունը։ Այսպես, սոցիալիստական իրավունքն իր նորմերով պաշտպանում է հասարակության անդամների կյանքը, արժանապատվությունը, առողջությունը կամ թե անձնական ու գույքային բարիքները։ Լինելով իսկական հումանիզմի սկզբունքից, սոցիալիստական իրավունքը հիմնվում է գլխավորապես համոզման մեթոդի վրա։ Միաժամանակ, նա պատիժներ է նախատեսում նրանց նկատմամբ, ովքեր ոտնձգություն են թույլ տալիս հասարակության և նրա անդամների դեմ, թշնամաբար են վերաբերվում սոցիալիստական իրավակարգին ու աշխատավոր ժողովրդին։ Այսպիսով, սոցիալիստական իրավունքի հումանիզմը զուգակցում է համոզմունքի ու հարկադրանքի մեթոդներ, որոնք և պայմանավորում են նրա դաստիարակչական ֆունկցիան։

Սոցիալիստական հասարակարգի բարոյական և հասարակական կազմակերպությունների նորմերը նույնպես ելնում են սոցիալիստական հումանիզմի սկզբունքներից և այնպիսի փոխհարաբերություններ են հաստատում մարդկանց միջև, ինչպիսիք են ընկերությունը, բարեկամությունը, փոխադարձ հարգանքը, հոգատարությունը երեխաների ու ծերերի նկատմամբ, օգնությունը կարիքավորներին և այլն։ Այնուհետև, սովետական մարդկանց մեջ դաստիարակում են ճշմարտացիություն ու ազնվություն, բարոյական մաքրություն, պարզություն ու համեստություն։ Հենց այդ բարոյական կատեգորիաներն էլ կազմում են սոցիալիստական իրավունքի ու հասարակական կազմակերպությունների նորմերի պահանջները և արտացոլում են սոցիալիստական հումանիզմի սկզբունքի էությունը։ Վերջապես, սոցիալիստական հումանիզմի սկզբունքը պահանջում է անդուլ պայքար մղել խաղաղությունը պահպանելու ու ջերմամիջուկային պատերազմը կանխելու համար։ Սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի այդ և մյուս հումանիստական գծերն արտահայտում են ամբողջ առաջադեմ մարդկության իղձերը։

Դրանից էլ բխում է սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի մյուս հիմնական սկզբունքը՝ պրոլետարական և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքը։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը, ինչպես հայտնի է, արտահայտում է բանվոր դասակարգի միասնությունն այն պայքարում, որ նա մղում է կապիտալիզմը տապալելու, ազգային անկախություն և ժողովուրդների իրավահավասարություն հաստատելու, սոցիալիզմ և կոմունիզմ կառուցելու համար։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը բոլոր

կոմունիստական և բանվորական կուսակցությունների ծրագրի ու քաղաքականության հիմքն է։ Այդ սկզբունքը որակական նոր բովանդակություն է ստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի և սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հաստատումից հետո։ Այն վերածում է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, որը և մարմնավորված է սոցիալիստական երկրների ժողովուրդների սոցիալ-տնտեսական և քաղաքական համագործակցության մեջ՝ լիակատար իրավահավասարության, պետական անկախության ու սուվերենության հիման վրա։ Սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքի հիմնական գծերից մեկն էլ այն է, որ այն դրսևորվում է ոչ միայն որպես ժողովրդի բարոյական պահանջ ու գաղափարախոսություն, այլև սոցիալիստական երկրների պետական քաղաքականություն։ Ուստի, բնական է, որ այդ սկզբունքն իր արտացոլումը գտնում է, ամենից առաջ, սոցիալիստական երկրների իրավական նորմերի մեջ։ Բազմազգ միասնական պետության ներսում սոցիալիստական իրավունքը հաշվի է առնում ինչպես ընդհանուր, այնպես էլ յուրաքանչյուր առանձին ժողովրդի ու ազգության տնտեսական, կուլտուրական, ազգային ու պետական զարգացման առանձնահատկությունները։

Պրոլետարական և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքը կոմունիստական բարոյականության նորմերում արտացոլվում է մի շարք պահանջներով. այն է՝ բոլոր երկրների աշխատավորների միասնություն, բոլոր ժողովուրդների բարեկամություն, անհանդուրժողականություն ռասայական և ազգային խտրականության նկատմամբ, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բոլոր երկրների եղբայրական համերաշխություն, անհաշտ պայքար կոմունիզմի, խաղաղության և առաջադիմության թշնամիների դեմ։

Այդ սկզբունքը հասարակական կազմակերպությունների նորմերում կոնկրետանում է այն ձևով, որ տվյալ կազմակերպության յուրաքանչյուր անդամ հանդես գա որպես պրոլետարական և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարների մունետիկ, անհաշտ պայքար մղի բուրժուական նացիոնալիզմի, շովինիզմի, ռասիզմի և կոսմոպոլիտիզմի դեմ, մշտապես հավատարիմ ու նվիրված լինի իր հայրենիքին, բոլոր սոցիալիստական երկրների համագործակցությանը և միջազգային պրոլետարիատի գործին։

Սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի ինտերնացիոնալ բնույթը հսկայական միջազգային նշանակություն ունի։ Այն միաժամանակ խթանում է ճնշված ժողովուրդների պայքարը հանուն իրենց ազատագրման, ընդդեմ ռասիզմի և նեոգաղութատիրության։

Հասարակական հարաբերությունների կարգավորումը սոցիալիստական հասարակարգում իրականանում է կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ։ Այդ իսկ պատճառով հասարակական կյանքի բազմազան կողմերի նկատմամբ կոմունիստական կուսակցության ցույց տված ղեկավարությունը սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի ամենաորոշիչ սկզբունքներից մեկն է:

Կուսակցության ղեկավարման պրակտիկ իրականացման հիմնական ձևերն ու մեթոդները տրված են Վ. Ի. Լենինի երկերում, կուսակցության ծրագրում ու կանոնադրության մեջ։ Մեր երկրի տնտեսական, քաղաքական և կազմակերպական կարևորագույն հարցերը, ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, չեն կարող լուծվել առանց կուսակցության ղեկավար դիրեկտիվների։ Դրա



օրինակ կարող են ծառայել կուսակցության XXIII համագումարի դիրեկտիվները երկրի ժողտնտեսության զարգացման հնգամյա պլանի մասին։

Կուսակցության ծրագրի մեջ ասված է կառավարման կազմակերպումը մշտապես կատարելագործելու անհրաժեշտության մասին։ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը (1965) կոնկրետ որոշումներ ընդունեց ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործման վերաբերյալ։ Այդ որոշումներին համապատասխան ՍՍՀՄ Գերագույն սովետը, ինչպես նաև միութենական հանրապետությունների գերագույն սովետները օրենսդրական մի շարք միջոցառումներ մշակեցին ժողտնտխորհների, մինիստրությունների և գերատեսչությունների վերակառուցման, պլանավորման կատարելագործման, գների կարգավորման և էկոնոմիկայի կառավարման մի շարք այլ կարևոր հարցերի ուղղությամբ։ Դրանով իսկ կուսակցության որոշումներն իրենց արտացոլումը գտան սոցիալական նորմերում, հաստատվեցին հասարակական հարաբերությունների կարգավորման այնպիսի նոր ձևեր, որոնք լիովին համապատասխանում են կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանին։

Սրանք են սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի հիմնական սկզբունքները, որոնք կոնկրետանում են իրավունքի, բարոյականության և հասարակական կազմակերպությունների նորմերում։ Դրանցից յուրաքանչյուրի մեջ նրանք ինքնուրույն նշանակություն են ձեռք բերում և համապատասխանորեն արտահայտվում են տարբեր կատեգորիաներով։ Այդ իսկ պատճառով սոցիալական նորմերի միասնությունը չի նշանակում նրանց նույնություն։ Այսպես, իրավունքի որոշ նորմերն այնպիսի պահանջներ են պարունակում, որոնք բարոյականության նորմեր չեն դարձել և չեն կարող հասարակական կազմակերպությունների նորմեր դառնալ։ Սակայն սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի համար էականը ոչ թե տարբերություններն են, այլ այն ընդհանրությունը, որը պայմանավորում է նոր սոցիալիստական օրինաչափությունը։ Դա, ամենից առաջ, արտահայտվում է իրավունքի, բարոյականության և հասարակական կազմակերպությունների նորմերի դիալեկտիկական միասնությամբ և փոխադարձ ներթափանցմամբ։ Հասարակական նորմերը, ստանալով սոցիալիստական պետության սանկցիան, ձեռք են բերում իրավական բնույթ, բարոյական նորմերն էլ ամրագրված են հասարակական կազմակերպությունների նորմերում։ Նրանց միասնությունն արտացոլվում է այն բանում, որ իրավունքի կարևորագույն նորմերն ուղղակի ու անմիջականորեն հաստատում են կոմունիստական բարոյականության սկզբունքները։ Մյուս կողմից, կոմունիստական բարոյականության հիմնական պահանջներից է սոցիալիստական իրավունքի նորմերի անվերապահ պահպանումը։ Իրավունքի բազմաթիվ կոնկրետ պահանջները կամ սանկցիաները, հասարակական կազմակերպությունների նորմերը նույնական են կամ թե սերտորեն շաղկապված ու ներքնապես համաձայնեցված են միմյանց։

Սոցիալիստական հասարակարգի սոցիալական նորմերի սկզբունքների ընդհանրությունը, նրանց սերտ փոխգործողությունը և փոխադարձ ներթափանցումը օբյեկտիվորեն պայմանավորում են նրանց աստիճանական վերաճումը կոմունիստական համակեցության միասնական նորմերի։

Լ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

# ՀԱՅ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՄՏՔԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Կապիտալիստական հարաբերությունների զարգացումը տրոհում էր գյուղացիական բնատնտեսությունը և բարձրացնում ֆեոդալական կալվածների ապրանքայնությունը, որն աճում էր գյուղացիական մասսաներին դաժանորեն շահագործելու հաշվին։ Գյուղացիական մասսաների վիճակն ավելի անտանելի էր դառնում չափազանց բարձր հարկերի պատճառով։ Այս ամենը քայքայեց նրանց տնտեսությունը, դրանով ողջ ֆեոդալական տնտեսությունը հասցրեց ճգնաժամի։

Ֆեոդալական սիստեմը տրոհող հակասությունները սրեցին դասակարգային հակամարտությունները, հատկապես ֆեոդալական հասարակության հիմնական դասակարգերի՝ գյուղացիների և ֆեոդալների միջև։ Ռուսաստանում, ինչպես նաև Արևելքում, ուր ֆեոդալական շահագործումն ավելի ու ավելի դաժան ձևեր էր ընդունում, գյուղացիներն սկսեցին դժգոհել հին կյանքից, բարձրացավ գյուղացիական ապստամբությունների ալիքը։

Հայաստանն անմասն չմնաց այս ամենից։ Եթե XIX դարի 40-ական թվականներին գյուղացիական ելույթները պատահական բնույթ էին կրում, ապա 50-ական և, մանավանդ՝ 60—70-ական թվականներին դրանք ընդգրկեցին գրեթե ողջ Հայաստանը՝ և արևելյան և արևմտյան։

Հայ հակաֆեոդալական շարժման մեջ կար հասարակական-քաղաքական երկու հիմնական ուղղություն՝ բուրժուա-նացիոնալիստական, որն արտահայտում էր բուրժուազիայի շահերը և հեղափոխական-դեմոկրատական, որն արտահայտում էր գյուղացիների և աշխատավոր ժողովրդի շահերը։ Իշխող դասերը՝ ֆեոդալներն ու հոգևորականությունը թշնամական դիրք էին գրավել հակաֆեոդալական շարժման նկատմամբ։ Նրանք՝ ի դեմս ազնվականության ու եկեղեցու, Հայաստանի տնտեսական հետամնացության հետևանքով, դեռևս լիովին չէին բուրժուականացել, իսկ կապիտալիզմի դանդաղ զարգացումն առևտրա-արդյունաբերական բուրժուազիային ինքնուրույն ուժ չէր դարձրել։ Դրա համար էլ հակասություններն ավելի էին սրվում առևտրա-արդյունաբերական բուրժուազիայի, ֆեոդալների և բարձր հոգևորականության միջև, որոնք



կողոպտում էին ժողովրդին, իսկ քաղաքականապես ենթարկում ցարին ու սուլթանին։

Կղերական-ամիրայական հոսանքի ներկայացուցիչները ֆեոդալական հարաբերությունների մոլի ջատագովներն էին, ճորտային իրավունքի վերացման կատաղի հակառակորդները և ազգային-ազատագրական շարժման ոխերիմ թշնամիները։ Այդ էր պատճառը, որ հայ ժողովրդի հակաֆեոդալական ազգային-ազատագրական շարժման ճակատագրի համար առանձին վտանգ էին ներկայացնում կղերական-կալվածատիրական լիբերալիզմի փիլիսոփայական և քաղաքական թեորիաները, որոնք ամբողջ ուժով հակազդում էին ժողովրդի մեջ դեմոկրատական գաղափարների թափանցմանը և, օգտագործելով իրենց դիրքը, ստանալով ինքնակալության և սուլթանիզմի օժանդակությունը, հաշվեհարդար էին տեսնում դեմոկրատական տրամադրություններ ունեցող հասարակական գործիչների հետ։

Չնայած այն բանին, որ պարբերական մամուլում («Երևակ» թերթ, Կոստանդնուպոլիս, 1857—1866 թթ., «Մասյաց աղավնի», Փարիզ, ապա Թեոդոսիա, 1855—1865 թթ., «Ճռաքաղ», Մոսկվա, 1858—1862 թթ.) և այլ հրատարակություններում ներկայացվում էին հայ հասարակայնության իշխող խավերը, սակայն նրանց տնտեսական միտքը գրեթե չէր արտացոլվում։

Այդ տեսակետից առանձնապես տարբերվում է Մխիթարյանների կաթոլիկ միաբանության՝ Վենետիկում հրատարակվող «Բազմավեպ» ամսագիրը, ուր տնտեսագիտական բնույթի հոդվածներ հաճախակի էին տպագրվում։ Մխիթարյանների տնտեսական ուսմունքի տեսական ծրագիրը բուրժուական քաղաքատնտեսությունն էր։ Հայտնի են նրանց քաղաքատնտեսագիտական բնույթի մի շարք աշխատությունները. օրինակ՝ Եպիսկոպոս Փափազյանի՝ Առևտրի կրկնակի հաշվապահություն, Առևտրական նամակների պատճեններ, Տերտերյանի՝ Գիտություն ու առևտուր և այլն, որտեղ հեղինակներն արտացոլելով հայ առևտրական բուրժուազիայի գործունեությունը, այդպես էլ մինչև վերջ մնացին հետադիմական գաղափարախոսության կրողները։

Ֆեոդալական-ճորտատիրական կարգերի ճգնաժամի շրջանում պարզ դարձավ, որ գոյություն ունեցող տիրող կարգերը մահվան են դատապարտված, բայց 1861 թվականի ռեֆորմը չէր կարող լուծել ֆեոդալական սեփականության ոչնչացման, կալվածատերերի իշխանության լիովին տապալման՝ այդ երկու հասունացած հարցերից և ոչ մեկը։ Ռեֆորմն, ըստ էության, կոմպրոմիս էր կալվածատերերի ու կապիտալիստների միջև։

Այդ ճանապարհն էին բռնել լիբերալ-բուրժուական մտքի ներկայացուցիչները։ Նրանց գաղափարական պայքարը, որ մղվում էր հանուն կապիտալիստական հարաբերությունների հաստատման, ֆեոդալական հարաբերությունների որոշ քննադատություն էր բովանդակում, սակայն իր էությամբ բուրժուական բնույթ ուներ։ Նրանք չէին ըմբռնում, որ առանց ֆեոդալական հարաբերությունների և խոշոր կալվածատիրական հողատիրության ոչնչացման, Հայաստանը չէր կարող կապիտալիզմի զարգացման ուղին բռնել։

Կրթության ու լուսավորության հարցերում լիբերալ-բուրժուազիայի ներկայացուցիչների քաղաքական ռադիկալիզմը համատեղվում էր նրանց տնտեսական և պրակտիկ կոնսերվատիզմին և, լինելով կապիտալիզմի զարգացման կողմնակիցներ, նրանք իրենց տնտեսական ծրագրով պրակտիկորեն կողմնակից էին կապիտալիզմի ռեֆորմիստական զարգացմանը։ Այլ խոսքով,

տնտեսական մտքի լիբերալ-բուրժուազիայի ներկայացուցիչները արտահայտում էին հայ առևտրա-արդյունաբերական բուրժուազիայի շահերը, որը ջանում էր ազատել իր գործունեությունը խաթարող ֆեոդալիզմի կապանքներից, բայց ցանկանում էր դրան հասնել տիրող դասակարգի հետ դաշնակցած։

Շահագործող դասակարգերի գաղափարախոսներին հետևողականորեն հակադրվում էին միայն աշխատավոր գյուղացիության շահերի անկեղծ պաշտպանները՝ հայ հեղափոխական-դեմոկրատները։ Նրանք, Միքայել Նալբանդյանի գլխավորությամբ, կանգնած էին հին հասարակական-տնտեսական հարաբերությունների արմատական վերափոխման դիրքերում, ձգտում էին հեղափոխության ճանապարհով տապալել տիրող դասակարգը, ոչնչացնել նրա քաղաքական և տնտեսական հիմքերը։

Ո՞րն էր հայ հեղափոխական-դեմոկրատների գաղափարների գենեզիսը։ Այս հարցի պատասխանը պետք է փնտրել, մի կողմից՝ նրանց շրջապատող հասարակական կյանքի, մյուս կողմից՝ գաղափարական ժառանգության մեջ։ Հարցի երկրորդ կողմը հեղափոխական-դեմոկրատների համար միատեսակ չէր։ Նալբանդյանի ստեղծագործությունների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ նա ոչ միայն կապված էր հայ դեմոկրատական գաղափարական ժառանգությանը, այլև գիտակ է Արևմտյան Եվրոպայի ու Ռուսաստանի առաջավոր գաղափարախոսությանը։ Նույնը, թեև նվազ չափով, կարելի է վերագրել Հարություն Սվաճյանին և Արսեն Թոխմախյանին, որոնք չնայած մասսաների հետ ունեցած իրենց անմիջական թույլ կապերին, Նալբանդյանի նման ուսուցիչ ունեին, որի ստեղծագործություններից առատորեն քաղում էին ռուսական և արևմտա-եվրոպական առաջավոր գաղափարները։ Սակայն, անհրաժեշտ է նկատել, որ այս շրջանում արևմտաեվրոպական և ռուսական առաջավոր մտածողության տարածման ուղղությամբ մեծ դեր էին խաղում նաև հայ բուրժուազիայի մտածողները, որոնք հարելով բուրժուական այս կամ այն կոնցեպցիային, ակամա դառնում էին Ռուսաստանում ու եվրոպական երկրներում տարածված որևէ առաջավոր գաղափարախոսության ուղեկցողները։

Բայց հեղափոխական-դեմոկրատների աշխարհայացքի աղբյուրները պետք է որոնել ոչ այն բանում, որ նրանք ծանոթ էին ռուսական և արևմտաեվրոպական հասարակական առաջավոր մտքին, հայկական հասարակական մտքի հուշարձաններին։ Ոչ, ամենևին էլ օգտագործված գրականությունը չէր նրանց աշխարհայացքի աղբյուրը։ Նալբանդյանի, Սվաճյանի, Թոխմախյանի և ուրիշ, դեռևս ոչ այնքան հայտնի, դեմոկրատների հեղափոխական գաղափարախոսության աղբյուրը հայ գյուղացու կյանքի իմացությունն էր։ Միմիայն այդ ճանաչումը նրանց դարձրեց հեղափոխական դեմոկրատներ։

Վ. Ի. Լենինը խոսելով XIX դարի ռուսական առաջավոր մտածողության մասին, գրում էր, որ նրանում արտահայտվում էին ոչ թե «ինտելիգենտական տրամադրությունները», այլ ճորտ գյուղացիների տրամադրությունները ճորտատիրական իրավունքի դեմ, արտահայտվում էր բողոքի ու պայքարի պատմությունը ճորտատիրական մնացուկների դեմ ռուսական կյանքի ամբողջ իրակարգում, արտահայտվում էին բնակչության ամենալայն մասսաների շահերը՝ ժողովրդի ամենատարրական իրավունքների համար մղվող պայքարում, որ խախտում էին ճորտատիրական հաստատությունները (Երկ. հ. 16, էջ 157)։

Այդպիսին է XIX դարի ռուսական հեղափոխական դեմոկրատների աշ-



խարհայացքների սոցիալական հիմքերի լենինյան գնահատականը։ Հայ հեղափոխական դեմոկրատների աշխարհայացքի սոցիալական հիմքերը, որոշ տարբերությամբ հանդերձ (որը հետևանք է նրանց յուրահատուկ պայմանների) համասեռ են ռուսականին։

Ժողովուրդը սեփական ինտելիգենցիայի կարիք էր զգում, քանի որ ինքը չէր կարող ստեղծել իր գաղափարախոսությունը։ Ժողովրդի երազած ինտելիգենցիան շահագործող դասակարգերից պետք է խլեր հոգևոր մոնոպոլիան։ Այդ բանը հասկացան հայ հեղափոխական դեմոկրատները, որոնք տեսնում էին սաղմնավորվող հայ բուրժուազիայի տատանվող, դավաճանական դերը ժողովրդական ապստամբությունների հանդեպ։ Նրանք ցանկանում էին ստեղծել մի ինտելիգենցիա, որը հասկանար ժողովրդի ցավերը և նրան օգներ թոթափելու իր մոլորությունները։ Ֆեոդալական հողային սեփականության դեմ գյուղացիական մասսաների մղած պայքարը, գոյություն ունեցող կարգերի տարերային ժխտման երևույթները օբյեկտիվորեն պարփակում էին պոտենցիալ գաղափարներ, որոնք իրենց արտահայտությունն էին գտել հայ հեղափոխական դեմոկրատների աշխարհայացքում։ Սույն հոսանքի ամենախոշոր ներկայացուցիչը Միքայել Նալբանդյանն էր։ Նա Հայաստանի հասարակական մտքի պատմության մեջ մտավ որպես հարստահարված գյուղացիական հեղափոխության առաջնորդ և առաջին գաղափարախոս։ Նրա աշխարհայացքի ձևավորման գործում անմիջական ազդեցություն է ունեցել նրան նախորդած հայ դեմոկրատական միտքը, որը ներկայացված է այնպիսի մեծ լուսավորչի կողմից, ինչպիսին Խաչատուր Աբովյանն է։ Սակայն, Նալբանդյանի հեղափոխական-դեմոկրատական հայացքների ձևավորման խնդրում մեծ ազդեցություն է ունեցել նաև ռուսական հեղափոխական-դեմոկրատական միտքը, հանձինս նրա մեծագույն ներկայացուցիչների՝ Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի, Գերցենի, Օգարյովի և արևմտաեվրոպական հեղափոխական մտածողների։

Բայց խորապես սխալված կլինենք, եթե Միքայել Նալբանդյանի գործունեությունը համարենք ռուսական հեղափոխական դեմոկրատների և Արևմուտքի հեղափոխական ծրագրերը, ագիտացիայի ձևերը հայկական միջավայր տեղափոխելու մեխանիկական փորձ։ Նալբանդյանի հեղափոխական գործունեության արմատները Հայաստանում էին և զարգանում էին հայկական միջավայրում։ Նա արտահայտում էր հայկական ժողովրդական մասսաների հակաֆեոդալական ձգտումները։ Նրա հայացքները մեծ հավանություն ու աջակցություն էին գտնում հայ առաջավոր ինտելիգենցիայի և ուսանողության շըրջանում, ուժեղ ազդեցություն թողնում հայ դեմոկրատական մտքի զարգացման վրա։ Նա ուներ մերձավոր զինակիցներ և հավատարիմ հետևորդներ։ Առաջինների թվում էր Հ. Սվաճյանը, իսկ վերջինների՝ Ա. Թոխմախյանը։

Հարություն Սվաճյանի անունը սերտորեն կապված է Միքայել Նալբանդյանի անվան հետ և նրա հեղափոխական գործունեությունը ծավալվում է հայ մեծ դեմոկրատի անմիջական ներգործությամբ։

Հայ հեղափոխական-դեմոկրատական մտքի մյուս նշանավոր ներկայացուցիչը Արսեն Թոխմախյանն է, որի հասարակական բուռն գործունեությունը սկսվում է Միքայել Նալբանդյանի մահից 7—10 տարի անց։ Նա պատմության մեջ չի մտել որպես թեորիական-գիտական աշխատությունների, բազմահատոր երկերի հեղինակ։ Իր աշխարհայացքը, քաղաքական ծրագիրը նա շարադրել է բանաստեղծություններում, հրապարակախոսական ելույթներում, հոդ-

վածներում, ճամփորդական նոթերում։ Արսեն Թոխմախյանը միայն երկու աշխատություն է թողել, որոնք հրապարակվել են 1881 և 1882 թվականներին նրա ունեցած հրապարակային ելույթներից հետո և լրագրային հոդվածներ։ Բայց, չնայած դրան, այդ ստեղծագործություններն ու լրագրային հոդվածները հնարավորություն են ընձեռում ամբողջական գաղափար կազմելու նրա մասին՝ որպես հեղափոխական դեմոկրատի, հարստահարված գյուղացու գաղափարախոսի։

Այսպիսով, համոզված կարելի է ասել, որ XIX դարի 60—80-ական թվականների Հայաստանի հասարակական մտքի մեջ հեղափոխական դեմոկրատիան խոշոր հոսանք էր և հայ հասարակության լայն զանգվածներում շատ կողմնակիցներ ու հետևորդներ ուներ։ Այդ դարաշրջանը եղել է երկրում դասակարգային հակասությունների ծայրահեղ սրման ժամանակաշրջան, ազգային անկախության համար մղվող վճռական պայքարի ժամանակաշրջան։ Սոցիալական բավական բարդ այդ պայքարի հանգուցակետը եղան 1861 թվականի գյուղացիական ռեֆորմը և 1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմը։ Հենց այդ տարիներին հայ հեղափոխական դեմոկրատների ստեղծագործությունը մեծ ծաղկում ապրեց, վառ էջեր թողնելով Հայաստանի հասարակական առաջավոր մտքի պատմության մեջ։ Ժամանակի բոցավառ հայրենասերները ձգտում էին օգնել պայքարի ելած մասսաներին՝ ճիշտ հասկանալու կատարվող իրադարձությունները, ծավալված սոցիալական կռվում ըմբռնելու իրենց խնդիրները, ջանում էին ձևակերպել այն գաղափարները, որոնց համար պետք էր պայքարել։ Ու թեև սրանց հայացքներն ու դատողություններն ունեին խիստ սահմանափակություններ, այնուամենայնիվ, նրանց ստեղծած հեղափոխական-դեմոկրատական աշխարհայացքը մարդկային բանականության խոշոր նվաճումներից է, ժողովրդին անձնվիրաբար ծառայելու փայլուն վկայություն։

Հայ հեղափոխական դեմոկրատների աշխարհայացքն ընդհանուր շատ գծեր ուներ այլ երկրների հեղափոխական դեմոկրատների գաղափարախոսության հետ։ Բայց միաժամանակ, այն իր բնորոշ գծերով յուրօրինակ էր, որը հետևանք էր XIX դարի առաջին կեսի Հայաստանի (որի մի մասը ռուսական կայսրության մեջ էր մտնում, մյուսը՝ տառապում էր սուլթանական Թուրքիայի լծի տակ) պատմական զարգացման առանձնահատկության։

Հայ հեղափոխական դեմոկրատների տնտեսական հայացքները լիովին հասկանալու համար անհրաժեշտ է դրանք ուսումնասիրել իրենց իսկ քաղաքական ու փիլիսոփայական տեսանկյունից։ Անհնար է նրանց հայացքների ճիշտ գնահատականը տալ, եթե վերջիններիս դիտելու լինենք մեկուսի, վերացական, փորձենք կտրել նրանց թեորիական հայացքները քաղաքական դիրքերից, հեղափոխական դեմոկրատիզմից, որը նրանց աշխարհայացքի առանցքն է։

Հայ հեղափոխական դեմոկրատները հանձինս Միքայել Նալբանդյանի ու նրա հետևորդների, հիմնականում կանգնած էին մատերիալիզմի դիրքերում, բայց XIX դարի 50—80-ական թվականների Հայաստանի սոցիալ-տնտեսական պայմանների պատճառով նրանք չկարողացան բարձրանալ պատմական մատերիալիզմի մակարդակին։ Նրանց մատերիալիզմն իր վառ արտահայտությունն է գտել հատկապես արծարծվող հակակրոնական հարցերում, որի աղբյուրն է հենց ֆեոդալիզմի ժամանակաշրջանի հասարակական կյանքը։



Հայ գյուղացիության գաղափարախոսի՝ Միքայել Նալբանդյանի աթեիզմը մարտնչող բնույթ ունի, որը ֆեոդալիզմի, ցարիզմի ու սուլթանիզմի լծի դեմ պայքարի կոչի հետ մեկտեղ, տարածում գտավ մասսաների մեջ։ Մեծ դեմոկրատն իր ստեղծագործություններում պատռում էր կրոնի սոցիալական քողը։ Նալբանդյանի ու նրա հետևորդների կարծիքով կրոնը շահագործող դասակարգերի տիրապետության զենք է։ Դեմոկրատները մեծ խորաթափանցությամբ բացահայտում էին կրոնի սերտ կապը ցարիզմի ու սուլթանիզմի քաղաքականության հետ։ Միքայել Նալբանդյանը, Հարություն Սվաճյանը, Արսեն Թոխմախյանը բացահայտում էին շահագործող դասակարգերի երեսպաշտությունը, որոնք կրոնական հաշիշով քողարկում էին իրենց շահամոլական նպատակները։

Սվաճյանը «Մեղու» թերթում, «Վանեցի Պողոս վարդապետը» հոդվածում գրում էր, որ Վանի եկեղեցու սպասավորը կրոնի ու եկեղեցական ժողովների անվան տակ քողարկված, պաշտպանում է իր շահատենչական ձգտումները, իսկ ժողովուրդը չի հարում ո՛չ եկեղեցական ժողովներին, ոչ էլ կաթողիկոսին։ Մի այլ հոդվածում նա ուղղակի ասում է, որ եկեղեցիները յուրացնում են աշխատավոր ժողովրդի ստեղծած հարստությունը և այն օգտագործում իրենց անձնական նպատակների համար։ Այնտեղ, ուր հարուստ են եկեղեցիները, ժողովուրդը ընդհակառակը ճնշված է, կեղեքված ու աղքատ։ Սակայն հայ հեղափոխական դեմոկրատները պայքար մղելով կրոնի դեմ, այնուամենայնիվ, չկարողացան մինչև վերջ հասկանալ կրոնի դասակարգային արմատները և նրա հաղթահարման ուղիները։

Դեմոկրատների աշխարհայացքում ուրույն տեղ է գրավում մարդկային հասարակության ծագումն ու զարգացումը, որը նրանք անմիջականորեն կապում են «տնտեսական հարցերի» հետ։ Իհարկե, ինչպես Նալբանդյանը, այնպես էլ նրա հետնորդները «տնտեսական հարց» ասելով հասկանում էին նյութական կյանքի պայմանները և ոչ թե հասարակական արտադրության այս կամ այն ձևը։

Հայ հեղափոխական դեմոկրատներն անմիջականորեն տնտեսական կյանքից էին բխեցնում հասարակական-քաղաքական հակասությունները։ Նրանք տեսնում էին միմյանց հակադիր շահեր ունեցող դասակարգեր՝ շածագործողների ու շահագործվողների դասակարգեր։

Արսեն Թոխմախյանը, որը չէր կարող հասկանալ արտադրության և արտադրահարաբերությունների նշանակությունը հասարակության զարգացման գործում և այդ պատճառով էլ չէր կարող բացահայտել հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքները, մարդկային հասարակության դժբախտության գլխավոր աղբյուրը տիրող դասակարգի չար կամքի մեջ էր տեսնում, դասակարգ, որի նպատակն անձնական շահերի ապահովումն էր, իսկ ժողովրդի երջանկության մասին մտածելը նրան ամենևին չէր վերաբերում։ Այս, ինչ խոսք, մարդկային հասարակության զարգացման պատմական ընթացքի գաղափարական բացատրությունն էր, որը հատուկ էր ինչպես հայ հեղափոխական դեմոկրատներին, այնպես էլ բոլոր այն դեմոկրատական պատմական թեորիաներին, որոնք «լավագույն դեպքում քննում էին մարդկանց պատմական գործունեության լոկ իդեական մոտիվները, չհետազոտելով այն, թե ինչից են առաջանում այդ մոտիվները, չըմբռնելով հասարակական հարաբերությունների սիստեմի զարգացման օբյեկտիվ օրինաչափությունը, չտեսնելով

այդ հարաբերությունների արմատները նյութական արտադրության զարգացման աստիճանի մեջ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 21, էջ 57):

Ի հակադրություն տիրող դասակարգերի գաղափարախոսության, Թոխմախյանը բարձր էր գնահատում ժողովրդի դերը հասարակության զարգացման գործում: Նա գտնում էր, որ ո՛չ թե իշխողները, այլ ժողովուրդն է հասարակության կմախքը, նրա հիմքը: Հասարակության զարգացման գործում ընդգծելով ժողովրդական մասսաների առաջնային դերը, Թոխմախյանը հաստատում էր շահագործողական հասարակության ռեալ հակասությունները՝ պատմության մեջ ժողովրդական մասսաների վճռական դերի և նրանց իրավազուրկ վիճակի միջև եղած հակասությունը: Չնայած այն բանին, որ ժողովուրդն է կազմում պետության հիմքը,— գրում է Թոխմախյանը,— հենց նա է այդ պետության մեջ ճնշվածը, իրավազուրկը, որն ապրում է սոված ու աղքատ: Այստեղից Թոխմախյանը եզրակացնում էր շահագործողական կարգերի անցողիկ լինելը և ընդգծում, որ եթե գալու է ազգի վերածնման օրը, ապա դա կլինի միմիայն գյուղացու ջանքերի շնորհիվ:

Հեղափոխական դեմոկրատների ուշադրության կենտրոնում է եղել ժողովրդի տնտեսական ծանր վիճակը: Եվ պատահական չէ, որ նրանք պարբերական մամուլում զետեղած իրենց հոդվածներում, հրապարակախոսական ելույթներում բազմիցս են անդրադարձել այդ հարցին: Մարդկության մեծամասնության տխուր կյանքի պատճառը նրանք տեսնում էին այն բանում, որ աշխատավոր մարդը զրկված է իր ստեղծած հարստության տերը լինելու իրավունքից: Հասարակության փոքրամասնությունը կազմող ունևոր մարդիկ խլում և յուրացնում են այն ամենը, ինչը իրենց աշխատանքով ստեղծում են հասարակության մեծամասնությունը կազմող ընչազուրկները:

Ֆեոդալական հարաբերությունների և սուլթանիզմի տիրապետության դեմ հայ գյուղացիության մասսայական պայքարի փորձը, եվրոպական հեղափոխական իրադարձությունների ընթացքը և Ռուսաստանի գյուղացիական շարժումները Միքայել Նալբանդյանին ու նրա հետևորդներին հանգեցրին արմատական հեղափոխական ըմբռնման: Նրանք դառնում են ֆեոդալական կարգի, ինչպես նաև սուլթանական տիրապետության և ռուսական ինքնակալության բռնի տապալման ջատագովներ:

Անշուշտ, Նալբանդյանի մոտ բռնի հեղափոխության գաղափարը միանգամից չի ծագել: Նա մեծ դաս առնելով Արևմուտքի դասակարգային կռվից, Ռուսաստանում ծավալված գյուղացիական մասսայական շարժումներից, Թուրքիայի կողմից ստրկացած ժողովուրդների ազատագրական պայքարի փորձից և ռուսական հեղափոխական-դեմոկրատական մտքի անմիջական ազդեցության ներքո գիտակցեց, որ պատմական պրոցեսի խաղաղ ընթացքն անհնար է, որ կեղեքիչների դեմ աշխատավորական մասսաների մղած դասակարգային պայքարը, հեղափոխական ընդհարումները անխուսափելի են:

Հարություն Սվաճյանի՝ շահագործողական դասակարգերի բռնի ոչնչացման, գյուղացիական հեղափոխության վերաբերյալ հեղափոխական-դեմոկրատական սկզբունքների գաղափարական զարգացումն ավելի տառապալի է եղել: Իր գործունեության վաղ շրջանում նա կանգնած էր լիբերալ բուրժուազիայի դիրքերում: Նա դեմ էր ամեն տեսակի հեղափոխական հեղաշրջումներին. այս ճանապարհը Սվաճյանը համարում էր մոլորություն: Եվ զարմանալի չէ, որ այդ շրջանում, նա, այսպես կոչված, ժողովրդական սահմանա-



դրության պաշտպաններից ու կողմնակիցներից էր: Բայց դառն իրականությունը ստիպեց Սվաճյանին մտորելու իր լիբերալ հայացքների շուրջ: 1860-ական թվականներին Սվաճյանն էվոլյուցիա է ապրում՝ բուրժուական լիբերալիզմից անցնում է հեղափոխական դեմոկրատիայի դիրքերը: Նույն թվականին է նրա կյանքում տեղի ունենում նշանավոր իրադարձությունը՝ ծանոթությունը Միքայել Նալբանդյանի հետ, որն օգնում է նրան գտնելու գաղափարական խցանումից ազատվելու ճիշտ ճանապարհը: Նալբանդյանի հետ բարեկամական կապերի սերտացումը Սվաճյանին վերջնականապես հեղափոխական պայքարի ուղի է դուրս բերում: Նրա հեղափոխական դեմոկրատ դառնալու գործում մեծ դեր են խաղացել նաև ինչպես Հայաստանում, այնպես էլ նրա սահմաններից դուրս ծավալված դեպքերը: Եվրոպայի հեղափոխական ճակատամարտերից հետո ռեակցիան սկսում է հետզհետե հարձակվել դեմոկրատական ուժերի վրա: Գլուխ են բարձրացնում նաև սուլթանիզմի և ռուսական ցարիզմի հավատարիմ ծառաները, հայ հասարակայնության ռեակցիոն ներքին ուժերը: Այս ամենն աստիճանաբար համոզում են Սվաճյանին, որ սահմանադրությունը ոչինչ չի տա ժողովրդական մասսաներին:

Արևմուտքի և Ռուսաստանի առաջավոր գաղափարների ազդեցությամբ հայ ժողովրդի մեջ սկսվեց կոնսոլիդացիայի պրոցեսը: Հայ հեղափոխական դեմոկրատիան համախմբվելով Նալբանդյանի շուրջը, ի դեմս անկախ Զեյթունի, տեսնում էր այն ուժը, որը կարող էր Արևմտյան Հայաստանում ազգային-ազատագրական պայքարի օրինակ ծառայել: Դրանով պետք է բացատրել այն մեծ հետաքրքրությունը, որ հանդես բերեցին հայ դեմոկրատական շրջանները Զեյթունի նկատմամբ, 1862 թվականի ապստամբության նախօրեին:

Միքայել Նալբանդյանը Կոնստանդնուպոլսում գտնված ժամանակ իր համախոհների՝ Հ. Սվաճյանի, Ս. Թագվորյանի, Հ. Հայկունու և ուրիշների միջոցով տարածում էր ռուսական հեղափոխական դեմոկրատների գաղափարները: Սակայն, հարկ է նշել, որ հայ հեղափոխական դեմոկրատները գտնում էին, թե այդ ապստամբությունը նախապատրաստված չէ: Բայց փաստի առաջ կանգնելով, նրանք ջանում էին գլխավորել ապստամբությունը: Դրան ամեն կերպ խոչընդոտում էին երկրի ռեակցիոն տարրերը, որոնց հաջողվեց ապստամբության գլուխն անցնել և իրենց դավաճանական գործողություններով ձախողել զեյթունցիների ազատամարտը:

Սվաճյանի հրապարակավ ելույթները մերկացնում էին պայքարի «լեգալ» միջոցների աննշան արդյունավետությունը տիրող կարգերի հանդեպ: Կյանքը նրան հետզհետե բերեց այն համոզման, որ սահմանադրական հիմնարկությունները պաշտպանում են ճորտատիրական կարգերը: Պարբերական մամուլի էջերում Սվաճյանի բացած խոսակցությունը հողագործական ընկերության շուրջ, ենթարկվեց ցենզուրայի հալածանքներին: Այդ ընկերության գաղափարը համոզիչ մի օրինակ էր, որը ցուցադրում էր ընկերության մեջ հողագործական աշխատանքի շահավետությունը, որ դրա բոլոր անդամները հավասար են. բացի դրանից, այդ արվում էր տակտիկական նկատառումներով, որպեսզի հողագործական ընկերության անվան տակ ստեղծվեր հեղափոխական գաղտնի ընկերություն, որը պետք է գլխավորեր զինված ապստամբությունը: Եվ փաստորեն այն ստեղծվեց, որը զենք ձեռք բերելու համար միջոցներ հավաքեց: Այն, որ իրոք ընկերության նպատակը զինված ապստամ-

բությունն էր, վկայում է ծածկագիր մի բառարան, որը գտնվել է Նալբանդյանի մոտ, նրան բանտարկելու պահին։ Այդ է վկայում ու հաստատում նաև խավարամիտ Ջամուրճյանի (Տերոենց) Գաղտնի ընկերության խորհուրդը գրքի (1863 թ.) առաջաբանը, ուր հեղինակը բացատրում է ընթերցողներին, որ գաղտնի ընկերությունները անմեղ անվանումների տակ սքողում են իրենց հեղափոխական կազմակերպությունները։

Արսեն Թոխմախյանի ուշադրության կենտրոնում են դասակարգային պայքարն ու բռնի հեղափոխության գաղափարներն էին։ Այլ կերպ նա չէր պատկերացնում, թե ինչպես կարելի է թոթափել շահագործման և օտարի լուծը։ Նրա համոզմամբ՝ գյուղացիությունն է կոչված տապալելու իշխող կարգերը։

Այսպիսով տիրող կարգերը բռնի ուժով ոչնչացնելու հարցը հայ հեղափոխական դեմոկրատների գաղափարախոսության առանցքն է եղել, առանց որի, նրանք չէին պատկերացնում անցումը նոր հասարակական հարաբերությունների։

Մյուս խնդիրը, որին անհրաժեշտ է անդրադառնալ, այդ հայ հեղափոխական դեմոկրատների վերաբերմունքն է ազգային-ազատագրական պայքարին։

Վերն ասացինք, որ հայ ազգային-ազատագրական շարժումների առաջմղիչ ուժը գյուղացիությունն է, միաժամանակ նշվեց, որ Արևմտյան Հայաստանում հակաֆեոդալական պայքարը, ամուր միահյուսվելով ազգային-ազատագրական պայքարին, ձուլվեց սուլթանական տիրապետության դեմ մղվող զինված ելույթներին։ Սա անհրաժեշտ է ընդգծել, որովհետև հայ բուրժուական մտքի ներկայացուցիչները, ուսումնասիրելով Նալբանդյանին, փաստորեն ամլացնում են նրա աշխարհայացքի այն ողջ ռացիոնալն ու ռադիկալը, որն ուղղված էր տիրող կարգերը բռնի ուժով ոչնչացնելուն։ Նրանք խլացնում են շահագործող դասակարգերի դեմ հեղափոխական պայքարի Նալբանդյանի բացահայտ կոչը. ժողովրդական մասսաների զինված ապստամբության գաղափարը առնչում են միայն հակասուլթանական պայքարի հետ, դեն նետելով նրա աշխարհայացքից դասակարգային կռվի, գյուղացիական հեղափոխության գաղափարը։ Այստեղից էլ այն սխալ ըմբռնումը, թե իբր Նալբանդյանի մոտ գլխավորն ազգային հարցն է, իսկ սոցիալականը՝ երկրորդական։ Մինչդեռ, կարևորը ագրարային հարցն էր, որի հեղափոխական լուծումը (այսինքն՝ ֆեոդալական հողատիրության բռնի տապալումը) լուծում էր նաև մյուս բոլոր հարցերը, այդ թվում և ազգային հարցը։

Կանգնելով գյուղացիական հեղափոխության տեսակետին, ազդարարելով հայ ժողովրդի ազգային ինքնագիտակցության զարթոնքը, նախորոշելով նրա քաղաքական ինքնորոշման պատրաստակամությունը, Նալբանդյանն ու նրա հետնորդները հայ ազգային-ազատագրական շարժումներն ուղղում էին Ռուսաստանի գյուղացիական հեղափոխության կողմը։ Այդ հեղափոխության հաղթանակի մեջ էին նրանք տեսնում Եվրոպայի ու Ասիայի բոլոր ճնշված ժողովուրդների ազատագրության միակ երաշխիքը։

# Գիտության աշխարհում

Մ. ՄԱԶՄԱՆՅԱՆ

## ՀՈԳԵԲԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿՈՆԳՐԵՍԻ ԴԱՀԼԻՃԻՑ

Հոգեբանների համաշխարհային XVIII կոնգրեսը, որը տեղի ունեցավ Մոսկվայում 1966 թ. օգոստոսի 4—12-ը, բացառիկ նշանակություն ունեցավ ո՛չ միայն հոգեբանության, այլև նրա հետ առնչվող մի շարք գիտությունների՝ կիբեռնետիկայի, տիեզերագնացության, մանկավարժության, փիլիսոփայության, բժշկության, սոցիոլոգիայի զարգացման համար։

Կոնգրեսը բարձր ներկայացուցչական բնույթ էր կրում։ Այսպես. եթե հոգեբանների Վաշինգտոնյան XVII կոնգրեսին (1963 թ.) մասնակցում էին 2000-ից էլ պակաս պատգամավորներ, որոնց ճնշող մեծամասնությունը ԱՄՆ-ից էր, ապա Մոսկվայի կոնգրեսին մասնակցող գիտնականների թիվը հասնում էր մոտ 5000-ի։ Նրանցից մոտավորապես 4000-ը արտասահմանյան երկրների պատգամավորներ էին։

Պատկառելի թիվ էին կազմում ներկայացված զեկուցումները, որոնք դրված էին 38 սիմպոզիումներում, չհաշված հրապարակային դասախոսությունները։ Ինչո՞վ բացատրել կոնգրեսի նկատմամբ այդ մեծ հետաքրքրասիրությունը։ Հասկանալի է, որ դրա պատճառներից մեկը օտարերկրյա գիտնականների ցանկությունն էր՝ լինել սովետների երկրում, անձամբ շփվել մեր գիտնականների հետ և սկզբնաղբյուրից պատկերացում ստանալ արտասահմանում բազմաթիվ բանավեճեր առաջացրած սովետական հոգեբանության նվաճումների վերաբերյալ։

Կոնգրեսի պատգամավորները ցանկացան լինել Լենինգրադի, Կիևի, Թբիլիսիի, Երևանի և Միության այլ քաղաքների գիտական հոգեբանական հիմնարկներում։ Նրանցից շատերը Սովետական Միությունից իրենց հետ տարան վառ տպավորություններ։ Այսպես. ինժեներական հոգեբանության խոշորագույն ներկայացուցիչ, Բալտիմորի համալսարանի պրոֆեսոր Ալֆոնս Չապանիսը ի մի բերելով Հայաստանից և նրա գիտնականներից ստացած տպավորությունները, իր նամակում խոսքեր չի գտնում արտահայտելու հիացմունքը մեր մշակույթի և գիտության զարգացման հաջողությունների նկատմամբ։ Բայց ճիշտ չէր լինի այդ մեծ հետաքրքրասիրությունը բացատրել միայն դրանով։

Վերջին տարիներին հոգեբանական էքսպերիմենտների հնարավորություններն անչափ մեծացել են, և գիտնականները բազում փաստեր են հավաքել նույնիսկ հոգեկան այնպիսի պրոցեսների վերաբերյալ, որոնց փորձնական ուսումնասիրման մասին առաջներում նրանք չէին կարող երազել իսկ։ Գիտնականների ձեռքի տակ եղած նոր փաստերը հաճախ այնպիսիք են, որ կարծես գալիս են արմատախիլ անելու մարդուն և նրա ներքնաշխարհին վերաբերող մինչ այդ անկասկածելի համարվող ճշմարտությունները։

Պրոֆեսոր Գորդոն Օլպորտը Վաշինգտոնի կոնգրեսում արտահայտելով կոնգրեսի պատգամավորների կամքը՝ ասաց, որ կոնկրետ գիտական հետազոտությունների տեսական իմաստավորման ասպարեզում եղած դժվարությունները հետզհետե ավելի են աճում։ Այժմ մենք գործ ունենք հոգեբանության տեսության հարցերում տիրող մեծ անարխիայի հետ,— հայտարարեց Գորդոն Օլպորտը։

Հոգեբանների մոսկովյան կոնգրեսի հիմնական խնդիրը դարձավ հոգեբանական փաստերի տեսական իմաստավորումը: Բազմաթիվ պատգամավորներ համոզված էին, որ տեսական ընդհանրացման ամենաբարենպաստ պայմաններ ընձեռողը Մոսկվան է, մանավանդ որ հոգեբանության փիլիսոփայության հարցերը ոչ մի տեղ այնպես մշակված ու սիստեմավորված չէին, որքան մեզ մոտ:

Տեսական վեճերը հնարավորություն ընձեռեցին մի շարք հարցերում կատարելու որոշակի, շատերի կողմից ընդունելի ընդհանրացումներ, որոնք մեծ մասամբ սովետական ուղղության հաղթանակն էին:

XX դարում, նուրբ էլեկտրոնիկայի կարգացման շնորհիվ, մարդկությունը հնարավորություն ստացավ մանրակրկիտ ուսումնասիրելու ինչպես գլխուղեղի կառուցվածքը, այնպես էլ նրա գործունեության օրինաչափությունները: Ավելին. գիտնականներն ստեղծեցին կիբեռնետիկ այնպիսի մոդելներ, որոնք պատճենավորում են բարձրագույն նյարդային գործունեության շատ երևույթներ: Գլխուղեղի ուսումնասիրության Պավլովյան կլասիկ մեթոդը, որ ժամանակին մեծ հեղաշրջիչ դեր խաղաց բնագիտության բնագավառում, այնուամենայնիվ, կեղևի վրա ներգործելու անմիջական մեթոդ չէր:

Ժամանակակից տեխնիկան հնարավորություն է ընձեռում հարկ եղած դեպքում ապատվելու գլխուղեղը շրջապատի հետ կապող կանալների՝ կգայարանների օգնությունից և, անմիջականորեն անցնելով կգայարանների կողքից, մեզ հայտնի համարյա բոլոր տեսակի (քիմիական, ջերմային, հպման, էլեկտրական և այլն) գրգռիչների միջոցով ներգործելու գլխուղեղի վրա: Այդ ներգործությունները կատարվում են այնպես, որ չեն խախտում ուղեղի ամբողջությունը, նրա մեջ ախտաբանական վիճակ չեն առաջացնում: Դեռ ավելին. գիտությունն այժմ հնարավորություն ունի գլխուղեղում նույնիսկ մի բջիջում պայմանա-ռեֆլեկտոր ժամանակավոր կապակցություններ առաջացնելու: Այդպիսի հետակոտությունների շնորհիվ ստացված պատկերացումները հարստացնում են մեր գիտելիքները բարձրագույն նյարդային համակարգի և նրա ծնունդը հանդիսացող հոգեկան գործունեության մասին: Այսպես, այժմ գիտությանը հայտնի են շատ ավելի բարդ բնույթի պայմանական կապակցությունների դրսևորումներ: Պավլովին հայտնի էր պայմանական ռեֆլեքսների միայն մի առաջացում և նրա եկրակացությունները բխում էին իր ձեռքի տակ եղած փաստերից: Այժմ մեզ հայտնի են բազմաթիվ նոր բնույթի պայմանական կապակցություններ, որոնք ինտելեկտուալ են, այսինքն՝ արդյունք են մտածողական գործառությունների: Բնական գրգռիչի փոխարեն ամրապնդողի դերում այստեղ հանդես է գալիս ոչ պակաս ուժ ունեցող մեկ ուրիշ սպեցիֆիկ, կուտ մարդկային գրգռիչ՝ խոսքգրգռիչը:

Ահա և հոգեկան գործունեության լոկալիզացիային, այսպես կոչված՝ ուղեղային կենտրոններին վերաբերող ուսմունքի ներկա վիճակը: Պարզվում է, որ (մանավանդ մարդու մոտ) հոգեկան այս կամ այն գործունեությունը կառավարող մեկուսացված կենտրոններ գոյություն չունեն: Չկա կենտրոն, որը ղեկավարի միայն խոսքն ընկալելու կամ գրավորն ընթերցելու մտավոր գործողությունը: Օրինակ, այսպես կոչված, գրելու կեղևային կենտրոնը սերտորեն կապված է այլ կենտրոնների հետ այն չափով, որ չափով նրա խանգարման հետևանքով կըխանգարվեն նաև այլ կենտրոններ (այսպես. խոսելու, կոորդինացված շարժումներ կատարելու, տեսածը ըմբռնելու և այլն), որոնց հետ համագործակցված է աշխատում գրելու կենտրոնը:

Բոլորովին նոր ձևով է բացատրվում հիշողության էությունը, որը գիտակցության հիմքն է: Նախ՝ ըստ նոր տվյալների, մտապատկերը չի կարող որևէ տեղ պահվել ու մյուս ուղեղային բարձր կենտրոններից անկախ վերարտադրվել: Ըստ երևույթին մտապատկերի բովանդակությունը վերարտադրելու համար անհրաժեշտ է մի քանի կենտրոնների համագործակցություն: Երկրորդ՝ հիշողությունը միմյանցից բավականաչափ տարբերվող բարձրագույն նյարդային գործունեության երկու տարբեր պրոցես է: Բուն գիտելիքները հնարավոր է, որ պահպանված լինեն ո՛չ թե անմիջական կեղևում, այլ կեղևի հետ անմիջապես շփվող գլիային բնագավառներում [1]: Դրանք արթնանում են, գիտակցվում միայն այն դեպքում, երբ անհատն իր գործունեության ընթացքում դրանց օգնության կարիքն է զգում. իհարկե, դրանք կարող են արթնանալ նաև արտաքին պատահական գրգռիչներից, ինչպես և ախտաբանական պատճառներից: Գիտակցության շտեմարանն է այդ, որն այժմ կոչվում է տևական հիշողություն:

Մյուսը՝ կարճատև կամ օպերատիվ հիշողությունը, վերաբերում է առաջացրած խնդրի բովանդակությանը և այն լուծելու համար անհրաժեշտ պլան մշակելուն: Կիբեռնետիկայի լեզվով դա այն խնդիրն է, որը տրվում է մեքենային: Նա պետք է մնա ուշադրության դաշտում, մինչև առաջադրված հարցի պատասխանն ստանալը, որից հետո մոռացվի, փոխարինվելով կյանքի

———

[1] *Գլիա են կոչվում այն հյուսվածքները, որոնց վրա հենվում են նյարդային բջիջներն իրենց ելուստներով հանդերձ:*



կամ գիտակցության առաջադրած նոր ծրագրով: Այդ օպերատիվ հիշողության կենտրոնները գտնվում են գլխուղեղի կեղևում: Դրանց գըրգըռված վիճակով է պայմանավորված այն, թե ինչպիսին են մարդու տվյալ մոմենտի գիտակցությունն ու խելացի գործողությունները:

Օպերատիվ և տևողական հիշողությանը վերաբերող հայտնագործությունները հնարավոր դարձան միայն վերջին տարիներին, կիբեռնետիկայի կարգացման շնորհիվ: Ուղեղի ուսումնասիրության կիբեռնետիկ մեթոդների հիմքում ընկած է կենդանի օրգանիզմների կառավարման ընդհանուր օրենքների գիտակցումը: Այդ նույն օրենքները կիրառվում են կիբեռնետիկ մեքենաներ կառուցելիս:

Ուղեղի բարձրագույն մասերում ստացված ինֆորմացիան վերամշակվում է և ապա վերածվում այնպիսի ազդանիշների, որոնք ընդունակ են կմախքային մկանների վրա ազդելով առաջացնել պահանջվող նպատակահարմար պատասխան ռեակցիաներ: Կիբեռնետիկայում ինֆորմացիայի այդ վերամշակման պրոցեսը կոչվում է կառավարում: Կառավարման սարքը, ուղարկելով պատասխան ռեակցիա առաջացնող իմպուլսներ, անմիջապես ինֆորմացիա է ստանում կմախքային մկանների գործունեության արդյունքների մասին (այդ ինֆորմացիայի ըմբըռնումը կոչվում է հետադարձ կապ կամ աֆերենտացիա), որի համաձայն էլ կատարվում է այն:

Հետադարձ կապի նշանակությունը մարմնի ցանկացած օրգանի գործունեության համար ավելի որոշակի դարձավ այն ժամանակ, երբ գիտնականներին հաջողվեց այդ սկզբունքով գործող կիբեռնետիկ մեքենաներ կառուցել: Այս հանգամանքը չէր կարող լուրջ փոփոխություններ չառաջացնել ռեֆլեկտոր գործողությունները կարգավորող մեխանիզմների մասին ունեցած հին պատկերացումների մեջ: Ինչպես հայտնի է, մինչև վերջերս ռեֆլեքսը դիտվում էր որպես փակ պրոցես: Յուրաքանչյուր ռեֆլեքս ունի սկիզբ և ավարտ:

Հետադարձ կապին (աֆերենտացիային) վերաբերող պրոցեսների ուսումնասիրությունը ցույց տվեց, որ ռեֆլեքսը բոլորովին էլ փակ օղակ չէ, որովհետև շարժումով, գործողությամբ այն չի վերջանում: Մարմինը շարժման մեջ դընող օրգաններից հետադարձ հաղորդում է տըրվում գլխուղեղի կեղևին և այսպիսով հնարավորություն է ընձեռվում, ելնելով նախօրոք մըշակված պլանից, կատարված գործողությունն ավելի նուրբ ու դիպուկ դարձնելու, իսկ այդ նորից ու նորից պահանջում է հետադարձ հաղորդումներ ու նորանոր կարգադրություններ կենտրոնից: Հետադարձ հաղորդման օրենքը հնարավորություն է ընձեռում բոլորովին այլ կերպ դիտելու նաև մեր գիտելիքների միակ աղբյուրի՝ կգայարանների գործունեությունը: Առաջներում կարծում էին, թե կգայարանը սոսկ ընդունիչ օրգան է, գործում է միայն արտաքին ազդակների ներգործությամբ և բարեխղճորեն ինֆորմացիա է ուղարկում կենտրոնները:

Նոր հայտնագործությունները նշանակալից ճշտումներ են մտցնում կգայարանների գործունեության մասին ունեցած մեր գիտելիքներում: Պարզվում է, որ կգայարանն իր վրա ազդող գրգռիչի նկատմամբ ամենևին էլ պասսիվ վերաբերմունք չունի: Նրա վերաբերմունքը ակտիվ շահագրգռողական է: Օրինակ՝ տեսնող աչքի մկանների գործունեությանը վերաբերող նուրբ նկարահանումները ցույց են տալիս, որ աչքն ուղղակի «հետապնդում է» օրգանիզմի համար կարևոր նշանակություն ունեցող առարկային, աշխատում իր տեսադաշտից դուրս չթողնել, հետևել դրան, կատարելով ադեկվատ շարժումներ: Հաստատվում է Ի. Մ. Սեչենովի այն դրույթը, որ կգայությունը նույնպես ռեֆլեկտոր բընույթ ունի:

Այս նոր հայտնագործությունը հաստատում է դիալեկտիկա-մատերիալիստական իմացաբանության հիմնական դրույթներից մեկը, որի համաձայն իմացության հիմքում ընկած է ո՛չ թե սոսկ կգայությունը, այլ կգայական պրակտիկ գործունեությունը՝ ակտիվությունը:

Այդ հետակոտություններն ընդմիշտ ղեն նետեցին իդեալիստ գիտնականների պնդումները հոգեկան պրոցեսների խորհրդավորության, աննյութ և բարձրագույն նյարդային համակարգի գործունեությունից անկախ լինելու մասին և ցույց տվին մատերիալիստական այն հայտնի դրույթի ճշմարտությունը, որի համաձայն հոգեկանը՝ գիտակցականը, բարձր կազմակերպված մատերիայի՝ նյարդերի, կգայարանների, գլխուղեղի ֆունկցիան է:

Տեսական ընդհանրացումներին վերաբերող մեր մյուս եկրակացությունն առնչվում է արտացոլման տեսության հաղթանակի հետ: Ժամանակակից կիբեռնետիկան, եթե չհիմնվի արտացոլման տեսության վրա, չի կարող իրագործել իր որևէ մտադրություն՝ խելացի մեքենաներ ստեղծել, մարդկային մտքի ծանրության մի մասը դրանց հանձնել *:

———

* *Ի դեպ, կոնգրեսի օրերին Երևանի Խ. Աբովյանի անվան Հայկական մանկավարժական ինստիտուտը հրատարակել էր ավագ գիտաշխատող Հովսեփ Թութունջյանի* Անրի Վալոնի հոգեբանական հայացքները *խորագիրը կրող մենագրությունը, որի մասին գովասանքով արտահայտվեցին սովետական ականավոր հոգե-*

Բնորոշելով ժամանակակից կիբեռնետիկայի և պսիխոֆիզիոլոգիայի փոխհարաբերությունը, սիմպոզիումներից մեկի ղեկավար՝ ակադեմիկոս Պ. Կ. Անոխինը իրավամբ նշեց, որ «կիբեռնետիկայի և նեյրոֆիզիոլոգիայի փոխհարաբերությունը, ամենից առաջ, արտահայտվում է նրանով, որ կիբեռնետիկան ձգտում է որքան հնարավոր է լրիվ և ակտիվ մոդելացնել ուղեղի գործունեության հիմնական օրենքները»:

Քննարկելով կիբեռնետիկայի՝ այս ասպարեզում ունեցած հաջողությունները, Պ. Կ. Անոխինն ասաց, որ ուղեղի գործունեության վերարտադրությունն ինֆորմացիոն մոդելներում ուղղակի պայմանավորված է նրանով, թե ինչ աստիճան են արտացոլված գլխուղեղի գործունեության իսկական օրենքները և ինչ չափով է մոդելացված այն առանձին դեպքերում:

Ներկա կոնգրեսի առանձնահատկություններից մեկն էլ այն էր, որ հոգեբանության հարցերը քննարկելիս, անգամ ոչ մարքսիստ գիտնականները տարերայնորեն թե գիտակցորեն պետք է առաջնորդվեն արտացոլման տեսության դրույթներով: Եվ, իսկապես. ինչպես մեր անձնական դիտումները, այնպես էլ 38 հատորում կոնգրեսի ամփոփված նյութերը ցույց տըվին, որ արտացոլման տեսությունը դարձել է հոգեկան պրոցեսների մեկնաբանման ելակետ:

Մեր և արտասահմանյան գիտնականների ուսումնասիրությունները ցույց տվին նաև, թե որքան բարդ, բազմակողմանի բնույթ ունի ինքը արտացոլումը, կենդանական աշխարհի զարգացման տարբեր աստիճաններում: Է. Հասրաթյանի ղեկավարած սիմպոզիումում ժխտվեցին արտացոլման մասին գռեհիկ, համատարած չդիֆերենցված պատկերացումները, որոնք խանգարում էին ճշմարտության ըմբռնմանը:

Մոսկվայի կոնգրեսի՝ այդ մեծ ֆորումի նիստերին մասնակցում էին նաև այլ գիտությունների ներկայացուցիչներ: Դրա պատճառն այն է, որ կիբեռնետիկայի, էլեկտրոնիկայի, ավտոմատ կառավարման, այսինքն՝ «սուբյեկտիվ» գործոնի դերը ներկայումս այնքան է մեծանում, որ առանց դրանք հաշվի առնելու դժվար է լուծել որևէ տեսական ու գործնական խնդիր: Այսպես կոչված, ինժեներական հոգեբանությունը այժմ դարձել է առաջատար:

Յուրահատուկ է մարդու դերը կառավարման ժամանակակից ավտոմատ սիստեմներում: Նա հիմնականում կատարում է հսկիչի դեր: Օրինակ, օդանավակայանի անվթար ու ճշգրիտ աշխատանքը մեծ մասամբ պայմանավորված է դիսպետչերի ըմբռնողական, ճանաչողական, կողմնորոշման և կարգադրման ունակություններով, ուրեմն և սուբյեկտիվ ֆակտորով: Ամերիկյան հետապոտությունները ցույց են տալիս, որ օդային վթարների 90 տոկոսի պատճառն այն է, որ դիսպետչերը չի կարողանում արագ կողմնորոշվել, ինֆորմացիաներ մշակելը նրա ուժից վեր է: Ուստի և ավտոմատ սարքերի կառավարման վահանները կառուցելիս պետք է հաշվի առնել միաժամանակ տրվող ազդակներն ըգալու և ճանաչելու մարդկային հնարավորությունները:

Ինչ վերաբերում է օպերատորի աշխատանքին, ապա այստեղ չի կարելի անտեսել մի ուրիշ կարևոր հանգամանք: Եթե ավտոմատ գործարանները, էլեկտրակայանները նորմալ են աշխատում, ապա օպերատորի ստացած ինֆորմացիան գրեթե իր աշխատանքի բոլոր ժամերին միապաղաղ է, հետևաբար, փաստորեն նա զըրկվում է ավտոմատ կառավարմանը մասնակցե-

*բաններ, ակադեմիկոսներ Բ. Գ. Անանև, լենինյան մրցանակի դափնեկիր Ա. Ն. Լեոնտև, Ա. Ռ. Լուրիան և ուրիշներ: Այն բարձր գնահատեցին նաև արտասահմանյան գիտնականները:*

*Կոմունիստ գիտնական Անրի Վալոնը (1879—1962) ֆրանսիական հոգեբանության համաշխարհային ճանաչում գտած ականավոր ներկայացուցիչներից է: Լինելով համոզված մարքսիստ, հոգեկան պրոցեսների հիմքում ընկած արտացոլման հատկությունը նա քննարկում է պատմականորեն:*

*Ա. Վալոնը գիտության վերջին տվյալների լույսի տակ, հենվելով իր և աշխատակիցների ստույգ փորձերի տվյալների վրա, ցույց է տալիս արտացոլման յուրահատկությունները կենդանական աշխարհի էվոլյուցիայի տարբեր փուլերում: Հանգամանորեն խոսում է ինչպես մարդու գիտակցության նախապատմության, այնպես էլ այն նյութական գործոնների մասին, որոնք բնորոշ են մարդու գիտակցությանը: Այնուհետև ֆրանսիացի գիտնականը մանրամասն բացահայտում է գիտակցության և, առհասարակ, մտավոր հատկությունների զարգացման օրինաչափությունները տարիքային առանձնահատկությունների տեսանկյունից: Խիստ հետաքրքրական են Վալոնի այն դրույթները, որոնք վերաբերում են գիտակցության ախտաբանական խանգարումներին:*

*Հ. Թումանյանը հաջողված փորձ է կատարել լրացնելու հոգեբանական գրականության մեջ եղած բացը: Նա առաջինն է գիտականորեն շարադրել Ա. Վալոնի հոգեբանական, փիլիսոփայական և մանկավարժական դրույթները, վերհանել նրա հայացքների էվոլյուցիան և հանգել արժեքավոր եզրակացությունների:*



ցուց: Այս հանգամանքը նրա հոգեկանի մեջ ստեղծում է երկակի վիճակ, որը կարող է կոնֆլիկտի պատճառ դառնալ: Միակողմանի և միատեսակ ազդակները բթացնում են մարդու զգայարանների և մտքի գործունեությունը: Ուստի, օպերատորներ ընտրելիս և նրանց պատրաստելիս պետք է հաշվի առնել այս հանգամանքը:

Ինժեներական հոգեբանության կարևոր խնդիրներից մեկն էլ, այսպես կոչված, անտիցիպացիայի (կանխատեսման) հատկության մոդելացումն է: Աշխատողը պետք է կարողանա դեռևս գործողությունը չկատարած, արագ կռահել, պատկերացնել հետևանքները, որպեսզի որոշի իր հաջորդ կարգադրության բնույթը: Անտիցիպացիայի պահանջը հոգեբանության առաջ դնում է նոր, իրատապ խնդիրներ: Պետք է կարողանալ հասկանալ անտիցիպացիայի հոգեբանական բարդ պրոցեսները, մի կողմից՝ նրանց մոդելացման, մյուս կողմից՝ այդ հատկության վրա սուբյեկտիվ կերպով ազդելու, միջոցներ գտնելու համար:

Հատկապես ուշագրավ են մարդու հոգեկանի զարգացման հարցերին նվիրված սիմպոզիումները, որոնք ամենից ավելի մարդաշատ էին, և ծավալվեց մտքերի աշխույժ փոխանակություն:

Գիտնականներից շատ քչերն են պաշտպանում հոգեկան զարգացման բիոլոգիական տեսությունը:

* * *

Սիմպոզիումներից մեկում հակադրվեցին շվեյցարացի նշանավոր հոգեբան Պիաժեի և սովետական հայտնի հոգեբան Գալպերինի դրույթները երեխայի հոգեկանի զարգացման օրինաչափությունների վերաբերյալ: Ըստ Գալպերինի՝ երեխայի տրամաբանական մտածողության առաջացումն ու զարգացումը ամբողջովին պայմանավորված են սերունդների ավանդված «սոցիալական փորձի» յուրացման աստիճանով և նրանով, թե ինչ մեթոդով են մեծերը երեխային սովորեցնում մարդկության մշակված ու ընդհանրացված գիտելիքները: Այլ կերպ ասած՝ աշակերտի ըմբռնողական ապարատի և մտածելու կարողության որպիսությունը պայմանավորված է դպրոցում կիրառվող դիդակտիկական մեթոդների ռացիոնալությունից: Այս սկզբունքից ելնելով Գալպերինը, Էլկոնինը գտնում են, որ հենց ուսուցման առաջին փուլերից երեխային չավ կլինի տալ հանրահաշվական, երկրաչափական և այլ բնույթի այնպիսի գիտելիքներ, որոնք այժմ գործող դպրոցական ծրագրերում տրվում են ուսուցման ավելի ուշ աստիճաններում:

Պիաժեն, չժխտելով ուսուցման դերը երեխայի մտավոր կարողությունների զարգացման գործում, այն չէր համարում ամենաիկորն ու որոշիչը: Պիաժեի փաստարկումները, որոնք (ինչպես և Գալպերինինը) հիմնված էին բազում փորձերի վրա, ըստ էության հանգում էին հետևյալին.

ա) Երեխայի մտավոր կարողությունների զարգացումը միայն դպրոցի մենաշնորհը չպետք է համարել: Հենց սկզբից կախում ունենալով շրջապատից, երեխան անմիջականորեն, առանց ուսուցիչների միջամտության, շփվում է իրականության հետ, ձգտում հասկանալ իր հետ առնչվող իրերի և առարկաների էությունը, իր կարողություններին համապատասխան եզրակացություններ անում: Երեխայի եզրակացություններն արդյունք են նրա ակտիվ էակ լինելու և այն բանի, որ վերջինիս գոյությունը պայմանավորված է շրջապատի առարկաներով, որոնց ճանաչումը նրա համար օբյեկտիվ անհրաժեշտություն է և նրա մարդկային կարողությունների զարգացման անհրաժեշտ նախապայմանը: Այդ իմաստով կզարգանան նաև դպրոց չհաճախած, սիստեմատիկ կրթություն չստացած մարդու թե՛ պրակտիկ և թե՛ տեսական բանականությունը: Ուսուցումը միայն օգնում ու կատարյալ է դարձնում այն, ինչ բնական է մարդու մոտ և, հետևաբար, անկախ սիստեմատիկ ուսումնասիրությունից անհրաժեշտորեն պետք է դրսևորվի:

բ) Պիաժեի մյուս կարևոր դրույթը հետևյալն է. երեխայի ըմբռնողական ու մտավոր կարողությունների հասունացումն ունի մարդու էվոլյուցիայի՝ հարյուր հազարավոր տարիների ընթացքում ձեռք բերված, գործնականում ստուգված և ժառանգաբար ամրակայված այնպիսի օրինաչափություններ, որոնք անպայման պետք է արտահայտվեն նրա տարիքային զարգացման ընթացքում, անկախ նրա ուսուցման ու դաստիարակության կազմակերպման ձևերից ու մեթոդներից: Երեխայի ուսուցման գործը կազմակերպելիս այդ բնական գործոնի անտեսումն աններելի սխալ կլիներ: Պիաժեն չի ընդունում «մտավոր կարողություն» հասկացողության, գալպերինյան այն մեկնաբանությունը, որի համաձայն մտքի գործունեությունը միայն տրամաբանելու կարողության մեջ է դրսևորվում: Մտավոր գործունեությունը,—պնդում է նա,—արտահայտվում է և այլ ձևերով, կարելի է տրամաբանությունից այնքան էլ ուժեղ չլինել, բայց լինել խելոք: Տրամաբանական գործունեությունը,—ասում է նա,—այդ ապացուցման գործունեությունն է, ճշմարտության որոնումներն են, իսկ խնդրի լուծումը կախված է երևակայությունից, ինքը տրամաբանական գործողություններ կատարելու պահանջը բավական ուշ է առաջանում (Пиаже,

# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ

## «ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ԳԱՂՏՆԻՔՆԵՐԸ»




*Ինչպես ամեն մի աշխատանք, մասնագիտություն, այնպես և ՍՄԿԿ և սովետական պետական մարմինների ղեկավարումն ունի իր նրբությունները ու «գաղտնիքները», որոնք, սակայն, ինչ-որ մեկի կողմից հնարված չեն: Դրանք գոյավորվում ու ձևակերպվում են կուսակցության և պետության երկարամյա պրակտիկ գործունեության պրոցեսում:*

*Ղեկավարման սկզբունքները մշակված են կոմունիստական կուսակցության երկարամյա փորձի հիման վրա, ելնելով սոցիալիստական արտադրահարաբերություններից, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մեր ամբողջ աշխատավորության՝ կոմունիստական հասարակության կառուցման գործում ունեցած դերից, սովետական պետության կառավարման լենինյան սկզբունքներից:*

*Ղեկավարումը պահանջում է ինչպես խոր գիտելիքներ, այնպես և հատուկ ունակություններ ու կարողություններ: Դրանք ձեռք են բերվում քրտնաջան աշխատանքով, պրակտիկ գործունեության պրոցեսում, կյանքում:*

*Իսկ ինչպե՞ս տիրապետել ղեկավարման արվեստին, ինչպե՞ս թափանցել նրա «գաղտնիքների» մեջ: Այս և նման մի շարք գործնական հարցերի է անդրադառնում Ֆ. Պետրենկոն իր* Ղեկավարման գաղտնիքները *գրքում:*

*Հեղինակը՝ կուսակցական ժուռնալիստ Ֆ. Պետրենկոն, մատչելի ձևով պատմում է ժողովրդի վստահությանն արժանացած ղեկավարի աշխատանքի լենինյան սկզբունքների, կոմունիստական շինարարության մեջ նրա դերի, քաղաքական-բարոյական կերպարի մասին: Գրքում պարզ ու հետաքրքրական գրույց է ծավալվում այն մասին, թե մեր ժամանակներում կուսակցությունն ու ժողովուրդը ինչ պահանջներ են ներկայացնում ղեկավար աշխատողներին, ինչպիսի՞ն պետք է լինեն ղեկավարների ու ենթակաների փոխհարաբերությունները, որն է ղեկավարման արվեստը, ինչպե՞ս զուգակցել միանձնյա և կոլեկտիվ ղեկավարությունը:*

*Սակայն նկատենք, ինչպես հեղինակն է ասում, լինենք պարզ. ամեն ղեկավար աշխատող չէ որ տիրապետում է ղեկավարման արվեստին: Ով եղել է արտադրության, հիմնարկության, կուսակցական կազմակերպության ղեկավար, նա լավ գիտե, թե որքան դժվար ու պատասխանատու գործ է այն: Նրա գործիմացությամբ, աշխատանքի ձևերով ու մեթոդներով են հաճախ պայմանավորված ամբողջ կոլեկտիվի գործունեությունն ու մարտունակությունը: Ղեկավարի ձեռքում են բարդ մեքենայի վարման ղեկը, նրա բոլոր շարժափոկերը: Եվ, բնականաբար, այդ ամենը ղեկավար կադրերի վրա դնում է մի նոր, մեծ պատասխանատվություն, հրամայաբար պահանջում, որ յուրաքանչյուր՝ մեծ թե փոքր մասշաբի ղեկավար աշխատող տիրապետի ղեկավարման գաղտնիքներին:*

*Գոյություն ունե՞ն արդյոք այդպիսի գաղտնիքներ: Հեղինակն իրավամբ նկատում է, որ հնարավոր չէ և սխալ կլինի կյանքի բոլոր կոնկրետ դեպքերի համար հրամցնել մի ընդհանուր դեղատոմս: Կյանքն այնքան հարուստ ու բազմազան է, որ ղեկավարի գործունեությունը սահմանափակել որոշակի, նախօրոք մշակված կանոններով՝ նշանակում է կաշկանդել ստեղծագործական միտքը և կադրերին վերածել լոկ մեխանիկական կատարողների: Յուրաքանչյուր ղեկավար ունի աշխատանքի իր ուրույն ոճը, հարցերի մոտեցման ու դրանց լուծման ուրույն եղանակները: Բայց կա մի ընդհանրություն՝ ղեկավարման լենինյան սկզբունքները, որոնց պահպանումն ու կենսագործումը կանխորոշում են ղեկավարի հաջողությունը, բարձրացնում նրա հեղինակությունը:*

*Մեծ է հեղինակության դերը: Յուրաքանչյուր ղեկավար աշխատող պետք է հեղինակություն վայելի, որպեսզի նրա կարծիքը հարգվի, իսկ ցուցումներն անթերի կենսագործվեն: Հեղինակությունը ձեռք է բերվում աշխատանքի պրոցեսում: Նրա կարգադրություններն ի կատար են ածվում, ո՛չ այնքան նրան տրված իշխանության ուժի ազդեցությամբ, այլ, ամենից ավելի՝ նրա բարոյական հեղինակությամբ, նրա նկատմամբ տածած հարգանքի ու սիրո ազդեցությամբ: Վերլուծելով ղեկավար աշխատողի քաղաքական հեղինակության հարցը՝ Ֆ. Պետրենկոն նշում է, որ այն անհրաժեշտ է ո՛չ միայն տնտեսության ղեկավարման, այլև քաղաքական ղեկավարման գործում: Հակակայելով անձի պաշտամունքի դեմ՝ որպես կոմունիստական աշխարհհայացքին խորթ երևույթի, մարքսիզմ-լենինիզմը երբեք չի ժխտել ու չի ժխտում քաղաքական կազմակերպությունների, նրանց ղեկավարների ու առաջնորդների ճանաչված հեղինակության անհրաժեշտությունն ու դերը հասարակության կյանքում:*

*«Մարքսիստները,— նշել է Վ. Ի. Լենինը,— չեն կարող ինտելիգենտ-ռադիկալի սովորական տեսակետի վրա կանգնել՝ նրա «ոչ մի հեղինակություն» իբր հեղափոխական տեսակետի վերացականությամբ:*

*Ո՛չ: Ամբողջ աշխարհում լիակատար ազատագրության համար համառորեն պայքարող բանվոր դասակարգին հեղինակություններ հարկավոր են...» (Երկեր, հատ. 11, էջ 518):*

*Սակայն, իրավացիորեն նկատում է գրքի հեղինակը, սխալ կլինի կարծել, թե հեղինակությունն ստեղծվում է հատուկ «մանդատով», որ որքան բարձր*

[1] Ф. Петренко— «Секреты руководства», Московский рабочий, 1965 г., стр. 157.

լինի մարդու պաշտոնը, բարձր կլինի նրա հեղինակությունը։ Հեղինակություն չէ այն, որը ճանաչվում է միայն վերադասի և՝ ոչ կոլեկտիվի կողմից։ Ֆ. Պետրենկոն բացահայտում է այն «գաղտնիքներն» ու ուղիները, որոնք իրոք մեր հասարակության մեջ ստեղծում ու ցեմենտավորում են ղեկավարի հեղինակությունը, ամրապնդում կուսակցական, պետական կարգապահությունը։ Ղեկավարի աշխատանքի հաջողության առաջին գրավականը՝ ենթակաների, կոլեկտիվի, մասսայի հետ ճիշտ ու գործնական փոխհարաբերություններ ստեղծելն է։ Այդ փոխհարաբերությունները խարսխված են հավասարության սոցիալիստական սկզբունքների, նպատակների ու շահերի ընդհանրության վրա. բնավ չպետք է մոռանալ, որ ինչպես ղեկավարը, այնպես էլ ենթական կոչված են ծառայելու ժողովրդին, կոմունիզմի վեհ գործին։ Այստեղից էլ բխում են այդ փոխհարաբերությունների բնորոշ գծերը՝ փոխադարձ վստահություն ու հարգանք, ընկերական փոխօգնություն։

Ղեկավարը պետք է սերտորեն կապված լինի մասսաների հետ, ապրի նրա հոգսերով։ Որքան ղեկավարը մոտ լինի մասսաներին, այնքան մեծ կլինեն նրա հաջողությունները։ Սակայն ըսկզբունքային պետք է լինեն մոտիկությունն ու մտերմությունը։

Կյանքից վերցրած կոնկրետ փաստերով, գեղարվեստական գրականությունից քաղած օրինակներով հեղինակն ընթերցողին համոզում է, թե որքա՞ն մեծ նշանակություն ունի մարդկանց ընդունելության կազմակերպման գործը, նրանց լսելու կարողությունը։ Մարդկանց լսել կարողանալը՝ տաղանդ է, իսկ գործիմաց պատասխանելը՝ ղեկավարի պարտքը։ Լսելու ունակությամբ է պայմանավորված նաև մասսաներից սովորելու ունակությունը։ Հանրահայտ է, որ հետաքրքրական ու խելացի մտքերը, առաջարկությունները միայն ղեկավարների մենաշնորհը չեն։ Որպեսզի ղեկավարին լսեն ու հարգեն, նախ ինքը պետք է կարողանա լսել, հարգել ուրիշների կարծիքը, սովորել մասսաներից։

Սովետական, կուսակցական ղեկավար պաշտոնյան ինքնիշխան չէ։ Նա գործում է սովետական օրենքների շրջանակներում։ Իր ենթակաների հանդեպ ոչ մի արտոնություն չունի նա, և այդ հասկանալի է։ Չէ՛ որ արտադրության մեջ, հիմնարկությունում աշխատող սովետական մարդը ծառայում է ոչ թե հիմնարկի պետին, այլ իր հարազատ պետությանը։ Ուստի և յուրաքանչյուր ղեկավար աշխատող պետք է գնահատի ենթակաների աշխատանքը, չանտեսի նրա արժանապատվությունն ու ինքնասիրությունը։ Ղեկավար աշխատողը դրան կարող է հասնել այն դեպքում, երբ ենթակաների հետ վարվի որպես հավասարը հավասարի, թույլ չտա անտակտություն։ Իր և ենթակաների փոխհարաբերությունների որպիսությունը նա կարող է ստուգել իր և վերադասի միջև ստեղծված հարաբերություններով։ Ամենայն իրավամբ Ն. Դոբրոլյուբովը ասում էր. ոչ ոք իր ենթակաների հետ այնպես կոպիտ չի վարվում, ինչպես նրանք, ովքեր ստորաքարշություն են անում իրենց պետերի առջև։

Սոցիալիստական հասարակարգում ղեկավարի և ենթակաների միջև ըստեղծված շահերի միասնությունը, ընկերական համահավասար փոխհարաբերությունները պահանջում են և առողջ մոտեցում քննադատության հանդեպ։ Հեղինակը կոնկրետ օրինակներով ցույց է տալիս, որ, ցավոք, դեռ կան ղեկավարներ, որոնք ընդունում են միայն վերևից եկող քննադատությունը։ Այդպիսի ղեկավար աշխատողները մոռանում են, որ ներքևից արված քննադատությունն ունկնդրելու,



դրանից ռեալ հետևություններ անելու կարողությունը ղեկավարի խելացիության ու հասունության վկայությունն է։ Բացահայտելով ղեկավարման «գաղտնիքները», Ֆ. Պետրենկոն ցույց է տալիս, որ միայն հեղինակությունը, մասսաներին ունկնդրելու կարողությունը բավական չեն. կոլեկտիվը ինչպես հարկն է վարելու համար որոշիչ են նաև ղեկավարի պրակտիկ գիտելիքները, նրա կազմակերպական ունակությունները։

Բազմակողմանի պատրաստված ու գիտելիքներով զինված ղեկավարը պետք է քայլի կյանքին զուգընթաց, ետ չմնա։ Նա ո՛չ միայն պետք է սովորեցնի, այլև ինքը սովորի, կատարելագործի իր մասնագիտական գիտելիքները։ Ղեկավարը պետք է կարողանա կանխատեսել, իսկ դրա համար անհրաժեշտ է միշտ իրազեկ լինել ժամանակակից գիտության ու տեխնիկայի նվաճումներին։

Գրքում մեծ տեղ է հատկացված կադրերի ճիշտ ընտրության ու նրանց տեղաբաշխման հարցերին։ ՍՄԿԿ-ն իր առաջընթացի բոլոր էտապներում ամենայն լրջությամբ հոգ է տարել ինչպես կադրերի ճիշտ ընտրության, այնպես էլ նրանց պատրաստման ու հետագա որակավորման մասին։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն աճեցրել է նոր տիպի կադրեր, որոնց համար բնորոշ են բարձր գաղափարայնությունը, կոմունիստական նպատակասլացությունը, նվիրվածությունը ժողովրդի շահերին. սրանք այնպիսի հատկություններ են, որոնց զուգակցումը գործիմացության հետ՝ հրաշքներ կգործի։ Վ. Ի. Լենինը կազմակերպական աշխատանքում գլխավորը համարում էր մարդկանց ճիշտ ընտրությունն ու նրանց աշխատանքի ստուգումը։ Կադրերն ընտրելիս, ամենից առաջ, նկատի են առնվում նրանց գործնական ու քաղաքական հատկանիշները։ Հեղինակը կոնկրետ փաստերով ու օրինակներով ցույց է տալիս, թե որքա՞ն կարևոր է կուսակցական սկզբունքայնությունը կադրերի ընտրության գործում. չպետք է հաշվի առնել, թե ով ում հետ ինչպիսի անձնական հարաբերության մեջ է կամ ով ում ինչպես կարող է «ծառայել», այլ ելնել միայն կադրերի գաղափարական հասունությունից, գործիմացությունից, նորն ու առաջադեմը զգալու նրանց ունակությունից։

Կադրերի նկատմամբ լինել խստապահանջ, բայց արդարացի, ժամանակին նկատել ու շտկել նրանց բացերն ու թերությունները, ամենայն սկզբունքայնությամբ ու հոգածությամբ կարողանալ տեսնել ամեն մեկի յուրահատկությունն ու ընդունակությունները, կոնկրետ գործով. սովորեցնել, հոգալ նրանց քաղաքական, մասնագիտական գիտելիքների հարստացման մասին. ահա սրանք են ղեկավարման մի քանի գաղտնիքները։

Յուրաքանչյուր աշխատողի, առավել ևս ղեկավար աշխատողի բնութագրելիս, որպես կանոն ելնում են ո՛չ միայն այն բանից, թե նա ինչ է անում, այլև նրանից, թե ինչպես է անում։ Այլ կերպ ասած՝ նրա աշխատանքի ոճից ու մեթոդներից։ Ամեն մի ղեկավարի «գաղտնիքները», աշխատանքի ոճն ու մեթոդները բնորոշողը ենթականերին համոզելու կարողությունն է, նրանց հանդեպ պահանջկոտություն ցուցաբերելը։

Ղեկավարել՝ նշանակում է համոզել մարդկանց, կարողանալ կազմակերպել մասսաներին՝ լուծելու այն հիմնական խնդիրները, որոնք առաջադրված են։ Եթե մասսաները համոզվեցին, նպատակի կենսագործումը դառնում է ռեալ ու իրագործելի։ Սակայն համոզելու համար անհրաժեշտ է դրա ունակություն, վարպետություն։ Համոզման մեթոդը կուսակցական ղեկավարման

գլխավոր մեթոդն է։ Ամենից առաջ այն ենթադրում է համոզելու արվեստ և սկզբունքային պահանջկոտություն։

Կոմունիստական դաստիարակության, արտադրության ճիշտ ղեկավարման գործում խոշոր դեր է խաղում միանձնյա և կոլեկտիվ ղեկավարման սկզբունքների ճիշտ զուգորդումը։ Միանձնյա և կոլեկտիվ ղեկավարման ձևերը, ինչպես և մասսաների մասնակցությունը ղեկավարմանը բնորոշվում են արտադրության բնույթով։ Հայտնի է, որ արտադրական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում, տրանսպորտում, շինարարությունում միանձնյա ղեկավարություն է, իսկ կուսակցական, սովետների ղեկավարման պետական ու բարձրագույն օրգանների, հասարակական կազմակերպությունների գործունեության ղեկավարությունը հիմնվում է կոլեկտիվ սկզբունքների վրա։

Միանձնյա և կոլեկտիվ ղեկավարման ձևերը սկզբունքորեն իրարից տարբեր են։ Սակայն դրանք ունեն մի ընդհանրություն։ Ինչպես ղեկավարման կոլեկտիվ օրգանները, այնպես էլ միանձնյա ղեկավարները, ժողովրդի վստահվածներն են, հաշվետու են նրան և գտնվում են ժողովրդի վերահսկողության ներքո։ Միանձնյա ղեկավարությունը Լենինն անհրաժեշտ էր համարում աշխատանքի որոշակի պրոցեսների որոշակի պահերին, զուտ գործադիր ֆունկցիաների համար։ Այնտեղ, որտեղ միանձնյա ղեկավարը ճիշտ է հասկանում իր տեղը կոլեկտիվում, հենվում է կոլեկտիվի հմուտ ու խելացի փորձի վրա, հաշվի է նստում նրա կարծիքի հետ, հենվում է կուսակցական և մյուս կազմակերպությունների վրա, անշուշտ, նա հաջողության կհասնի։ Եթե միանձնյա ղեկավարը գտնում է, որ ինքը իր գործն ավելի լավ գիտե, ոչ մեկի խորհրդի կարիքը չունի և հաշվի չի նստում ու չի հենվում կոլեկտիվի փորձի, կուսակցական ու հասարակական կազմակերպությունների վրա, նա խարխլում է այն հողը, որի վրա ինքը կանգնած է։

Կոլեկտիվ ղեկավարման սկզբունքը ամենևին չի ենթադրում անձնական պատասխանատվության բացակայում։ Հենվելով լենինյան դրույթների վրա՝ հեղինակը ցույց է տալիս, որ կոլեկտիվ ղեկավարման էությունն է՝ հարցերի կոլեկտիվ քննարկում, խնդիրների կատարման միանձնյա պատասխանատվություն։ Կոլեկտիվությունն անհրաժեշտ է բարդ, սկզբունքային հարցերի քննարկման համար։ Կոլեկտիվության սկզբունքի խելացի ու մտածված իրագործումը երբեք չի խոչընդոտի գործնական հարցերի լուծումը։

Սովետական Միության կոմունիստական կուսակցական առաջադրանքների կատարման համար անհրաժեշտ է կազմակերպական աշխատանք։ Ամենալավ մասնագետ-ղեկավարն անգամ, եթե չկարողանա կազմակերպել, իր շուրջը համախմբել մասսաներին, հաջողության չի հասնի։

Ահա թե ինչպիսի օրինակ է բերում հեղինակը, ցույց տալու համար այդ կարևորությունը։ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Վ. Եմելյանովը, որ տարիներ առաջ եղել է Չելյաբինսկի մետալուրգիական կոմբինատի գլխավոր ինժեները, պատմում է, որ երկար ժամանակ կոմբինատում արտադրությունը ետ էր մնում, մեծ քանակությամբ խոտան էր արտադրվում։ Եվ ահա դիրեկտորին ու ինձ կանչեցին Մոսկվա՝ ժողկոմ Սերգո Օրջոնիկիձեի մոտ։ Օրջոնիկիձեն թուղթը դրեց սեղանին ու մատիտը ձեռքն առնելով հարցրեց դիրեկտորին, թե ինչի՞ց են բաղկացած էլեկտրոդները։ Դիրեկտորը թվարկեց բոլոր էլեմենտները (կոքս, անտրացիտ, ձյութ)։ Ժողկոմը թղթի վրա գրառում էր դիրեկտոր Վլասովի թվարկած կոմպոնենտները։



— Ուրիշ ի՞նչ,— շարունակում էր հարցնել Օրջոնիկիձեն...

Վլասովը մի քիչ մտածեց, ապա ուսերը վեր քաշելով ասաց.

— Ահա և բոլորը։ Ուրիշ ոչինչ։

— Ո՛չ, Վլասով, ճիշտ չէ։

«Ուրիշ էլ ի՞նչ,— մտածում եմ ես։— Դիրեկտորը բոլորը թվեց»։

— Ճիշտ չէ, Վլասով,—կրկնեց Սերգոն.—Մեկն է՛լ կազմակերպելն է։ Իսկ ձեզ մոտ գործարանում այդ կոմպոնենտը բացակայում է։ Դրա համար էլ խոտան է ստացվում։ Կոքսին, անտրացիտին և ձյութին պետք է անպայման ավելացնել կազմակերպումը,— առանց դրա լավ էլեկտրոդ երբեք չեք ստանա։

Ղեկավարման արդյունավետությունը, գործը, արտադրությունը, մարդկանց կազմակերպել կարողանալն է։ Որոշ ձեռնարկություններում անհամաչափ աշխատանքը, գրոհայնությունը կազմակերպական աշխատանքի բացակայության կամ դրա վատ դրվածքի արդյունք է։ Կազմակերպական աշխատանքը ենթադրում է պարտականությունների ճշգրիտ սահմանազատում և որոշակի գործերի համար անձնական պատասխանատվության սահմանում։ Կազմակերպական աշխատանքը պետք է լինի կոնկրետ և կենդանի, զերծ բյուրոկրատիզմից։ Խոշոր նշանակություն ունեն առաջավոր փորձի ընդհանրացումն ու տարածումը, վերահսկողությունը՝ ինչպես վերևից, այնպես էլ ներքևից։

Կազմակերպական կենդանի աշխատանքի էությունը միայն ցուցում տալը, կարգադրելը չէ։ Չնայած դրանք էլ պետք է կարողանալ խելացի ու մտածված անել։ Կուսակցական աշխատողը պետք է կարողանա օգնել, հուշել, սովորեցնել, բացահայտել բացերը, ցույց տալ դրանց վերացման ռեալ ու հնարավոր ուղիները, գործի դնել մարդկանց։ Հենց այս նկատի ուներ Լենինը, երբ գրում էր, որ ժողովրդական կոմիսարներն էլ պետք է լինեն համաժողովրդական հրահանգիչներ, կազմակերպիչներ, օգնեն ամենուրեք խստագույն կարգ ու կանոն ստեղծելու։

«...Լինել հրահանգիչ,— գրում է Ֆ. Պետրենկոն,— նշանակում է գործն իմանալ այնպիսի մանրուքներով, որպեսզի կարողանաս խորհուրդ տալ ո՛չ միայն չիմացող մարդկանց, այլև ո-րակյալ աշխատողներին»։

Չի կարելի չհամաձայնել հեղինակի այն մտքին, որ ղեկավար չեն ծնվում, այլ այդպիսին դառնում են։ Դրա համար անհրաժեշտ են տեսական պատրաստականություն, քաղաքական հասունություն, կազմակերպական ունակություններ։

Այս ամենից հետո պետք է նշենք նաև, որ գիրքը զերծ չէ որոշ թերություններից։ Դրանք ավելի բնորոշ են, հատկապես Կադրերի ընտրության կառողությունը գլխին։ Հեղինակը որոշ տեղերում կրկնում է նույն միտքը (էջ 47, 54, 59, 71)։ Այսպես՝ միանգամայն ճիշտ բացահայտելով երիտասարդ և ավագ կադրերի զուգորդման կարևորությունը, գրքի 48-րդ էջում, Պետրենկոն գրում է, որ փորձը, բազմապատկած հարուստ գիտելիքներով, տալիս է հիանալի ձուլվածք։ Այդ ձուլվածքը կոչվում է հասունություն։ Սակայն 20 էջ հետո, նորից անդրադառնալով այդ մտքին՝ նա գտնում է, որ հասունությունը շատ աշխատողների մոտ հանդես է գալիս արդեն 25—30 տարեկան և դեռ ավելի վաղ հասակում։

Մեր կարծիքով, նպատակահարմար չէ կադրերի այդպիսի տարիքային նեղ սահմանագծումներ կատարել։

Կադրերի թարմացման նկատառումը գրքում հիմնավորված է կուսակցական, հասարակական օրգանների ընտրությունների ժամանակ նրանց կազմի սիստեմատիկ նորացման և ղեկա-

վարության հաջորդականության սկզբունքի վրա։ Կյանքը ցույց տվեց, որ դրա անհրաժեշտությունը չկա, և ՍՄԿԿ XXIII համագումարը այն բացառեց կուսակցության կանոնադրությունից, թողնելով միայն կուսակցական օրգանների ընտրությունների ժամանակ նրանց կազմը սիստեմատիկաբար նորացնելու և հաջորդականության սկզբունքային դրույթը։

Ցանկալի կլիներ, որ հեղինակն ավելի լայն տեղ տար առաջավոր փորձի ընդհանրացմանը, աշխատանքի կազմակերպման բաժնում ավելի բազմակողմանի ու կոնկրետ օրինակներով ցույց տար կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների վերահսկողության աշխատանքի կոնկրետ իրականացման ձևերն ու մեթոդները։

Գիրքը գրված է ՍՄԿԿ XXIII համագումարից առաջ։ Հասկանալի պատճառներով որոշ մոմենտներ այնտեղ փոփոխության են ենթարկվել։ Գիրքը մեծ չափով կօգնի ամեն մի ղեկավար աշխատողի։ Հուսանք, որ մեր կուսակցական, սովետական ակտիվը հնարավորություն կունենա կարդալու այն նաև մայրենի լեզվով։

Վ. ՎԱՐԴԱՆՈՎ

# ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԲԺԻՇԿԸ

Սովետական իշխանության տարիներին հիմնովին փոխվել է գյուղը, փոխվել ո՛չ միայն մարդկանց հասարակական հարաբերություններով, այլև իր նյութատեխնիկական վիճակով։ Կառուցվում, վերակառուցվում է այն նոր, ինդուստրիալ սկզբունքով։ Վաղուց արդեն մեքենան թափանցել է գյուղի բնակչության թե՛ տնտեսական և թե այլ բնագավառներ։ Այս մեծ տեղաշարժերի նախաձեռնողները սովետական քաղաքացիներն են— նոր կյանքի ակտիվ կերտողները։

Տնտեսական ու կուլտուրական վերափոխումները բարերար ազդեցություն են գործել նաև գյուղի մարդու առողջական վիճակի վրա։ Անցել է արդեն Նոյի ագռավների ժամանակաշրջանը, մեր ինտելիգենցիան սիրով է նվիրվում գյուղի համակողմանի վերելքին։ Այդպիսի հայրենասիրական, մարդասիրական նվիրումի արտահայտությունն է բժշկական գիտությունների թեկնածու Արսեն Հայրիյանի գործունեությունը, դրա արգասիքը՝ Արմաշ գյուղի հիվանդանոցբուժարանը, որը հիացնում է ինչպես մեր, այնպես էլ արտասահմանյան այցելուներին։

Աշխատանքային եռուզեռում մտահոգություններով լի գործարար մարդը որոշում է նաև արտացոլել գյուղի առօրյան, գրական համեստ կարողությունների սահմաններում ցույց տալ, թե որտեղից ուր է հասել Արմաշը։ Եվ ահա նա գրում է իր Բժշկի կյանքից[1] վավերագրական վիպակը, որտեղ ցույց են տրված Արմաշ գյուղի անմխիթար անցյալն ու բարեփոխված, պայծառ գալիք խոստացող ներկան։

Մեր կարծիքով, սա առաջին գրքույկն է, որով հեղինակը հմուտ գործիմացությամբ և գրական համեստ ձիրքով, բազմապիսի իրական փաստերով փորձել է բացահայտել սովետական բժշկի դերն ու անշահախնդիր նվիրումը մարդու առողջության պահպանման դժվարին, սրբազնագույն գործին, նրա մեծ դերը ժամանակակից գյուղի բարեփոխման ասպարեզում։

Ա. Հայրիյանի վիպակի հերոսը ո՛չ միայն լավ տիրապետում է իր մասնագիտությանը, այլև հասարակական ակտիվ գործիչ է։

Բաքվից Վեդիի շրջանի ամենահեռավոր Արմաշ գյուղն է գործուղվում նորավարտ բժիշկ Արշամ Հայրումյանը։ Նա գիտակ է մեր գյուղի լավին ու վատին, սակայն անվարան ձեռնարկում է մի դժվարին գործի— անապատային կլիմայական անբարենպաստ պայմաններում կառուցվող գյուղում ամեն ինչ անել բնակչության բուժսպասարկումն ու սանիտարական վիճակը բարելավելու համար։ Բացի Արմաշից նա պետք է սպասարկեր «Սուրենավան և Արազդայան գյուղերին, որոնք գտնվում էին երեքից հինգ կիլոմետր հեռավորության վրա... Գյուղի բնակիչները հիմնականում Իրանի գյուղերից եկած հայրենադարձներ են... Ամառն անտանելի շոգ է՝ 30—37 աստիճան, ցերեկը մարդկանց անհանգստացնում են ճանճերը, երեկոյան՝ մոծակները։ Բարվոք չէ գյուղի սանիտարական վիճակը, բնակչության մեջ տարածված են աղիքային ինֆեկցիաներ»։

Վիպակում հեղինակը համոզիչ փաստերով, կյանքից վերցրած էպիզոդներով ցույց է տվել Արմաշ գյուղի լինելության դժվարին ընթացքը։ Նրան հաջողվել է լակոնիկ ոճով կերտել կոլտնտեսության նախագահ Սանթրոսյանի, գյուղսովետի նախագահ Վալիևի, կուսկազմակերպության քարտուղար Սամվելի և ուրիշների կենդանի կերպարները։

Գնա՞լ գյուղ, թե՞ ոչ։ Ահա այստեղից էլ սկսվում է պայքարը երիտասարդ բժիշկ Արշամի և նրա կնոջ՝ Ամալյայի ծնողների միջև։ Սերը հաղթում է։ Ամալյան ևս գալիս է գյուղ և դառնում ամուսնու օգնականը։ Ձեռք-ձեռքի տված՝ նրանք սկսում են դժվարին, բայց շնորհակալ մի աշխատանք։

Ընթերցողը պարզ տեսնում է, թե ինչպիսի դժվարություններ են ծառանում սկսնակ բժշկի. հասարակական գործչի առաջ։ Չկար նյութատեխնիկական բազա, ցածր էր բնակչության կուլտուրական մակարդակը։ Չնայած կոլտնտեսության նախագահ Սանթրոսյանը նվիրված ու սրտացավ է, բայց նրա համար տարօրինակ է, որ բժիշկ Արշամը զբաղվում է գյուղական կյանքի «մանրուքներով»։ Գյուղում պակասում են շինափայտը, նավթը, քարածուխը և տնտեսական այլ ապրանքներ, ավարտված չէ անասնագոմերի կառուցումը, միջոցներ չկան հողերի ոռոգումը լիովին ապահովելու համար։ Այս ամենը խիստ անհանգստացնում են և երիտասարդ բժշկին, ինչպես և այն, որ արմաշցին հնարավորություն չունի իր ծարավը աղբյուրի մաքուր ջրով հագեցնելու։ Եվ Արշամն ամեն ինչ անում է, որպեսզի գյուղում խմելու ջրի ծորակներ լինեն, հիվանդանոց ու ծննդատուն կառուցվի, գյուղն ապահովվի ծածկված աղբարկղներով։ Նա կազմակերպում է պատանիներին՝ վխտացող ճանճերը ոչնչացնելու համար։

Սանթրոսյանի կարծիքով բժիշկ Արշամը յուրահատուկ Դոն-Քիշոտ է, որը փոխանակ օգնի հաղթահարելու կոլտնտեսության առջև ծառացած դժվարությունները, երազում է գյուղի սանիտարական լուսավորության մասին, ասես ամեն ինչ արված է, մնում է միայն այդ։

Բայց Արշամը հեշտությամբ նահանջողներից չէ և լավ գիտե, որ պետք է ո՛չ միայն բուժել մարդկանց, այլև անել ամեն ինչ, որպեսզի նրանք չհիվանդանան կամ հազվադեպ հիվանդանան, «Իսկ դրա համար,— ասում է նա գյուղսովետի նախագահ Կարա Վալիևին,— պետք է պայքարեն ո՛չ միայն բուժաշխատողները, այլև դուք, ամբողջ կոլեկտիվը, ինքը՝ բնակչությունը։ Մարդկանց բուժումը սկսել կենցաղից»։

Հաղթահարելով կոլտնտեսության նախագահի և նրան շրջապատող որոշ մարդկանց անտարբերությունն ու դիմադրությունը, բժշկին հաջողվում է աշխատանքային ոգևորությամբ համակել գյուղի կոմունիստներին ու կոմերիտականներին, անգամ պատանիներին։ Նրա ամենալավ խորհրդատուն էր երկար տարիների աշխատանքային փորձ ունեցող Սուրեն Մինասյանը՝ Արարատավանի գլխավոր բժիշկը։ Նրան նույնպես մտահոգում էր այն, որ արմաշցին դեղ ձեռք բերելու համար ահագին տարածություն էր կտրում, երկար ժամանակ վատնում։ «Անհրաժեշտ է ձեր բուժակի միջոցով գյուղում կազմակերպել դեղկայան... Դա հարկավոր է անել հենց վաղը։ Հացի, նավթի և հեռախոսի հարցերը ես կաշխատեմ լուծել ամենակարճ ժամանակում՝ առբաժվարի հետ միասին...»։

Սաթենիկ Արամովնան՝ Երևանի բժշկական ինստիտուտի թերապիայի ամբիոնի ասիստենտը, շրջանի շեֆն է. իր խորհուրդներով նա օգնում է բժիշկներին, ստուգում դիսպանսերացումը, նայում կոնսուլտացիայի կարիք ունեցող հիվանդներին։ Իր սրտացավությամբ ու նվիրվածությամբ, բանիմաց խորհուրդներով նա դառնում է երիտասարդ բժիշկների սիրելին։ Բժշկուհին նույնպես ցանկանում է օգնել Արմաշի բուժսպասարկման բարելավմանը. «Ես կաշխատեմ ամեն ինչ անել ձեզ օգնություն ցույց տալու համար,— ասում է Սաթենիկ Արամովնան Հայրումյանի կնոջ՝ Ամալյայի հետ զրուցելիս,— ...Ես զգում եմ, որ դժվար է մեծ քաղաքից հետո մնալ այստեղ... Եթե ինչպես սկսել եք, այնպես էլ շարունակեք, շատ լավ կլինի։ Ես տեսնում եմ, որ դուք սիրում եք ձեր գործը, իսկ այդպիսի դեպքում մարդ հաջողության է հասնում»։

Երիտասարդ բժիշկը կուսշրջկոմի քարտուղար Բարսամյանի, առբաժվար Գաբրիելյանի և մյուսների օգնությամբ հետզհետե կենսագործում է իր մտահղացումները։ Տարիները փոխում են Արմաշի պատկերը։ Պակասում են հիվան-

[1] Ա. Հայրիյան— Բժշկի կյանքից, «Հայաստան» հրատ., 1966, 215 էջ։

դությունները, նվազում է նորածինների մահացությունը:

Հետաքրքրությամբ են կարդացվում սովետական գյուղում մեր հայրենադարձ եղբայրների նորոգ, երջանիկ կյանքին նվիրված էջերը: Հայ պանդուխտը Արմաշում դարձել է իր բախտի տերը:

Սակայն այդ ամենով չեն վերջանում դժվարությունները: Անգրագետ հայրենադարձ իրանահայերը հետները բերել էին իրենց սովորույթները, նախապաշարումները: Եվ ահա բժիշկը մանկավարժի համբերատարությամբ ու հոգատարությամբ գեղջուկներին, մանավանդ գեղջկուհիներին ծանոթացնում է բժշկության նվաճումներին, նորություններին... Այստեղ ևս անպակաս են բախումները: Բայց հաղթահարվում են և դրանք: Չէ՛ որ նա բժիշկ է, համակված այն գիտակցությամբ, որ իրեն վստահված է բուժել ոչ միայն ֆիզիկական, մարմնական ցավերն ու արատները, այլև վերափոխել մարդկանց հոգին, աշխարհայացքը, նիստ ու կացը, սովորույթները:

Շատ շուտով բժիշկ Արշամը դառնում է արմաշցիների սիրելին: Կարճ ժամանակամիջոցում Արմաշում հիմնվում է այնպիսի հիվանդանոց-բուժարան, որն սպասարկում է նաև մոտակա մի շարք գյուղերի բնակչությանը: Ստեղծվում է սանիտարական տուն, որը մեծ նշանակություն ունի ենթաշրջանի աշխատավորության սանիտարական կուլտուրայի բարձրացման համար:

Ամեն ինչի վրա, ամենուր զգացվում է անդուլ ջերեկների, անքուն գիշերների տքնանքի ու պայքարի կնիքը:

Անցնում են տարիներ: «Դրսում շաշողում էր աշնանային արծաթ գիշերը: Երեկվա հողմը քշել-տարել էր փոթորկալի ամպերի ամենավերջին ծվեններն անգամ. երկնքի մանուշակակապտավուն մշուշի մեջ անօրինակ տենդով առկայծող աստղերն ասես ավելի էին բազմացել, մոտեցել իրար և խորհրդավոր շշուկով գիտում էին լուսնի հանդիսավոր ընթացքը: Իսկ լուսնային այդ պայծառ գիշերի խաղաղության մեջ, սահմանային սարերի մթին ֆոնի վրա, Արմաշի առանձնատների լուսամուտներն ու էլեկտրական սյուները ասես ոսկի էին ցանում դեպի թանգարան տանող խճուղու եզրին արձանացած նորատունկ թթենիների գանգուրների վրա»:

Ահա թե ինչպիսին է դարձել տարիներ առաջվա անապատային գյուղակը:

Իր սանիտարական բարձր կուլտուրայով Արմաշը հռչակվում է նաև Սովետական Միությունում: Մեր հայրենիքի տարբեր ծայրերից գալիս են բժիշկներ, ականավոր գիտնականներ, ակադեմիկոսներ՝ ծանոթանալու Արմաշում առողջապահության գործի դրվածքին, նվաճումներին: Այստեղ տեղի են ունեցել նաև համամիութենական ու հանրապետական գիտական կոնֆերանսներ: Գյուղի աշխատավորության առջև բովանդակալից զեկուցումներով, դասախոսություններով հանդես են եկել մեր երկրի շատ ականավոր գիտնականներ: Աշխարհի տարբեր երկրների բժշկական գործիչների այցելությունները սովորական են դարձել արմաշցիների համար: Նրանք բոլորն էլ հեռանում են հիացած ու գոհ, իրենց հետ տանելով գյուղական համեստ, ջանասեր բժշկի, նրա աշխատանքի ընկերների պատկառազդու գործունեության արգասիքների անմոռաց տպավորությունը:

Ա. Հայրիյանի վիպակը սովետական գյուղում կատարված կուլտուրական մեծ վերափոխության մի վկայագիր է և կարդացվում է հետաքրքրությամբ:

Որպես բժիշկ-գրողի առաջին ստեղծագործության վիպակը, բնականաբար, զերծ չէ թերություններից, կան անբնական զիալոգներ, իրավիճակներ, այն հեռու է կատարյալ գեղարվեստական գործ լինելուց: Զգացվում է, որ սկսնակ գրողը դեռևս կարիք ունի վարպետ գրողների օգտակար խորհուրդների: Ինքնին հասկանալի է, որ Գրական բերքն այսպիսի դեպքերում պետք է խրախուսի, հանդես գա որպես լավագույն խորհրդատու և ոչ թե միանգամից թևաթափ անի գրական աշխարհից դուրս գտնվող մեր ինտելիգենցիային, ինչպես վարվել է այն, 1966 թվականի իր 42-րդ համարում զետեղելով Ց. Մելոյանի «գրախոսականը», որը մատնում է ո՛չ միայն գրախոսի անբարյացակամությունը, այլև կատարյալ անիրազեկությունը հարցին, իրադարձություններին:

Միայն իր՝ բժշկի կերպարը մեր նորավարտ երիտասարդության դաստիարակության համար այնպիսի լուրջ նշանակություն ունի, որ անհանդուրժելի է նման գործը համարել մի գիրք, որը «ոչ ընթերցողների միտքն է շարժում, ոչ էլ հրում նրան զգացմունքների աշխարհ»: Չպետք է անտեսել նաև այն էական արժանիքը, որ Արսեն Հայրիյանը գրել է ոչ թե որպես վաղուց գյուղը թողած մարդ, որն ստեղծագործում է հիմնվելով իր հիշողությունների վրա, այլ որպես գյուղի վերակառուցման և բարեփոխման անմիջական մասնակից:

Գրական որոշ մշակումից հետո, այն պետք է հրատարակել նաև ռուսերեն: Գրքույկի հերոսը կենսալի և իրոք գաղափարական բժիշկ է, իրական, համակող կերպար:

Զ. ԱՍԱՏՐՅԱՆ

# ԷՋԵՐ ԱՆՑՅԱԼԻՑ

## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԱԼԻՔՆԵՐՈՒՄ



Անդրկովկասի բանվորների հեղափոխական պայքարի առաջին կազմակերպիչներից ու ղեկավարներից է բոցաշունչ ինտերնացիոնալիստ, աշխատավորների ազատագրության պայքարի անձնվեր մարտիկ՝ Վասիլ Վարդանյանը:

XIX դարի 90-ական թվականների այն առաջավոր հայ երիտասարդներից է նա, ովքեր Բ. Կնունյանցի, Ա. Զուրաբյանի, Հ. Տեր-Օսիպովի, Ս. Ավետիսյանի և ուրիշների հետ մեկտեղ առաջինը հաղորդակից եղան մարքսիզմի մեծ գաղափարներին և ռուսական սոցիալ-դեմոկրատների հետ միասին՝ նրա հաղթանակների դժվարին ու պատվավոր ուղին բացեցին Անդրկովկասում:

Վասիլ Վարդանյանը ծնվել է 1868 թվականին, Դիլիջանի գավառի Դոստլու գյուղում (այժմ Նոյեմբերյանի շրջան, Դոստլու), չքավոր գյուղացու ընտանիքում: Սկզբնական կրթությունը ստացել է Սացխենի տարրական դպրոցում, ապա շարունակել Թիֆլիսի ռեալական ուսումնարանում: XIX դարի 80-ական թվականներին ռեալական ուսումնարանի աշակերտությունը, նարոդնիկական ու դեմոկրատական այլ հոսանքների ազդեցությամբ, սկսում է կազմակերպել զանազան գաղտնի խմբակներ: Վարդանյանը ևս ներգրավվում է ուսումնարանի աշակերտության նարոդովոլյական խմբակներից մեկում, իսկ 6-րդ դասարանից՝ ինքն է կազմակերպում այդպիսի մի խումբ: Ուսումնարանում սովորելու տարիներին նա ծանոթանում է ֆրանսիական լուսավորիչների, ռուս հեղափոխական դեմոկրատների աշխատություններին և, հատկապես, տարվում Լասալով, որի համար աշակերտները նրան կատակով «Լասալ» էին կոչում: Ծանր կարիքը Վարդանյանին ստիպում է սովորելու հետ մեկտեղ աշխատել: Թիֆլիսում նա մասնավոր դասեր է տալիս հարուստների երեխաներին:

Շփումը երկու աշխարհների հետ ավելի է խորացնում նրա հեղափոխական համոզմունքները: Վ. Վարդանյանը վերջնականապես ընտրում է հեղափոխական պայքարի ուղին: 1888 թվականին, ռեալական ուսումնարանն ավարտելուց հետո, նա ընդունվում է Մոսկվայի Պետրովսկի-Ռազումովսկու անվան գյուղատնտեսական ակադեմիան, որտեղ ուսանելու տարիներին մոտիկից ծանոթանում է մարքսիզմի գաղափարներին: 1889 թվականին Վ. Վարդանյանը ակտիվ մասնակցում է Չերնիշևսկու մահվան կապակցությամբ կազմակերպված ուսանողական հակակառավարական ցույցերին:

Մոսկվայում այդ ժամանակ գործում էր Բրուսնևի մարքսիստական խմբակը: 1891—1892 թվականներին այդ խմբակին է միանում գյուղատնտեսական ակադեմիայի «Ռուս կովկասյան խմբակը», որի ղեկավարն ու կազմակերպիչն էր Վ. Վարդանյանը:

Բրունևի խմբակը դարձավ Վարդանյանի հոգևոր ռուբիկոնը. այնուհետև մարքսիզմն էր նրա դավանանքը: Ուսանողական խմբակը տարածում էր անլեգալ գրականություն, կազմակերպում ինքնակրթության գրադարան, կազմում բանվորների հետ պարապելու ծրագիր և կատարում այլ աշխատանքներ: Շուտով ցարական ոստիկանությունը հայտաբերում և ջախջախում է Բրունևի խմբակը: Նրա անդամներից շատերը ձերբակալվում և բանտ են նետվում: Վ. Վարդանյանը ևս մեկ ամիս բանտարկվում է, ապա «անհրաժեշտ հանցանշաններ չլինելու պատճառով» ազատ արձակվում: Ակադեմիան ավարտելուց հետո, 1892—1896 թվականներին Վ. Վարդանյանը շարունակում է իր ուսումը Մոսկվայի Յուրևյան ինստիտուտում, չդադարեցնելով հեղափոխական գործունեությունը: Ուսանողների առաջ նա հանդես է գալիս դեմոկրատական հանրապետության ստեղծման, նոր սահմանադրության ընդունման պահանջներով:

1896 թվականին Վ. Վարդանյանը վերադառնում է Թիֆլիս և աշխատանքի անցնում քաղաքային սպանդանոցում: Այստեղ նրան հաջողվում է սպանդանոցի բանվորներից ու ծառայողներից ստեղծել գաղտնի կազմակերպություն, ղեկավարել նրանց տնտեսական գործադուլը: Գործադուլավորները կարողանում են հասնել աշխատավարձի բարձրացման: Մեծ չէր գործադուլավորների թիվը, ընդամենը մի քանի տասնյակ բանվոր, բայց մի՞թե այդ է կարևորը, չէ՞ որ Անդրկովկասի բանվորական շարժման զարթոնքի առաջին արտահայտություններից մեկն էր այդ: Միաժամանակ Վ. Վարդանյանը կապ է հաստատում Կովկաս աքսորված ռուս-մարքսիստ Ֆեդոր Աֆանասևի և նրա գաղտնի խմբակի հետ: Այդ տարիներին նա ծանոթանում է նաև ռուս մեծ գրող Մաքսիմ Գորկու հետ:

Վ. Վարդանյանի գաղափարական աշխարհայացքի հետագա ձևավորման վրա մեծ ազդեցություն են գործել Ստեփան Շահումյանի հետ ունեցած ծանոթությունն ու մտերիմ հարաբերությունները: Այդ տարիներին, բացի քաղաքական ու կազմակերպչական աշխատանքներից, Վ. Վարդանյանը գրական գործունեությամբ ևս ակտիվ պայքար է ծավալում սևհարյուրյակայինների և բուրժուական նացիոնալիստների դեմ: Հայտնի է Վ. Վարդանյանի 90-ական թվականների գրական կամպանիան սևհարյուրյակային ժուռնալիստ Վելիչկոյի դեմ: Այդ կամպանիան մեծ աղմուկ հանեց ո՛չ միայն Կովկասում, այլև Մոսկվայում ու Պետերբուրգում: Ցարական կառավարությունն ստիպված էր Վելիչկոյին ետ կանչել Կովկասից:

1900—1905 թվականներին հրատարակվում են Վ. Վարդանյանի գրական ու փիլիսոփայական մի քանի աշխատությունները, որոնցում բացահայտ է նրա մարքսիստական դիրքորոշումը (Լ. Ն. Տոլստոյի ուսմունքը որպես ստրկության իդեալիզացիա, Գլեբ Ուսպենսկին և Ն. Վ. Գոգոլը ու նրանց վերաբերմունքը ճորտատիրական կարգերի նկատմամբ, Անտրոպոլոգիական փիլիսոփայություն և այլն):

Թիֆլիսում ոստիկանությունն անընդհատ հետապնդում էր Վ. Վարդանյանին: Նրա բնակարանում բազմիցս խուզարկություններ են կատարվում: Ստիպված նա տեղափոխվում է Բաթումի: 1903—1905 թվականներին սկսվեցին հայկական, թուրքական և աջարական ազգամիջյան ջարդերը, որոնք կազմակերպում էին ցարական կառավարությունն ու սևհարյուրյակայինները: Այդ կոտորածների միջոցով ցարիզմը ցանկանում էր Անդրկովկասի աշխատավորների ուշադրությունը շեղել հեղափոխական պայքարից: Վ. Վարդանյանը հատկապես մեծ դեր խաղաց 1905 թվականին Բաթումիում «Ռուս ժողովրդի միություն» ռեակցիոն կազմակերպության հրահրած պրովոկացիայի մերկացման գործում: Կրակոտ ճառ արտասանեց նա Բաթումի սոցիալ-դեմոկրատների կազմակերպած աշխատավորների բազմահազարանոց միտինգում, որով և մեծ չափով նպաստեց հակահեղափոխական պրովոկացիայի ձախողմանը. դրանից հետո նա ձերբակալվեց և բանտ նետվեց, բայց շուտով բանվորների և աշխատավորների պահանջով ազատ արձակվեց: 1905 թվականի հունվարի 9-ին և ռուսական առաջին հեղափոխության տարիներին Բաթումի բազմաթիվ միտինգների, աշխատավորների բազմահազարանոց ցույցերից շատերի կազմակերպիչն ու ղեկավարն էր Վարդանյանը: Իր կրակոտ ելույթներում նա մերկացնում էր ցարիզմի հակաժողովրդական քաղաքականությունը, բուրժուազիայի երկերեսանիությունը, ցույց տալիս, թե ինչպես էր նա սոսկում ժողովրդական շարժման վերելքից:

1905 թվականին Վ. Վարդանյանը նորից ձերբակալվում ու նետվում է Մետեխի բանտը: Բանտից դուրս գալուց հետո նա ակտիվ պայքար է ծավալում դաշնակցության դեմ, որը փորձում է տեռորի միջոցով ահաբեկել նրան: Վարդանյանն Ալեքսանդրապոլից ստանում է սպառնալից, անանուն մի նամակ՝ «400 զինվոր» մակագրությամբ: Բայց դաշնակներին չհաջողվեց իրականացնել իրենց սպառնալիքը, քանի որ ամբողջ հայ դեմոկրատական մամուլն ակտիվ պաշտպանության տակ առավ Վարդանյանին: Ստ. Շահումյանը «Կայծ» թերթում գրեց դաշնակներին մերկացնող մի հոդված և հրապարակեց նրանց սպառնալիք-նամակը:



1905—1907 թվականներին Ստ. Շահումյանի հետ միասին նա կազմակերպում է Թիֆլիսի սպանդանոցի բանվորների սոցիալ-դեմոկրատական խմբակ, որի աշխատանքներին մասնակցում էին Սարիբեկովը, Ղարիբովը և ուրիշներ:

Ռուսական առաջին հեղափոխության տարիներին Վ. Վարդանյանն աչքի էր ընկնում ժուռնալիստական մեծ եռանդով: Նա Յուժնի և Բարսեղ մականուններով հանդես է գալիս *«Черноморский вестник»*, *«Знание»*, *«Баку»*, *«Кавказская речь»*, *«Тифлисский листок»* և այլ թերթերում:

Վ. Վարդանյանի հոդվածները նվիրված են փիլիսոփայության, գրականության և քաղաքականության հարցերին: Նա անողոք մերկացնում է դաշնակցությանն ու կադետներին, լուսաբանում դումայի ընտրությունների բոլշևիկյան պլատֆորմը և այլն:

Հետաքրքրական են, հատկապես, Վ. Վարդանյանի «Պատասխան բժիշկ Հ. Օհանջանյանին», «Քր. Միքայելյանը և դաշնակցությունը», «Կադետները և դուման» հոդվածները, որոնցում հեղափոխական մեծ պաթոսով մերկացնում է դաշնակ ջոջերին ու նրանց հակահեղափոխական «Ալիք» թերթը:

1906 թվականին *«Кавказская речь»* թերթում հրապարակված մի այլ հոդվածում, պատասխանելով դաշնակների ու սևհարյուրյակայինների մեղադրանքներին՝ իր քաղաքական ու բարոյական «այլասերման» մասին, Վ. Վարդանյանը գրում է. «Հպարտությամբ և բավականությամբ եմ հաստատում, որ բոլոր գույնի, աստիճանի և ազգությունների սևհարյուրյակայինների աչքում ես վաղուց և անվերադարձ քաղաքականապես և բարոյապես «ընկած մարդ» եմ... Ավելի բարձր գովասանք և որակավորում իմ հասցեին ես չեմ կարող ցանկանալ»: Պարզաբանելով իր քաղաքական հայացքները և մերկացնելով թշնամիների զրպարտանքը՝ Վ. Վարդանյանը գրում է, որ ինքը պաշտպանում է սոցիալ-դեմոկրատիայի գործնական ծրագիրը:

1907 թվականի կեսերին տեղափոխվելով Բաքու, նա աշխատում է Ստ. Շահումյանի անմիջական ղեկավարությամբ: Այդ տարիներին Վ. Վարդանյանն ակտիվ գործունեություն է ծավալում դումայի բոլոր ընտրությունների ժամանակ: Երեք անգամ նա ընտրվում է դումայի դեպուտատների ընտրող: Դեռևս Թիֆլիսում գտնված ժամանակ, նա խիստ մերկացնում է Թիֆլիսի քաղաքային վարչության անդամների կեղծիքներն ու կաշառակերությունը, կամավոր դուրս գալիս այդ ընտրովի օրգանի կազմից: 1908—1911 թվականներին Վ. Վարդանյանը Ստ. Շահումյանի և Պ. Ջափարիձեի օգնությամբ Θ. Սյոմինի հետ միասին դառնում է Բաքվի ժուռնալիստների միության շաբաթաթերթի խմբագիր: Սակայն ոստիկանական դաժան հետապնդումները Վարդանյանին ստիպում են հեռանալ Պենզայի նահանգ: Այդ տարիներին նա նամակագրական կապեր է հաստատում Կովկասի սոցիալ-դեմոկրատների և, հատկապես, Ստ. Շահումյանի հետ, նրանից ստանում գործնական խորհուրդներ: Կարճ ժամանակամիջոցում նա կարողանում է մեծ հեղինակություն վայելել Պենզայի բանվորների շրջանում. նրանց կողմից առաջ է քաշվում որպես IV պետական դումայի դեպուտատների ընտրող: Ընտրությունների ժամանակ Վ. Վարդանյանն իր հեղափոխական ողջ կրքով հանդես է գալիս Պենզայի ազնվականության դեմ, որի հետևանքով նահանգից աքսորվում է Դաղստան: 1915—1916 թվականներին Վ. Վարդանյանը զորակոչվում է ցարական բանակ, այստեղ ևս չի դադարեցնում իր հեղափոխական պրոպագանդիստական գործունեությունը:

Ցարական ոստիկանության հետապնդումներն ու հալածանքը, ձերբակալություններն ու բանտարկությունները քայքայում են Վ. Վարդանյանի առողջությունը և Անդրկովկասում սովետական իշխանության հաստատման նախօրյակին նա հեռանում է քաղաքական ասպարեզից: Վ. Վարդանյանը մեծ ուրախությամբ ընդունեց սովետական իշխանության հաղթանակը Անդրկովկասում և նվիրվեց երկրի տնտեսական զարգացման գործին: Վարդանյանն աշխատել է Անդրկովկասի ԲԳՏ-ում և գյուղատնտեսական զանազան հիմնարկներում:

Նա մեռավ 1944 թվականին, Թիֆլիսում, 76 տարեկան հասակում:

Ծանոթանալով Վ. Վարդանյանի հեղափոխական պայքարին ու գործունեությանը, ակամայից հիշում ես բոլշևիկ-հեղափոխական Ինեսա Արմանդի հայտնի խոսքերը. «Մենք՝ հեղափոխականներս, ունենք բազմաթիվ պարտականություններ, բայց միայն մեկ արտոնություն, առաջինը մարտնչել բարիկադների վրա»: Վարդանյանը պատվով, առաջամարտիկի պես օգտվեց իր այդ առավելությունից, դարձավ ցարիզմի դեմ մղվող պայքարի ակտիվ մասնակիցներից մեկը Անդրկովկասում, մինչև վերջ հավատարիմ մնալով այդ սուրբ գործին:

Մ. ՀԱԿՈԲՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

հել դրանք բաղկացուցիչ մասերի և քննարկել որպես առանձին հարցեր։ Հայկական ՍՍՀ տնտեսական շրջանացման մեջ, ելնելով պրոբլեմի ուսումնասիրվածության արդի վիճակից, մեր կարծիքով, պետք է առանձնացնել հետևյալ հարցերը՝ 1. Նոր շրջանացման և այն ժողովրդա-տնտեսական պլանավորման նպատակներին ծառայեցնելու անհրաժեշտությունը, 2. շրջանացման սկզբունքներն ու դրանց հիմնավորումը, 3. օբյեկտիվորեն գոյություն ունեցող շրջանների բացահայտումն ու դրանց առկայության հիմնավորումը, 4. շրջանների սահմանների ճշտումը և 5. շրջանների տնտեսության բնութագրումն ու տնտեսական պոտենցիալի գնահատումը։

Արարատյան շրջանի տնտեսությունը բնութագրելիս, նրա մասնագիտացման ճյուղերի շարքում մենք նշում ենք մեքենաշինությունը։ Գ. Ավագյանը սխալ է համարում, որ նրանց թվում էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը բացակայում է, չնայած հանրահայտ է, որ առաջինը որպես արդյունաբերության ճյուղ իր մեջ ընդգրկում է էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը։ Բոլոր դեպքերում այստեղ խոսքը տնտեսության բնութագրի մասին է։ Բայց հոդվածի հեղինակը դրա հետ հաշվի նստել չի ուզում։ Նա այդ փաստը որակում է ոչ ավել ոչ պակաս, քան «առաջարկվող սխեմայում տեղ գտած թյուրիմացության» ապացույց։ Նույնպիսի քմահաճ որակում է տրված նաև այն փաստին, որ Շիրակի տնտեսության մասնագիտացման ճյուղերի թվում չի նշվում սննդի արդյունաբերությունը, որը Գ. Ավագյանի պնդմամբ, «շրջանի դոմինանտ ճյուղերից մեկն է»։ Մի կողմ թողնելով այն հարցը, որ մասնագիտացվածը և դոմինանտը նույն հասկացողությունները չեն, տեսնենք, թե այդ ճյուղի մասին ինչ են ասում վիճակագրական տվյալները։

Շիրակի շրջանի ողջ արդյունաբերության մեջ սննդի արդյունաբերության տեղը բնորոշվում է հետևյալ թվերով. ըստ համախառն արտադրանքի՝ շուրջ 15 տոկոս, հիմնական ֆոնդերի՝ 12, աշխատողների թվի՝ 6 տոկոս։ Հանրապետության սննդի արդյունաբերության մեջ նրա բաժինը ըստ երեք ցուցանիշների էլ չի անցնում 7-ից։ Հիշեցնենք, որ Շիրակի տեսակարար կշիռը հանրապետությունում ըստ տարածության կազմում է 14 տոկոս, ըստ բնակչության թվի՝ մոտ 15։ Սա նշանակում է, որ Շիրակի յուրաքանչյուր բնակչին առնվազն երկու անգամ ավելի պակաս սննդի արդյունաբերության արտադրանք է ընկնում, քան հանրապետության միջին ցուցանիշն է։ Ավելին, այդ ճյուղը Շիրակում ներկայացված է հացաբուլկեղենի, հրուշակեղենի, կաթի, յուղի, պանրի, մսի և ոչ-ալկոհոլային խմիչքների արտադրությամբ։ Դրանցից միայն մսի և պանրի մի մասն է մշտապես արտահանվում հարևան շրջաններ։ Արտադրանքի մնացած տեսակներն ամբողջությամբ և վերջինների հիմնական մասը սպառվում են տեղում։ Քանակական այդպիսի ցուցանիշները ոչ մի հիմք չեն տալիս սննդի արդյունաբերությունը Շիրակի տնտեսական շրջանի «մասնագիտացված» կամ «դոմինանտ» ճյուղ համարել։

Այլ է վիճակն այն շրջաններում, ուր սննդի արդյունաբերության կառուցվածքում կարևոր տեղ են գրավում ո՛չ միայն շրջանի, այլև հանրապետության համար մեծ ապրանքայնություն ունեցող այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են գինու-կոնյակինն ու պահածոներինը։

Գ. Ավագյանն առարկում է այն մտքի դեմ, որ «բարձր լեռնային գոտում (ծովի մակարդակից 2500 մ. բարձր) լեռնաշղթաների մերձկատարային ընդարձակ տարածություններն ամբողջովին յուրացված չեն կամ օգտագործվում են տարվա մի քանի ամիսներին միայն... և իրենցից ներկայացնում են յուրահատուկ տնտեսական «սպիտակ բծեր»։ Նա, վկայակոչելով «Անասնաբուծության կազմակերպման հիմնական հարցերը» գրքի հեղինակներին, ուզում է մեզ հավատացնել, որ «արոտավայրերում, հիմնականում՝ հենց այդ գոտում էլ տարվա մի քանի ամիսներին ստացվում է» անասնապահական մթերքների մեծ մասը։ Այստեղ Գ. Ավագյանը իր «ճշտումն է» մտցրել սկզբնաղբյուրի մեջ։

Ճշմարտությունն այն է, որ հիշատակվող գրքից փոխառած տվյալները վերաբերում են ո՛չ թե արոտավայրերին, այլ «170—190 օր տևող արոտային շրջանին» (էջ 246)։ Նշենք նաև, որ գրքի հեղինակների մտքով անգամ չի անցնում հանրապետության արոտավայրերը 2500 մետրից բարձր գոտու հետ նույնացնել, քանի որ արոտավայրերի ընդհանուր տարածության մեկ քառորդ մասն է միայն գտնվում այդ գոտում, իսկ արոտային շրջանի տևողությունը այնտեղ չի անցնում 80—100 օրից։

Այժմ տեսնենք, թե ինչպես է Գ. Ավագյանը իր «հաշիվները մաքրում» շրջանացման սկզբունքների հետ։

Սովետական Միության տնտեսական շրջանացման (նկատի ունենք խոշոր տնտեսական շրջանների առանձնացումը) հիմնական սկզբունքները, ինչպես հայտնի է, հանգում են շրջանի կոմպլեքսայնությանը, տնտեսական ավարտվածությանը (որը չպետք է շփոթել ինքնամփոփ-ինքնաբավ տնտեսության հասկացողության հետ), տնտեսական մասնագիտացմանը՝ միութենական մասշտաբով, սեփական էներգետիկ ռեսուրսների առկայությանը, տնտեսության զարգացման հեռանկարները հաշվի առնելուն, շրջանում զարգացած և ամբողջական տրանսպորտային սիստեմի առկայությանը և այլն։ Ենթադրվում է, որ Սովետական Միության խոշոր տնտեսական շրջանում ժամանակակից տնտեսության բոլոր հիմնական ճյուղերը պետք է ներկայացված լինեն, իսկ ինքը՝ շրջանը, աշխատանքի տերիտորիալ բաժանման միութենական սիստեմում ինքնուրույն դեր պետք է կատարի։

Այս սկզբունքների մեխանիկական տեղափոխումը ներհանրապետական շրջանացման վրա սխալ կլիներ և հակագիտական։ Բայց նրանք պետք է մեթոդոլոգիական հիմք ծառայեն ո՛չ միայն ներհանրապետական շրջանների առանձնացման, այլև տնտեսական շրջանացման տաքսոնոմիական բոլոր աստիճանների համար։

Միաժամանակ, պարզ է, որ վերջիններից յուրաքանչյուրի համար պետք է մշակվեն ու կիրառվեն յուրահատուկ սկզբունքներ։ Բացառություն չի կազմում նաև Հայկական ՍՍՀ-ն։ Գ. Ավագյանի կողմից քննադատվող հոդվածում համառոտակի շարադրված են այն սկզբունքները, որոնք, հեղինակի կարծիքով, կարող են հիմք ծառայել Հայկական ՍՍՀ-ում օբյեկտիվորեն գոյություն ունեցող շրջանների բացահայտման ու սահմանագծման համար։ Ընդդիմախոսը այդ սկզբունքների դեմ, ըստ էության, ոչ մի փաստարկ չի բերում, սակայն դիմում է գիտության հետ առնչություն չունեցող ու տարօրինակ պրիոմի։ Ահա Գ. Ավագյանի առարկությունը։ «Արդյոք տնտեսական շրջանացման համար,— գրում է նա,— իրոք անհրաժե՞շտ է նկատի ունենալ վերոհիշյալ և միայն վերոհիշյալ սկզբունքները։ Եվ հետո (ըստ երևույթին Գ. Ավագյանի համար ամենակարևորը) ո՞վ է որոշում այդ սկզբունքները։ Մի՞թե դա թողնված է յուրաքանչյուրի քմահաճույքին»։ Կարծում ենք, որ նման հարցադրումը քննարկվող նյութի էության հետ առնչություն չունի ու ոչնչով չի օգնում գիտական ապացուցելիությանը։

Գուցե Գ. Ավագյանը պատասխաներ իր դրած հարցին և ցույց տար, թե ինքը, ի վերջո, ում է վերապահում գիտական սկզբունքներ մշակելու, ուսումնասիրման ելակետ ընտրելու շնորհը։

Տնտեսական շրջանացման սովետական տեսության մեջ կարևոր դրույթ է, այսպես կոչված, «հեռանկարային մոտեցումը», տնտեսության զարգացման տենդենցները հաշվի առնելը։ Սակայն, Գ. Ավագյանը իր առարկությունները շարադրելիս «չի նկատում» այդ «մանրուքը»։ Օրինակ, մեր հոդվածի Զանգեզուրի վերաբերյալ բաժնում նշված է, որ Որոտանի հիդրոէլեկտրակայանների շինարարության ավարտումը և Սվարանցի երկաթի հարուստ հանքավայրի շահագործումը կհանգեցնեն Որոտանի ավազանում արդյունաբերական խոշոր հանգույցի ստեղծմանը։ Որոտանի ապագա հանգույցը, գոյություն ունեցող Ղափան—Քաջարան հանգույցի հետ միասին (հաշվի առնելով պղնձի և մոլիբդենի հանքաքարի բազայի վրա տեղում վերամշակող արդյունաբերություն ստեղծելու հանգամանքը), կդառնա Զանգեզուրի շրջանի այն կազմակերպիչ կորիզը, որը տնտեսական-արտադրական իմաստով մեկ ամբողջության մեջ կմիավորի Վարդենիսի լեռնաշղթայից հարավ և հարավ-արևելք ընկած տերիտորիաները»։ Ինչպես տեսնում ենք, խոսքը, առաջին հերթին, Որոտանի ապագա արդյունաբերական հանգույցի մասին է։ Իսկ Գ. Ավագյանը ընթերցողին ուզում է համոզել, որ այդ տերիտորիաների «կազմակերպիչ կորիզ» մենք համարում ենք Ղափան—Քաջարան հանգույցը։

Մի այլ օրինակ, Արարատյան շրջանի հեռանկարների մասին խոսելիս, տնտեսական զարգացման բնական նախադրյալ ենք համարում «ընդերքի հարուստ ու բազմազան հանքային ռեսուրսները»։ Նկատի ենք ունեցել Կապուտանի երկաթահանքը, Երևանի և Հոկտեմբերյանի կերակրի աղը, Արարատի ու նույն Կապուտանի ագրոհումքը, Արարատի քիմիապես մաքուր կրաքարը (իբրև քիմիական արդյունաբերության հումք) և բազմապիսի շինանյութեր։ Գ.. Ավագյանը այս հարցում նույնպես «թյուրիմացություն» է գտնում, որովհետև «այստեղ իր խոսքերով ասած, մինչև հիմա արդյունաբերական նշանակություն ունեն հիմնականում շինանյութերը»։

Ի՞նչ է սա։ Անիրազեկությո՞ւն, թե՞ սպիտակը սև ներկայացնելու ցանկություն։

Նշենք, որ դատելով հոդվածից, ընկ. Ավագյանի մոտ քննարկվող այլ հարցերի մասին ևս պարզ պատկերացում չկա։ Օրինակ, հեղինակը տեղի ու անտեղի օգտագործելով «արդյունաբերական հանգույց» տերմինը, չի ըմբռնել նրա բովանդակությունը։ Ժամանակակից տնտեսական աշխարհագրության մեջ այդ տերմինը օգտագործվում է երկու և ավելի արդյունաբերական կետեր կամ կենտրոններ (բայց ոչ երբեք ձեռնարկություններ) միացնող տերիտորիաների համար (տե՛ս В. Н. Горлов, Ю. Г. Саушкин, Е. А. Трофимовская. Практическое значение экономико-географического изучения промышленных узлов. «Вестник Московского университета, Серия V, География, 1963 г., № 1)։ Չնայած դրան, ընդամենը երկու ձեռնարկության ստեղծումը Իջևանում (և այն էլ փայտամշակման ու գորգագործական,

նը և մանկավարժական ինքնակրթությանը, ինչո՞ւ չպետք է այդ գործը վստահենք, ասենք անասնաբույժին, անասնաբույծին կամ գյուղատնտեսին։ Սակայն, ինչպես հայտնի է, այդ գործը վերջիններիս չենք վստահում, եթե նրանք մանկավարժական կրթություն չունեն, քանի որ մանկավարժությունն ու ավանդման մեթոդիկան հնարավորություն են ընձեռում՝ ուսումնասիրողներին դյուրությամբ հաղորդակից դարձնելու ծավալուն ու բարդ գիտելիքներին և, որ ամենակարևորն է, նպաստելու նրանց կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը։

Չունենալով մանկավարժական կրթություն և անհրաժեշտ փորձ, մեր շատ դասախոսներ ու ասիստենտներ վատ են կատարում իրենց պարտականությունները և բացասական տպավորություն են թողնում ուսանողների վրա, նրանց մեջ բուռն սեր չեն առաջացնում իրենց ավանդած առարկայի հանդեպ։ Փաստորեն նման ասիստենտները, դասախոսներն ու տեխնիկումների ուսուցիչները հանդես են գալիս որպես «ինքնուս մանկավարժներ», դասավանդում սեփական մեթոդներով։ Այդ նրանց երբեմն մղում է կամայականության, բծախնդրության կամ լիբերալիզմի և բոլորին չէ, որ հաջողվում է պատշաճ ձևով կատարել իրենց պարտականությունները։

Ուսուցման ու դաստիարակության գործը մեր միջնակարգ մասնագիտական և բարձրագույն ուսումնական հաստատություններում կգտնվի իր բարձրության վրա, եթե դրանով զբաղվեն ո՛չ միայն մասնագիտական, այլև մանկավարժական, մեթոդական գիտելիքներով զինված անձինք։

Այդ նպատակով մենք առաջարկում ենք ասպիրանտուրաներում ուսուցանել մանկավարժություն և համապատասխան մասնագիտության մեթոդիկա. իհարկե, խոսքս թեորետիկ մասնագետներ պատրաստող ասպիրանտների մասին է։ Հակառակ դեպքում կստացվի, որ դպրոցների ուսուցիչներն էլ կարող են «յոլա գնալ» առանց յուրացնելու մանկավարժությունը, մասնավոր մեթոդիկաների և մանկավարժության պատմությունը, քանզի նրանք ևս սեփական մեթոդներ ունեն և գիտելիքներով էլ աշակերտներից համարյա այնքան են բարձր, որքան դասախոսական ու տեխնիկումների ուսուցչական կազմը՝ իրենց ուսանողներից։

Ս. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 05802 Պատվեր 6 Տիրաժ 10584 Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 1/II 1967 թ.։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. Լենինը մեծ տեսաբան։ *Հոդվածների ժողովածու։ Մ., Քաղհրատ. 1966, 495 էջ։*

*Այս գիրքը հանդիսանում է կոլեկտիվ մենագրություն, ուր լուսաբանված են՝ մարքսիստական փիլիսոփայության զարգացումը Լենինի կողմից. Լենինը կոմունիստական ֆորմացիայի կառուցման օրինաչափության մասին. լենինիզմի ստրատեգիան ու տակտիկան. կապիտալիզմի, սոցիալիզմի քաղաքատնտեսության զարգացումը Լենինի կողմից. լենինյան ուսմունքը պրոլետարիատի դիկտատուրայի, սոցիալիստական պետության, կուսակցության մասին և այլն։ Գիրքը մեծ չափով կօգնի լենինիզմն ուսումնասիրողներին։*

*ԹԱՄԱԶՅԱՆ Ա. Խ.*—Վ. Ի. Լենինը սոցիալիստական հեղափոխության օբյեկտիվ նախադրյալների մասին։ Ե., *Միտք հրատ., 1966, 113 էջ։*

*Գիրքը պարունակում է լենինյան տեսության հիմնական դրույթները սոցիալիստական հեղափոխության նախադրյալների, դրանց հասունացման, առանձնահատկությունների մասին։ Վերլուծված են սոցիալիստական հեղափոխության նյութական նախադրյալների. օբյեկտիվ և սուբյեկտիվ պայմանների փոխհարաբերությունները ժամանակակից էտապում։*

ՍՄԿԿ պատմության ուրվագծեր։ *Ե., Հայաստան հրատ., 1966, 575 էջ։ Մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցների համար կազմված այս ուսումնական ձեռնարկում արտացոլվում են լենինյան կուսակցության ծնունդը. կուսակցությունը՝ ցարիզմի տապալման համար մղած պայքարում. հանուն մեծ հոկտեմբերի և նրա նվաճումների պաշտպանության. կուսակցության պայքարը սոցիալիզմի հաղթանակի և ամրապնդման համար. կուսակցությունը գերմանա-ֆաշիստական զավթիչների ջախջախման կազմակերպիչ. կուսակցությունը սոցիալիզմի կառուցումն ավարտելու և աստիճանաբար կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում։*

*ՋԻՆԻՆ Վ. Կ.*—Կուսակցության հավատարիմ զավակը *(ռուսերեն), Ե., Հայաստան հրատ., 1966, 45 էջ։*

*Հեղինակը պատմում է Աղասի Խանջյանի կարճատև, փոթորկահույզ կյանքը, ժողովրդին ու կուսակցությանը նվիրված նրա փառավոր գործունեությունը։*

Գիտական աթեիզմի հիմնական հարցերը, *Մ.,* Мысль *հրատ., 1966, 333 էջ։*

*Այս դասագրքում հեղինակային խումբը անդրադարձել է հետևյալ թեմաներին. մարքսիզմ-լենինիզմը աթեիզմի և կրոնի մասին. ժամանակակից հիմնական կրոններն ու կրոնական կազմակերպությունները. կրոնը և գիտությունը. կրոնը և բարոյականությունը. կոմունիզմի կառուցումը և ժողովուրդների դաստիարակությունը և այլն։*

Քաղաքացիական պատերազմի զորավարները։ *Ե., Հայաստան հրատ., 1966, 422 էջ։*

*Հեղինակների մի խումբ այս ակնարկների ժողովածուում կերտել է քաղաքացիական պատերազմի անմահ զորավարներ՝ Միխ. Ֆրունզեի, Սերգ. Կամենևի, Ալ. Եգորովի, Վաս. Բլյուխերի, Յան Ֆաբրիցիուսի, Գր. Կոտովսկու, Վաս. Կիկվիձեի, Օկա Գորոդովիկովի և ուրիշների կերպարը, ցույց տվել նրանց փոթորկալից կյանքը, նվիրվածությունը հայրենիքին ու հեղափոխությանը։*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## *ՊԼԱՏԻՆԻ ՀԱՆՈՒՅԹԻ ՆՈՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ*

*Աղոտի հանքային պարարտանյութերի արտադրության պրոցեսում պատրաստի արտադրանքի մեջ աղոտի օքսիդի հետ միասին ընկնում են պլատինի մանր մասնիկներ: Այդ պլատինը փաստորեն կորչում է:*

*Վերին Սիլեզիայի (Լեհաստան) աղոտի հանքային պարարտանյութերի գործարանում, բազմաթիվ փորձերից հետո, ստեղծել են հատուկ ֆիլտրեր՝ պլատինը զատելու համար:*

*Սկզբնական շրջանում հաջողվում էր ստանալ այդ թանկարժեք մետաղի 20 տոկոսը: Այժմ այդ քանակությունը աճել է մինչև 75 տոկոս:*

*Միայն մի գործարանը տարեկան կարող է ստանալ մոտ հինգ կիլոգրամ պլատին, որի ստացման համար ստեղծված սարքավորման արժեքը բարձր չէ:*

*Լեհական ֆիլտրերը պատենտավորված և տեղադրված են հանքային պարարտանյութերի լեհական բոլոր գործարաններում:*

## *ՏՈՐՆԱԴՈՆ (ՈՒԺԵՂ ՓՈԹՈՐԻԿ) ԼԱԲՈՐԱՏՈՐԻԱՅՈՒՄ*

*Ամերիկյան հետազոտողները պատրաստել են մի խցիկ (կամերա), որի մեջ արհեստական ճանապարհով կարելի է ստեղծել ամենաավերիչ օդային մրրիկների՝ տորնադոյի մոդել: Գիտնականները հույս ունեն այդ գործող մոդելի միջոցով մրրիկի ավերիչ տարերքի դեմ պայքարելու եղանակներ գտնել:*

## *ԱՂԱԶԵՐԾՈՂ ՀԱԲԵՐ*

*Բաց Կեստրիցայի (ԳԴՀ) պարարտանյութեր արտադրող քիմիական կոմբինատում սկսել են թողարկվել ծովաջուրը աղազերծող հաբեր, որոնք անփոխարինելի են բոլոր նրանց համար, ովքեր աղետի են ենթարկվում ծովում: Աղի տոկոսը ծովաջրում, այդ պրեպարատով մշակելու դեպքում, իջնում է մինչև 0,2 տոկոս (սովորական ծովաջրում աղերի սյար ւնակությունը 3,2 տոկոս է), և այդպիսի ջուրը միանգամայն պիտանի է խմելու համար: ԳԴՀ-ում մշակված աղազերծողը երկու անգամ ավելի արագ է գործում, քան Արևմուտքում լայնորեն հայտնի աղազերծող «900»-ը. այն կես ժամվա ընթացքում ծովաջուրը խմելու համար պիտանի է դարձնում: Նոր աղազերծողը աշխատանքի համար պիտանի է ցանկացած կլիմայական պայմաններում, այդ թվում և արևադարձային շրջաններում: Այն կարելի է օգտագործել մինչև Ցելսիուսի +66 ջերմաստիճանի պայմաններում:*

## *ՋԱՅԼԱՄԸ ՕԳՆՈՒՄ Է ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐԻՆ*

*Վտանգի պահին ջայլամների գլուխը ավազի մեջ թաքցնելու սովորությունը օգտագործվել է արգենտինացի գիտնականների կողմից՝ անապատային վիթխարի տարածություններում ջերմաստիճանը չափելու համար: Հայտնի է, որ ջայլամները տեղաշարժվում են մեծ արագությամբ: Ջայլամի գլխի վրա ամրացրել են մինիատյուր հաղորդիչ, որը գրանցում է ջերմությունը այն պահին, երբ թռչունը գլուխը թաղում է ավազի մեջ:*

## *«ԱԼՅՈՒՐ» ԱՎՏՈԴՈՂԵՐԻՑ*

*Լեհաստանում առաջարկվել է դեն չգցել ավտոմոբիլային հին մաշված դողերը: Դրանցից կարելի է պատրաստել հիանալի նյութ ճանապարհաշինարարության համար: Հատուկ մեքենաների օգնությամբ դողերը վերածվում են ռետինե «ալյուրի» և խառնվում ասֆալտի հետ:*